Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

3 ՄԱՐՏ · 1965
ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ 44-րդ ՏԱՐԻ

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՅԻ ԿԵՆՏԿՈՄԻ ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ
«Ленинян угиов»-теоретический и политический журнал ЦК КП Армении



## Բովանդակություն

# Содержание




Գ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

ՀԿՊ Կենտկոմի քարտուղար


# ՍԽՐԱՆՔՆԵՐԻ ՏԱՐԻ, ԵԶՐԱՓԱԿԻՉ ՏԱՐԻ

*Ռեսպուբլիկայի աշխատավորները կատարած պարտքի և օրինական հպարտության զգացմունքով բաժանվեցին 1964 թվականից և հայրենիքի հանդեպ իրենց պատմական պարտականության առավել խոր ըմբռնմամբ դիմավորեցին նոր, 1965 թվականը։ Այդ թվականը մեր կյանքի մեջ է մտել որպես յոթնամյակի նախորդ վեց տարիների արժանավոր հաջորդ, որպես կոմունիզմի կառուցման նոր հաղթանակների համբավաբեր։*

*Ռեսպուբլիկայի արդյունաբերությունն իր տարեկան պլանը կատարեց ժամկետից շուտ՝ 1964 թվականի դեկտեմբերի 20-ին։ Արտադրանքի ծավալը, 1963 թվականի համեմատությամբ, ավելացավ 6 տոկոսով։ Առավել արագ տեմպերով էին զարգանում արդյունաբերության առաջատար ճյուղերը։ Այսպես, օրինակ, քիմիական արտադրության համախառն արտադրանքն աճեց մոտավորապես 26, էլեկտրատեխնիկական արդյունաբերությունը՝ 12,4 տոկոսով և այլն։*

*Անցյալ տարի նկատելիորեն ավելացավ սինթետիկ ձյութերի ու մանրաթելի, պլաստմասսաների, պղնձի ու մոլիբդենի, մեքենաների ու սարքերի, բամբակյա գործվածքների, կոշկեղենի և ժողովրդական սպառման մյուս ապրանքների արտադրությունը։ Դրա հետ մեկտեղ ռեսպուբլիկայի արդյունաբերությունը վերջին երկու տարվա ընթացքում յուրացրեց խոշոր էլեկտրական մեքենաների, ինքնաբեռնիչների, հերբիցիդների և մի շարք այնպիսի ապրանքների սերիական թողարկումը, որոնց արտադրությունը նախատեսված չէր յոթնամյա պլանով։*

*1964 թվականին մի շարք միջոցառումներ իրականացվեցին նոր տեխնիկայի և առաջավոր տեխնոլոգիայի արմատավորման ուղղությամբ։ Այդ հնարավորություն տվեց ավելացնելու աշխատանքի մեխանիկական զինվածությունը և նախադրյալներ ստեղծեց արդյունաբերության հետագա ավելի արագ զարգացման համար։*

*Արտադրական պրոցեսների մեքենայացման և պրոգրեսիվ տեխնոլոգիայի արմատավորման ուղղությամբ իրականացված են 320 միջոցառում, իսկ ավելի բարձրորակ հաստոցներ, մեքենաներ, սարքավորում և այլ ապրանքներ ստեղծելու ու դրանց արդյունաբերական յուրացումն ապահովելու ուղղությամբ՝ 166 միջոցառում։ Ստեղծվել են 15 կոմպլեքսային մեքենայացված ար-*

տադրամասեր, 46 հոսքային ու կոնվեյերային գծեր, արտադրության մեջ արմատավորված են ավելի քան 1750 բարձր արտադրողական, հատուկ ագրեգատային հաստոցներ, մեքենաներ ու սարքավորում։

Սակայն 1965 թվականին ավելի դժվարին ու անհետաձգելի խնդիրներ են ծառացած մեր առջև։ Պետք է բարձրացնել յուրաքանչյուր աշխատողի պատասխանատվությունը իր պարտականությունների նկատմամբ, գործել ավելի ներդաշնակ ու ռիթմիկ, առաջին պլանի վրա դնելով մեր պարտիայի առաջադրած խնդիրների կենսագործումը, սովետական պետության շահերը։ Այդ հավասարապես վերաբերում է թե՛ բարդ ու մեծ պրոբլեմների լուծմանը և թե պետական պլանում նշված խնդիրների կատարմանը։

1965 թվականին երկրի էկոնոմիկան պետք է մի նոր խոշոր քայլ կատարի կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման ճանապարհին։ Ժողովրդական տնտեսության զարգացման 1965 թվականի պլանի համաձայն նոր, ակնառու արդյունքների պետք է հասնենք երկրի արտադրողական ուժերի զարգացման, տեխնիկական առաջադիմության արագացման և արտադրության հետագա վերելքի բնագավառում։ Դրա հիման վրա մենք պետք է ավելացնենք մեր ազգային եկամուտը, էլ ավելի բարձրացնենք սովետական ժողովրդի բարեկեցության մակարդակը։

Ռեսպուբլիկայի արդյունաբերության ու շինարարության բանվորները, ծառայողները, ինժեներա-տեխնիկական աշխատողները, ողջ սովետական ժողովրդի հետ միասին, ստեղծագործական եռանդով համակված, թևակոխել են յոթնամյակի նոր, եզրափակիչ տարին։ Իսկ առջևում լուրջ խնդիրներ են, վիթխարի գործեր։

Ընթացիկ տարում պետք է ավելի արագ տեմպերով զարգացնել քիմիական արդյունաբերությունը, գունավոր մետալուրգիան, մեքենաշինությունը և սարքաշինությունը։ Այսպես, 1964 թվականի համեմատությամբ, ռեսպուբլիկայի արդյունաբերության արտադրանքը 1965 թվականին կաճի ավելի քան 12 տոկոսով։ Ընդսմին, եթե յոթնամյակի նախորդ տարիներին սպառման առարկաների արտադրության տարեկան միջին աճը կազմում էր 9 տոկոս, ապա ընթացիկ տարում այն կհասնի 12,1-ի։

Թեթև արդյունաբերության արտադրության ծավալը, 1964 թվականի համեմատությամբ, կավելանա 11,5, սննդի արդյունաբերությանը՝ 14,2, փայտամշակման արդյունաբերությանը՝ 15,4 տոկոսով։ Կթողարկվի հարյուր միլիոն մետր զանազան տեսակի գործվածքեղեն։ Գուլպաների արտադրությունը կավելանա 12, սպիտակեղենինը և վերնազգեստի տրիկոտաժինը՝ 18 տոկոսով։

Կուլտուր-կենցաղային նշանակություն ունեցող ապրանքների և սպասքի առարկաների արտադրությունը կաճի 22 տոկոսով։ Կավելանա ժամացույցների, կահույքի, կենցաղային քիմիայի ապրանքների արտադրությունը։

Ռեսպուբլիկայի սննդի արդյունաբերության մեջ լայնորեն կկիրառվեն հումքի վերամշակման և արտադրանքի թողարկման նոր պրոգրեսիվ մեթոդներ, որոնք հնարավորություն կտան զգալիորեն ավելացնելու թողարկվող սննդամթերքների ասորտիմենտը և բարելավելու նրանց որակը։

Աշխատանքների ինչպիսի՜ լայն ծրագիր։ Որպեսզի կենսագործվի, ռեալ իրականություն դառնա այն, պետք է նոր տարվա առաջին իսկ ամիսներից լարել բոլոր ուժերը, հանդես բերել կազմակերպչական եռանդ ու ստեղծագործական նախաձեռնություն։ Բայց, որքան էլ մեծ լինի 1965 թվականի ծրագիրը



իր քանակական ցուցանիշներով, այնուամենայնիվ, պետք է նկատի ունենալ, որ այս տարվա ամենակարևոր պահանջը թողարկվող արտադրանքի որակի, շինարարության որակի վճռական բարձրացումն է։

Մոսկվայի 20 և Լենինգրադի 18 առաջավոր ձեռնարկությունների կոլեկտիվները խիստ կարևոր և արդիական նախաձեռնություն ցուցաբերեցին, այն է՝ գիտնականների հետ համագործակցած առաջիկա երեք-չորս տարվա ընթացքում հասնել արտադրանքի կարևորագույն տեսակների՝ համաշխարհային լավագույն ստանդարտների մակարդակին։ Այդ նախաձեռնությունը, անտարակույս, կհանդիսանա սովետական յուրաքանչյուր ապրանքի բարձր որակի հուսալիության ու դիմացկունության բարձրացման համար մղվող վճռական պայքարի սկիզբը։ ՍՄԿԿ Կենտկոմը և ՍՍՌՄ Մինիստրների սովետը հավանություն տվեցին մոսկվացիների և լենինգրադցիների նախաձեռնությանը և հանձնարարեցին մեր աշխատավորներին՝ հետևելու այդ հիանալի օրինակին։

Ներկայումս պարտիան նոր ձևով է դնում արտադրանքի որակի պրոբլեմը։ Խոսքը վերաբերում է ո՛չ միայն արդեն թողարկվող արտադրանքի հատկությունները բարելավելուն, այլև արդյունաբերության արտադրանքը սիստեմատիկ ու պլանաչափ կերպով նորացնելուն, հաշվի առնելով ժամանակի գիտատեխնիկական նվաճումները և հասարակության աճող պահանջմունքները։

Մեր մեծ հայրենիքի մայրաքաղաքի և Լենինի քաղաքի ձեռնարկությունների նախաձեռնությունը բացառիկ կարևորություն ունի։ Այն ջերմ արձագանք է գտել մեր ռեսպուբլիկայի արդյունաբերական ձեռնարկությունների և կառույցների բանվորների, ծառայողների, ինժեներա-տեխնիկական աշխատողների լայն շրջաններում։

Հայտնի է, որ Երևանի էլեկտրաշարժիչների գործարանի արտադրանքը լայնորեն օգտագործվում է հաստոցների, մամլիչների, արդյունաբերական կարի մեքենաների կոմպլեկտավորման համար, ինչպես նաև գյուղատնտեսության տարբեր ճյուղերում։ Գործարանը 1964 թվականի պլանը կատարեց դեկտեմբերի 10-ին։ Յոթնամյակի եզրափակիչ տարում զգալիորեն կավելանա էլեկտրաշարժիչների թողարկումը։ Գործարանը ավելի քան հարյուր հասցեներով էլեկտրաշարժիչներ է ուղարկում մեր երկրի բոլոր ծայրերը։ Այդ էլեկտրաշարժիչները կարելի է տեսնել Կուբայում, Անգլիայում, Ֆրանսիայում և Հնդկաստանում, ԳՖՌ-ում և Ինդոնեզիայում, Լեհաստանում, Բուլղարիայում և այլ երկրներում։

Քանակական ցուցանիշների մասին ոչ մի վատ բան ասել չի կարելի, բայց ինչ վերաբերում է որակին, ապա պետք է ասել, որ ձեռք բերված արդյունքները դեռևս անբավարար են։ Գործարանը հաճախ արդարացի կշտամբանքներ է ստանում իր պատվիրատուներից։ Մեքենաների հուսալիությունը բարձրացնելու նպատակով անցյալ տարի իրականացվեցին մի շարք միջոցառումներ, ստատորի փաթույթը ծածկվեց ջրաէմուլսիոն լաքով, մոդեռնացվեցին բարձր հաճախականությամբ էլեկտրաշարժիչները, փոխվեց վահանների առանցքակալների կոնստրուկցիան։ Իրականացվեցին մի շարք այլ տեխնիկական նորույթներ, որոնք հնարավորություն տվեցին բարելավելու էլեկտրաշարժիչների որակը։ Եթե նախկինում գործարանը երաշխավորում էր շարժիչների երկու տարվա աշխատանքը, ապա այժմ այդ ժամկետը գրեթե կրկնապատկվել է։ Սակայն դրանք լոկ առաջին քայլերն են գործարանի դրոշմանիշի պատիվը բարձր պահելու համար մղվող պայքարում։ Երկրորդ, ավելի էական քայլն

այն կլինի, որ գործարանի արտադրանքը ոչ մի բանով չզիջի արտասահմանյան լավագույն նմուշներին, հասնի համաշխարհային լավագույն ստանդարտների մակարդակին։ Դրա համար չպետք է սահմանափակվել սոսկ հնացած մեքենաների մոդեռնացմամբ։ Գործարանն արդեն մշակել է երկու տիպի սակավաղմուկ էլեկտրաշարժիչների կոնստրուկցիաներ։ Դրանց սերիական թողարկումը կսկսվի երկրորդ կիսամյակում։ Ընթացիկ տարում գործարանը ձեռնամուխ կլինի վիբրացիայի առաջին տեսակի էլեկտրաշարժիչների մասսայական թողարկմանը։ Դրանք կօգտագործվեն հաստոցաշինության կարիքների համար։

Ձեռնարկության մասնագետները էլեկտրամեխանիկայի համամիութենական գիտահետազոտական ինստիտուտի հայկական ֆիլիալի աշխատողների հետ միասին այժմ զբաղված են նոր սերիայի էլեկտրաշարժիչների կոնստրուկցիաներ մշակելով։

Որակի հարցում մեծ նշանակություն ունեն նաև արտադրանքի պատրաստման մեթոդները։ Կիրառվող տեխնոլոգիան անվերապահորեն պետք է պրոգրեսիվ լինի և համապատասխանի գիտության ու տեխնիկայի ժամանակակից պահանջներին։ Ուստի, որակի համար մղվող պայքարը միաժամանակ պայքար է արտադրության կատարելագործման, նրա մեքենայացման ու ավտոմատացման համար։

Արտադրել միայն բարձրորակ և լավագույն էլեկտրաշարժիչներ. այդպիսի մտահղացումով են թևակոխել յոթնամյակի եզրափակիչ տարին մեր ռեսպուբլիկայի էլեկտրամեքենաշինարարները։

Երևանի հիդրոպոմպերի գործարանի արտադրած պոմպերը լայնորեն կիրառվում են ժողովրդական տնտեսության բազմաթիվ ճյուղերում։ Անցած տարիների ընթացքում շատ բան է արվել արտադրանքի թողարկումն ավելացնելու ուղղությամբ։ Սակայն գործարանը չի կարող պարծենալ իր արտադրանքի որակով։ Վերջին ժամանակներս այստեղ թուլացել է պայքարը գործարանի դրոշմանիշի պատիվը բարձր պահելու համար։

Էստոնական ՍՍՌ Նարվա քաղաքից հայտնել են, որ պոմպերի մեջ 12 դեֆեկտ է հայտաբերվել։ Մելիտոպոլից՝ Վորոշիլովի անվան գործարանից հայտնում են, որ ստացված պոմպերից յոթը փորձարկումից հետո պիտանի չեն եղել շահագործման համար։ Ստացվել են նաև այլ նամակներ ու ռեկլամացիաներ։

Քննարկելով մոսկվացիների և լենինգրադցիների հայրենասիրական նախաձեռնությունը, հիդրոպոմպերի գործարանի կոլեկտիվը իրավցիորեն նշեց, որ անցել է պլանը «ամեն գնով» կատարելու ժամանակը։ Կյանքը պահանջում է գրագետ հաշվարկումներ կատարել, խորապես գիտենալ էկոնոմիկան, հոգ տանել, որ ամենուրեք, յուրաքանչյուր արտադրամասում անդուլ պայքար մղվի գործարանի պատիվը բարձր պահելու համար։

Գործարանի կոլեկտիվը ճիշտ հետևություններ արեց։ Ի պատասխան հայրենասիրական նախաձեռնության, նա որոշեց առաջին կիսամյակի ընթացքում պատրաստել արդի պահանջներին համապատասխանող 13 տեսակի նոր մեքենաներ։ Հիդրոմեքենաշինության համամիութենական ինստիտուտի հետ համատեղ գործարանի մասնագետները ձեռնամուխ են եղել նոր պոմպերի նախագծմանը։ Համապատասխան նշումները պատրաստելուց ու փորձարկելուց հետո գործարանը կսկսի դրանց մասսայական արտադրությունը։

Կոլեկտիվը պարտավորություն է ստանձնել թողարկել միայն տեխնիկա-



պես, իր որակով ու հուսալիությամբ համաշխարհային լավագույն նմուշներին չզիջող արտադրանք։ Նման բազմաթիվ օրինակներ կարելի է բերել նաև մեր մյուս ձեռնարկություններից։

Հայաստանի կոմպարտիայի Կենտկոմը և Հայկական ՍՍՌ Մինիստրների սովետը հանձնարարել են ռեսպուբլիկայի ժողտնտխորհին, մինիստրություններին ու գերատեսչություններին, ՀԱՄԽ-ին, ՀԼԿԵՄ Կենտկոմին, արդյունաբերական ձեռնարկությունների պարտիական, արհմիութենական և կոմերիտական կազմակերպություններին՝ հետևել մոսկվացիների և լենինգրադցիների նախաձեռնությանը, աշխատավորության շրջանում մրցություն ծավալել տեխնիկական մակարդակը, թողարկվող յուրաքանչյուր ապրանքի որակը, հուսալիությունն ու դիմացկունությունը բարձրացնելու համար. այնպես անել, որ տեխնիկական հետագա առաջադիմության համար մղվող պայքարը դառնա մեր յուրաքանչյուր բանվորի, վարպետի, գիտնականի, ինժեների, տեխնիկի, տեխնոլոգի, կոնստրուկտորի և տնտեսագետի ամենօրյա գործը։

Ռեսպուբլիկայի գիտահետազոտական և նախագծային կոնստրուկտորական կազմակերպությունների, բարձրագույն ուսումնական հաստատությունների ղեկավարներն ու սկզբնական պարտիական կազմակերպությունները պետք է գործուն մասնակցություն ունենան տեխնիկական մակարդակի բարձրացման, թողարկվող արտադրանքի որակի, հուսալիության բարձրացման, արտադրանքի կարևորագույն տեսակները համաշխարհային լավագույն ստանդարտների մակարդակին հասնելու համար ծավալված մրցությանը։

ՀԿՊ քաղաքային և շրջանային կոմիտեներին հանձնարարված է գլխավորել մոսկվացիների և լենինգրադցիների նոր նախաձեռնության տարածումը ռեսպուբլիկայի արդյունաբերական ձեռնարկություններում, գիտահետազոտական և նախագծային-կոնստրուկտորական կազմակերպություններում, պարտիական կազմակերպությունների ջանքերն ուղղել տեխնիկական մակարդակը, թողարկվող արտադրանքի որակը, հուսալիությունն ու մրցունակությունն ամեն կերպ բարձրացնելու նպատակին։

Օրինական հպարտության ու հիացմունքի զգացմունքով են սովետական մարդիկ դիտում իրենց անցած ուղին։ Շատ բան է արված։ Ստեղծվել են նոր էլեկտրակայաններ, քիմիայի և մետալուրգիայի հսկաներ, բացվել են նոր հզոր հանքարաններ։ Մեր երկիրը այժմ աշխարհում առաջին տեղն է գրավում բնակարանային շինարարության ծավալով ու տեմպերով։

Դեպի կոմունիզմը կատարվող մեր ամբողջ առաջընթացի և սովետական մարդկանց կենսամակարդակի բարձրացման հաջողությունը հսկայական չափով կախված է այն բանից, թե մենք որքանով ենք կարողացել արագացնել ու էժանացնել շինարարությունը, բարձրացնել նրա որակը, արդյունավետ ու խելացի օգտագործել կապիտալ ներդրումներն ու արտադրական ֆոնդերը, նվազագույն ծախսումներով առավելագույն արտադրանք ստանալ։ Սովետական Հայաստանի շինարարները պանծալի գործերով ուրախացնում են մեր հայրենիքը։ Մեր ռեսպուբլիկան դարձել է մի մեծ շինարարական հրապարակ։ Բարձրաբերձ լեռներում վեր են խոյացել գունավոր մետալուրգիայի ու մեծ քիմիայի ժամանակակից ձեռնարկություններ, անջրդի շրջաններում ձգվել է ջրանցքների և իրիգացիոն սիստեմների լայն ցանցը, ստեղծվել են նոր սովխոզներ, անճանաչելի կերպով փոխվել է մեր ռեսպուբլիկայի քաղաքների ու գյուղերի տեսքը։

Ամեն տարի հսկայական միջոցներ են հատկացվում արդյունաբերական ձեռնարկությունների, գյուղատնտեսական, բնակարանային ու կուլտուր-կենցաղային օբյեկտների կառուցմանը։ Անցած վեց տարվա ընթացքում ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսության մեջ կենտրոնացված կապիտալ ներդրումները կազմել են 1237 միլիոն ռուբլի, մինչդեռ կոնտրոլ թվերով նախատեսված էր 1101 միլիոն ռուբլի։ Ներդրումների տարեկան միջին աճը կազմել է 17 տոկոս, 1952—1958 թվականների 6 տոկոսի դիմաց։ Կապիտալ ներդրումների ընթացիկ տարվա ծավալը 1958 թվականի մակարդակը գերազանցում է գրեթե 2,8 անգամ։

Ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսության զարգացման 1965 թվականի պլանի նախագծով կենտրոնացված կապիտալ ներդրումները կկազմեն 345 միլիոն ռուբլի. այդ 19 տոկոսով գերազանցում է անցյալ տարվա փաստական ծավալը։

Կավելանան կապիտալ ներդրումները էկոնոմիկայի ու կուլտուրայի բոլոր բնագավառներում։ Այսպես, օրինակ, նախատեսված է քիմիական արդյունաբերությանը հատկացնել 36 միլիոն ռուբլի կամ, 1964 թվականի համեմատությամբ, կապիտալ ներդրումների ընդհանուր ծավալի 21 տոկոսը, էլեկտրակայաններին հատկացված ներդրումները կաճեն 39 տոկոսով, ռադիոէլեկտրոնային և էլեկտրոնային արդյունաբերությանը՝ 2,3 անգամ։

Մեծ ուշադրություն նվիրելով ժողովրդական սպառման ապրանքներ արտադրող ճյուղերի զարգացմանը, 1965 թվականին սննդի ու թեթև արդյունաբերությանը հատկացված է 17,5 միլիոն ռուբլի, 1964 թվականի 12,2 միլիոն ռուբլու դիմաց։

1965 թվականին կգործարկվեն նոր կարողություններ, որոնք հնարավորություն կտան թողարկելու 15 միլիոն հատ տրիկոտաժե արտադրանք, 120 հազար զույգ կոշկեղեն, օրական 13 տոննա կաթնամթերք, ինչպես նաև՝ միս, խաղող և այլ մթերքներ։

Պարտիան ու կառավարությունը հսկայական ուշադրություն են նվիրում բնակարանային շինարարությանը։ Միայն պետական կապիտալ ներդրումների հաշվին յոթնամյակի անցած տարիների ընթացքում շահագործման է հանձըրնվել մոտ 3 միլիոն քառակուսի մետր բնակելի տարածություն։ Այդ նշանակում է, որ 1959—1964 թվականներին երեք անգամ ավելի բնակարաններ են շահագործման հանձնվել, քան նախորդ վեց տարիների ընթացքում։

1965 թվականին ռեսպուբլիկայում կկառուցվի և շահագործման կհանձնվի 823 հազար քառակուսի մետր բնակելի տարածություն, որը 10 տոկոսով ավելի է անցյալ տարվա շահագործման հանձնված բնակելի տարածությունից։ Հազարավոր ընտանիքներ կստանան բարեկարգ ու հարմարավետ բնակարաններ։ Մեծ ուշադրություն կնվիրվի նաև դպրոցների, հիվանդանոցների, մանկական հիմնարկների, գրադարանների շինարարությանը։

Կոմունալ շինարարության մեջ կապիտալ ներդրումների ծավալը, 1964 թվականի համեմատությամբ, կաճի 27 տոկոսով։ Կավարտվի ջրմուղների կառուցումը Արտաշատում և Սևանում, նոր ջրմուղներ կկառուցվեն Հրազդանում, Լուսավանում, Աբովյանում, Ծաղկաձորում։ Շահագործման կհանձնվի Երևանի համար Գյոլ-գյոլ լճից եկող ջրատար խողովակի առաջին հերթը, ինչպես նաև նոր ջրատար խողովակը՝ Կիրովականի համար։

Բարձր գնահատելով ռեսպուբլիկայի շինարարների աշխատանքը, հարկ է



նշել նաև մեր կապիտալ շինարարության մի շարք լուրջ թերություններ։ Դեռևս անբավարար են շինարարական-մոնտաժային աշխատանքների տեմպերը։ Դրանք չեն կարող ապահովել կապիտալ աշխատանքների պլանի ժամանակին կատարումը, ինչպես նաև ժողովրդատնտեսական պլանով նախատեսված հիմնական ֆոնդերի գործարկումը։

1964 թվականին կապիտալ ներդրումների պլանը ռեսպուբլիկայում կատարվել է 91, իսկ շինարարական-մոնտաժային աշխատանքների պլանը՝ 91,1 տոկոսով։

Շինարարության մինիստրությունը, որը ռեսպուբլիկայի առաջատար կապալային կազմակերպությունն է, պլանը կատարեց միայն 97,3 տոկոսով։ Այդ մինիստրության 15 շինարարական տրեստներից տասը չկատարեցին կապալային աշխատանքների պլանները։ Առանձնապես վատ են աշխատել Քաջարանշինը (89,7 տոկոս), Գյուղշինը (90,9 տոկոս), Աբովյանշինը (92,9 տոկոս) և այլն։

Արդյունաբերական նշանակություն ունեցող օբյեկտների գծով կապիտալ ներդրումների պլանը կատարվել է 89,1 տոկոսով, այդ թվում արդյունաբերական շինարարության գծով՝ 88 տոկոսով։ Առանձնապես անբավարար է կատարվել կապիտալ ներդրումների պլանը սննդարդյունաբերության (60,5 տոկոս) ու թեթև արդյունաբերության (74,7 տոկոս) օբյեկտների գծով։ Խիստ թերակատարվել է նաև հիմնական ֆոնդերի գործարկման պլանը։ Այսպես, ռեսպուբլիկայում այդ պլանը կատարվել է ընդամենը 73, իսկ Հայկական ՍՍՌ ժողտնտխորհին ենթակա կազմակերպություններում՝ 62,9 տոկոսով։

Շինարարության մինիստրությունը ժամանակին պատճաշ միջոցներ չձեռնարկեց, իսկ պատվիրատուներն էլ նույնպես համապատասխան միջոցներ ձեռք չառան ապահովելու համար արտադրական կարողությունների ժամանակին գործարկումը Սևանի ապակեթելի գործարանում, Քաջարանի պղնձամոլիբդենային կոմբինատում, Երևանի էլեկտրաշարժիչների գործարանում, Լենինականի միկրո-էլեկտրաշարժիչների գործարանում, Սպիտակի կոնդիցիոներների գործարանում, սննդի, թեթև, փայտամշակման արդյունաբերության և այլ օբյեկտներում։

Մեծ անելիքներ կան ենթակապալային կազմակերպությունների աշխատանքի բարելավման ուղղությամբ։ Նրանք դեռևս ինչպես հարկն է չեն կատարում առաջադրված խնդիրները, խախտում են մոնտաժման և տեխնոլոգիական սարքավորումների կարգավորման, սանտեխնիկական աշխատանքների ժամկետները։

Ստեղծված խոշորացված մոնտաժման տրեստները՝ Արդմոնտաժը, էլեկտրամոնտաժը, Սևանտեխմոնտաժը և այլն պետք է արմատապես փոխեն իրենց աշխատանքի ոճն ու մեթոդները, ապահովեն մոնտաժային աշխատանքների կոմպլեքսային գրաֆիկների ժամանակին կատարումը։

Շինարարության պետական պլանները, ինչպես նաև հիմնական ֆոնդերի գործարկման պլանները թերակատարվեցին ամենից առաջ այն բանի հետևանքով, որ իրենց աշխատանքներում էական թերացումներ թույլ տվին ինչպես շինմոնտաժային կազմակերպությունները, այնպես էլ պատվիրատուները՝ ռեսպուբլիկայի ժողտնտխորհը, մինիստրություններն ու գերատեսչությունները, որոնք շինարարությունը ժամանակին չապահովեցին անհրաժեշտ տեխնի-

կական դոկումենտացիայով, սարքավորմամբ, անհրաժեշտ նյութերով և ֆինանսներով։

Ռեսպուբլիկայի կապիտալ շինարարության ետ մնալու հիմնական պատճառներից մեկը դարձյալ այն է, որ պետշինը և շինարարության մինիստրությունը անհրաժեշտ միջոցներ ձեռք չեն առնում շինարարության ինդուստրացման և աշխատանքների կազմակերպման առաջադիմական մեթոդների արմատավորման արագ տեմպերն ապահովելու ուղղությամբ։

Մեքենաների պարկի արդյունավետ օգտագործման խնդիրը առանձնահատուկ կարևոր նշանակություն ունի, սակայն շինարարության մինիստրությունը տարեցտարի թերակատարում է ինչպես մեքենայացման, այնպես էլ մեքենաների արտադրողական օգտագործման առաջադրանքները։

1964 թվականի ինը ամսվա ընթացքում հողային աշխատանքների կոմպլեքսային մեքենայացման փաստական մակարդակը կազմեց 66,9 տոկոս, պլանով նախատեսված 72 տոկոսի դիմաց։ Դրա հետևանքով ձեռքով կատարվեց 650 հազար խորանարդ մետր ավելի հողային աշխատանք, քան նախատեսված է պլանով։ Շինանյութերի բեռնման ու բեռնաթափման մեքենայացման պլանը թերակատարելու հետևանքով անցյալ տարվա ինն ամսվա ընթացքում ձեռքով կատարվեց 1,3 միլիոն տոննա ավելի աշխատանք, քան նախատեսված էր պլանով։ Նույնպիսի վիճակ էր տիրում շինարարական աշխատանքների նաև մյուս բնագավառներում (բետոնի, երկաթ-բետոնե կոնստրուկցիաների պատրաստումը, քարի, խճաքարի, ավազի և այլ նյութերի արդյունահանումն ու վերամշակումը)։

1965 թվականի պլանով նախատեսված շինարարության հսկայական ծրագիրը կարելի է կենսագործել միայն շինարարության տեխնիկական առաջադիմությունն արագացնելու, այսինքն՝ հետագա ինդուստրացման, կոմպլեքսային մեքենայացման ու ավտոմատացման, նոր նյութեր ու կոնստրուկցիաներ կիրառելու, աշխատանքները ճիշտ կազմակերպելու միջոցով։

Ճիշտ է, ռեսպուբլիկայի շինարարական կազմակերպությունները վերջին տարիների ընթացքում որոշ հաջողություններ են ձեռք բերել շինարարական պրոցեսներն ինդուստրացնելու ասպարեզում։ Դա հնարավորություն է ստեղծել ամեն տարի ավելացնելու կապիտալ ներդրումները։ Սակայն անցյալ տարվա աշխատանքի արդյունքները ցույց են տալիս, որ ձեռնարկած միջոցները դեռևս բավարար չեն շինարարական աշխատանքների ամբողջ ծավալն ապահովելու համար։

Շինարարության լայն ինդուստրացման, նրա մեծ ծավալի և բարձր տեմպերի պայմաններում ամենահրատապ հարցերից մեկը շինարարական աշխատանքների որակն է։

Շինարարության որակը կարելի է շեշտակիորեն բարձրացնել միայն պարտիական կազմակերպությունների կողմից պետական այդ կարևոր գործի նկատմամբ մշտական ուշադրություն ցուցաբերելու դեպքում։ Հարկավոր է բարձրացնել պահանջկոտությունը, շինանյութերի արդյունաբերության աշխատողների և շինարարների պատասխանատվությունը, աշխատավորների ավելի ու ավելի լայն մասսաների ներգրավել որակի վրա հսկելու գործում։ Միշտ էլ պետք է անհանդուրժող լինել խոտան թույլ տվողների, շինարարական աշխատանքները ցածր որակով կատարողների նկատմամբ։

Վերջին ժամանակներս որոշ չափով բարձրացել է ռեսպուբլիկայի կա-



ռույցների սկզբնական պարտիական կազմակերպությունների մարտունակությունը, նրանք ցուցաբերում են ստեղծագործական նոր նախաձեռնություն, ավելի հոգատար են տնտեսական բոլոր հարցերում, ձգտում են արտադրության մեջ ապահովել բոլոր կոմունիստների ավանգարդային դերը։

Սովետական մարդը դաստիարակվում է աշխատանքում։ Աշխատանքով և միմիայն աշխատանքով է կառուցվում նոր հասարակարգը։ Ուստի և ամբողջ գաղափարական աշխատանքի կենտրոնը պետք է կազմի մարդկանց աշխատանքային դաստիարակությունը, որի ժամանակ կառույցների պարտիական կազմակերպությունները պետք է օգտագործեն աշխատանքի լավագույն օրինակները, նորարարների ու առաջավորների փորձը, ամեն կերպ աջակցեն ու զարգացնեն կոմունիստական աշխատանքի շարժումը։ Մինչդեռ որոշ տեղերում այդ աշխատանքը փոխարինվում է սոսկ բազմախոստում պարտավորություններ ընդունելով, աղմկալի ժողովներով ու ելույթներով, մոռանալով գլխավորը՝ աշխատանքի արտադրողականության բարձրացման, շինարարական աշխատանքների բարձր որակի համար մղվող պայքարը, պետական կարգապահության խստիվ պահպանումը։

Պարտիական կազմակերպությունները կոչված են բարձրացնելու շինարարության ղեկավարման մակարդակը, հաստատակամորեն բարելավելու կազմակերպական աշխատանքը կառույցներում և շինանյութերի արդյունաբերության ձեռնարկություններում, մոբիլիզացնելու դրանց կոլեկտիվներն ընթացիկ տարվա ժողովրդատնտեսական պլանով նախատեսված կապիտալ շինարարության ծրագրի հաջող կատարման համար։

Անցած ժամանակաշրջանի փորձը ցույց է տալիս, որ որտեղ պարտիական կազմակերպությունները լրջորեն, գործիմացությամբ են զբաղվում կապիտալ շինարարության հարցերով, այնտեղ հաջողությամբ են կատարվում շինարարության հիմնական ցուցանիշները, ժամանակին են շահագործման հանձնվում օբյեկտները։

Այս առումով ուսանելի է պարտիայի Երևանի քաղաքային կոմիտեի փորձը, որն իր ամենօրյա ուշադրության կենտրոնում է պահել քաղաքի պարտիական կազմակերպությունների կարևորագույն խնդիրը՝ բնակարանային շինարարությունը։ Դրա շնորհիվ 1964 թվականի շինարարության և բնակարանների շահագործման հանձնելու պլանը զգալի չափով գերակատարվել է։

Կադրերի ընտրության լուրջ բարելավումը և սկզբնական պարտիական կազմակերպությունների դերի բարձրացումը հնարավորություն տվեցին պարտիայի Կիրովականի քաղկոմին՝ կատարելու արդյունաբերական ձեռնարկությունների և բնակարանային շինարարության պլանը։

Կատարել 1965 թվականի՝ յոթնամյակի եզրափակիչ տարվա առաջադրանքները, ժամանակին գործարկել նոր արտադրական կարողությունները, շահագործման հանձնել բնակելի շենքերն ու կուլտուր-կենցաղային օբյեկտները՝ ահա շինարարների գլխավոր խնդիրը։

Յոթնամյակի եզրափակիչ տարին, անտարակույս, կլինի մեր ռեսպուբլիկայի աշխատավորների նոր պանծալի հաղթանակների տարի, որ նրանք ձեռք կբերեն Սովետական Միության կոմունիստական պարտիայի նախագծած հոյակապ պլանների կենսագործման համար մղվող պայքարում։

---

Կ. ԲՈՍՏԱՆՋՅԱՆ

# ԿՈՄՈՒՆԻԶՄԻ ՆՅՈՒԹԱՏԵԽՆԻԿԱԿԱՆ ԲԱԶԱՅԻ ՁԵՎԱՎՈՐՄԱՆ ԱՌԹԻՎ*

*Կոմունիստական հասարակական-տնտեսական ֆորմացիայի առաջացումը և զարգացումը բնապատմական, օբյեկտիվ պրոցես է։ Ապագան պատկանում է նրան ամենից առաջ և գլխավորապես այն պատճառով, որ միմիայն նա է ապահովում ժամանակակից արտադրողական ուժերի աննախընթաց արագ ու համակողմանի զարգացումը, դրանով իսկ ստեղծելով իր հասունության բարձրագույն փուլին՝ կոմունիզմին համապատասխանող նյութատեխնիկական բազա, որը լիովին բավարարում է հասարակության ու նրա բոլոր անդամների պահանջմունքները։*

*Այս կապակցությամբ հատուկ նշանակություն է ստանում այն հարցը, թե ինչպե՞ս է կոմունիստական հասարակական-տնտեսական ֆորմացիան ստեղծում իրեն համապատասխանող նյութատեխնիկական բազա, մանավորապես, որոնք են վերջինիս ձևավորման դիալեկտիկական պրոցեսի հիմնական գծերը։*

*Կոմունիզմի նյութատեխնիկական բազան, ի տարբերություն բոլոր նախորդ հասարակական ֆորմացիաների նյութատեխնիկական հիմքերի, ձևավորվում է ոչ թե տարերայնորեն, այլ ժողովրդական մասսաների գիտակցական գործունեության շնորհիվ, ժողովրդական մասսաներ, որոնք ընթանալով կոմունիստական պարտիայի գլխավորությամբ նախապես գիտեն նոր հասարակարգի զարգացման երկու փուլերին համապատասխանող արդյունաբերության, գյուղատնտեսության ստեղծման անհրաժեշտությունը և հիմնական ուղիները։*

*Կոմունիստական հասարակական-տնտեսական ֆորմացիան իրեն ադեկվատ նյութատեխնիկական բազա է ստեղծում հին աշխարհից ժառանգած արտադրողական ուժերի հետագա զարգացումն ապահովելու միջոցով։ Որքան բարձր է այդ արտադրողական ուժերի զարգացման մակարդակը, այնքան նա կարճ ժամանակամիջոցում և հեշտ կարող է կառուցել իր համար բնորոշ, որակապես նոր նյութատեխնիկական բազա։ Ընդհակառակը, որքան ցածր է այդ մակարդակը, այնքան դժվար է նմանօրինակ նյութական արտադրության ձևավորումը։ Սոցիալիստական սիստեմի երկրների մեծամասնությունը, ինչպես նշված է ՍՄԿՊ ծրագրում, անցյալում գտնվել է տնտեսական զարգացման միջին և նույնիսկ ցածր աստիճանի վրա։ Այդ պատճառով համաշխարհային*

* Տպագրվում է քննարկման կարգով: ԽՄԲ.



*սոցիալիստական սիստեմը սոցիալիզմին և կոմունիզմին ադեկվատ նյութատեխնիկական բազա ստեղծելու ճանապարհին հարկադրված է հաղթահարելու որոշակի դժվարություններ, անցնելու տնտեսական զարգացման ավելի շատ էտապներով, քան այդ հարկավոր կլինի տեխնիկական բարձր մակարդակ ունեցող և սոցիալիզմի կառուցման ուղին բռնած ապագա երկրներում։*

*Երկրի սոցիալիստական ինդուստրացումն այն չափով, ինչ չափով Սովետական Միությունում այն իրականացվեց նախքան Հայրենական մեծ պատերազմը, նշանակում էր կոմունիստական հասարակական ֆորմացիայի առաջին փուլին՝ սոցիալիզմին հիմնականում համապատասխանող նյութատեխնիկական բազայի ձևավորում։ Բայց այս էտապում, ինչպես նաև կոմունիզմի ծավալուն կառուցման ժամանակաշրջանը թևակոխելու շրջանում, երբ սոցիալիզմը մեր երկրում որոշակի իմաստով հաղթանակեց լիովին և վերջնականապես, Սովետական Միության արդյունաբերական և գյուղատնտեսական արտադրությունը իր տնտեսա-տեխնիկական ցուցանիշներով դեռևս չէր հասել ամենից ավելի զարգացած կապիտալիստական երկրներին։ Ներկայումս էլ մեր արդյունաբերության, գյուղատնտեսության, շինարարության մեջ և տրանսպորտում ավելի մեծ չափով, քան տեխնիկապես առավել առաջավոր կապիտալիստական երկրներում կիրառվում է ձեռքի աշխատանքը։ Սովետական Միությունը հասարակական աշխատանքի արտադրողականության և յուրաքանչյուր շնչին ընկնող արտադրանքի մակարդակով չի հասել Ամերիկայի Միացյալ Նահանգներին։ Այստեղից, իհարկե, չի կարելի հանգել այն եզրակացության, թե սոցիալիզմի արտադրողական ուժերը ետ են մնում նրա արտադրական հարաբերություններից, ինչպես թյուրիմացաբար կարծում են որոշ հեղինակներ։ Այս բոլորը և դրանց նման երևույթները վկայում են միայն այն մասին, որ արտադրության նոր եղանակը դեռևս չի կարողացել արմատապես վերափոխել անցյալից ժառանգած նյութական արտադրողական ուժերը, որի հետևանքով էլ նրա հարաբերությունները բավականաչափ հասունացած չեն։ Այլ կերպ ասած, մեր երկրում դեռևս լրիվ չի ավարտված զարգացած սոցիալիզմին ադեկվատ նյութատեխնիկական բազայի կառուցման պրոցեսը։ Մինչդեռ տեխնիկական-տնտեսական հիմնական ցուցանիշներով կապիտալիստական առաջավոր երկրների մակարդակը գերազանցած առավել հզոր նյութատեխնիկական բազայի ստեղծումը հանդիսանում է կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ձևավորման նախապատրաստական կարևորագույն էտապներից մեկը։ Եվ դա հասկանալի է։ Զարգացած սոցիալիզմին ադեկվատ նյութատեխնիկական բազայի կառուցման ավարտումը և կոմունիզմին համապատասխանող նյութատեխնիկական բազայի տարրերի ձևավորումը կազմում են մեկ միասնական դիալեկտիկական պրոցես։*

*Հասարակական-տնտեսական ֆորմացիաներն իրենց նյութատեխնիկական հիմքում իրարից գլխավորապես տարբերվում են նրանով, թե ինչպես, աշխատանքի ինչ միջոցներով է տեղի ունենում արտադրությունը։*

*Սոցիալիզմը նույնպես, ինչպես և կապիտալիզմը, հենվում է խոշոր մեքենայական արտադրության վրա։ Բայց, եթե կապիտալիստական արտադրաեղանակը, իր հարաբերությունների անտագոնիստական, սահմանափակ և անցողիկ բնույթի հետևանքով գոյության հարյուրամյակների ընթացքում չի կարողացել և չի կարող ավարտել ժողովրդական տնտեսության բոլոր բնագավառները և տեղամասերը ժամանակակից մեքենայական տեխնիկայով լիովին վե-*

բալինել, ապա արտադրության սոցիալիստական եղանակը իր հետագա զարգացման և աստիճանաբար կոմունիստականի վերաճման ընթացքում արդյունաբերական և գյուղատնտեսական արդյունքների արտադրման մեքենայական, պրոգրեսիվ մեթոդները դարձնում է բացարձակապես տիրապետող։

Արտադրական պրոցեսների արմատական վերափոխման և զարգացած սոցիալիստական արտադրաեղանակին առավել ադեկվատ նյութատեխնիկական բազայի կառուցումը իրականանում է որոշակի հակասությունների և դժվարությունների հաղթահարման միջոցով։

Այդ հակասությունները և դրանց հետ կապված դժվարությունները հիմնականում երկու կարգի են։

Առաջին՝ սոցիալիզմի օրոք օբյեկտիվորեն անհրաժեշտ է և հնարավոր է պլանաչափորեն հաղթահարել բուն նյութական արտադրության ներքին հակասությունները։ Այս կարգի հակասությունների թվին են պատկանում արդյունաբերական և գյուղատնտեսական արտադրության, նրանց նյութատեխնիկական բազաների միջև ներկայումս գոյություն ունեցող էական տարբերությունները, այսինքն՝ գյուղատնտեսության ետ մնալը արդյունաբերությունից, ինչպես նաև արդյունաբերության, գյուղատնտեսության, շինարարական արտադրության ներքին հակասությունները, մասնավորապես, մեքենայացված արտադրական հիմնական պրոցեսների և արտադրության չմեքենայացված օժանդակ ոլորտների միջև առկա հակասությունները։

ՍՄԿՊ ծրագրով նախատեսված կոմպլեքսային մեքենայացման հետևողական իրականացումը արդյունաբերության, գյուղատնտեսության, շինարարության, կոմունալ տնտեսության մեջ և տրանսպորտում կարևոր դեր կխաղա վերոհիշյալ հակասությունների հաղթահարման ասպարեզում։ Արտադրության կոմպլեքսային մեքենայացումը և լայն ավտոմատացումը, ժողովրդական տնտեսության էլեկտրիֆիկացիայի հետագա զարգացումը, քիմիայի նվաճումների կիրառումը, գիտության, տեխնիկայի և առաջավոր փորձի մասսայական արմատավորումը (մշտապես կատարելագործվող սոցիալիստական արտադրական հարաբերությունների շրջանակներում) կհանգեցնեն արդյունաբերական և գյուղատնտեսական արդյունքների արտադրման մեթոդների արմատական վերափոխմանը, արտադրության ոլորտների տեխնիկական մակարդակների, աշխատանքի եղանակների միջև ներկայումս գոյություն ունեցող հակասությունների հաղթահարմանը։ Դրա շնորհիվ բարձր արտադրողական մեքենայական արտադրությունը կդառնա արդյունաբերական, և գյուղատնտեսական արտադրությունը կդառնա արդյունաբերական և գյուղատնտեսական արդյունքների ստեղծման համընդհանուր եղանակ։

Արտադրության պրոցեսի նշված և մյուս ներքին հակասությունները օրգանապես կապված են սոցիալիստական արտադրաեղանակի նյութատեխնիկական բովանդակության և սրա զարգացման սոցիալ-տնտեսական ձևի միջև գոյություն ունեցող որոշակի հակասությունների հետ, որոնք կազմում են հակասությունների հատուկ խումբ։

Այս երկրորդ կարգի հակասություններից են ոչ միայն այն հակասությունները, որոնք առաջանում են արտադրողական ուժերի և այս կամ այն բնագավառում նրանցից ետ մնացող սոցիալիստական արտադրական հարաբերությունների միջև, այլև նյութական արտադրության զարգացման անբավարար մակարդակի և սոցիալիստական տնտեսական հարաբերությունների հետագա կատարելագործման օբյեկտիվ պահանջների միջև գոյություն ունեցող որոշակի հակասությունները։



Սոցիալիստական արտադրական հարաբերությունների, այսինքն՝ արտադրության միջոցների և արտադրված արդյունքների յուրացման ձևերի կատարելագործման պահանջները բխում են արտադրողական ուժերի տվյալ մակարդակից և կարող են բավարարվել միմիայն վերջիններիս հետագա զարգացման, կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ձևավորման ընթացքում։

Սոցիալիստական հասարակության զարգացման ներկա էտապում սոցիալ-տնտեսական լիակատար հավասարության հաստատման օբյեկտիվ պահանջը հակասության մեջ է գտնվում արդյունաբերական և գյուղատնտեսական արտադրության դեռևս անբավարար մակարդակի հետ այն իմաստով, որ այդ մակարդակը հնարավորություն չի տալիս հենց այժմ անցում կատարելու դեպի արտադրության ու բաշխման կոմունիստական ձևերը։ Սոցիալիզմի նյութատեխնիկական բազայի դեռևս անբավարար մակարդակի և սովետական հասարակության նյութական ու կուլտուրական պահանջմունքների միջև ներկայումս գոյություն ունեցող անհամաչափությունը ոչ այլ ինչ է, քան նյութական արտադրության և սոցիալ-տնտեսական լիակատար հավասարության օբյեկտիվ պահանջի միջև առկա համեմատաբար ընդհանուր հակասության կոնկրետ արտահայտություններից մեկը։

Կոմունիստական պարտիայի շուրջը համախմբված ժողովրդական մասսաները ելնելով սոցիալիստական արտադրության զարգացման բնապատմական տենդենցներից, վերջինիս ներկայացնում են որոշակի պահանջներ, տվյալ դեպքում՝ արտադրության ու սպառման միջոցների նկատմամբ սոցիալական հավասարության ապահովման պահանջը։ Մյուս կողմից, իրենց արտադրական գործունեության ընթացքում, ընկերական համագործակցության ու փոխօգնության շնորհիվ իրացնելով արտադրության միջոցների համաժողովրդական և կոլտնտեսային սեփականությունը, նրանք աստիճանաբար ձևավորում են կոմունիզմի նյութատեխնիկական բազան։ Իսկ կառուցելով կոմունիզմի նյութատեխնիկական բազան, քաղաքի և գյուղի աշխատավորները կոմունիստական պարտիայի գլխավորությամբ զարգացնում ու կատարելագործում են արտադրության միջոցների բաշխման ու փոխանակության իրենց հարաբերությունները, այսինքն՝ կատարում են սոցիալ-տնտեսական ավելի ու ավելի լրիվ հավասարության հաստատման ժողովրդական օբյեկտիվ պահանջը։

Վերը համառոտակի շարադրված հակասությունները գտնվում են դիալեկտիկական փոխազդեցության մեջ և, այսպես թե այնպես, կապված են կոմունիզմի նյութատեխնիկական բազայի կառուցման բազմակողմանի ու բարդ պրոցեսի հետ, կազմում են այդ պրոցեսի ներքին մոմենտները։ Հաղթահարելով արդյունաբերական և գյուղատնտեսական արտադրության, հետևաբար և սոցիալիստական հասարակության նյութատեխնիկական բազայի ներքին հակասությունները, մենք կատարելագործում ենք տեխնիկան, աշխատանքի մեթոդները, բարձրացնում նրա արտադրողականությունը։ Արտադրության տարբեր բնագավառների, տեղամասերի տեխնիկական մակարդակների միջև գոյություն ունեցող հակասությունների հաղթահարումը տեղի է ունենում սոցիալիստական արտադրական հարաբերությունների շրջանակներում և անդրադարձ բարերար ազդեցության ներքո։ Որպեսզի սոցիալիստական արտադրական հարաբերությունները մշտապես և ամենուրեք լայն ասպարեզ բացեն

տեխնիկական պրոգրեսի համար ու խթանեն գիտության, տեխնիկայի և առաջավոր արտադրական փորձի կիրառմանը, անհրաժեշտ է արտադրողական ուժերի զարգացման պահանջներին համապատասխան կատարելագործել ետ մնացող սոցիալ-տնտեսական ձևերը, այդ թվում նաև բաշխման հարաբերությունները: Այնուհետև, պետք է նկատի ունենալ, որ արտադրողական ուժերի բնույթին ու զարգացման պահանջներին համապատասխանող սոցիալիստական արտադրահարաբերությունների ներգործությունը նյութական արտադրության ներքին հակասությունների զարգացման վրա, պայմանավորված է արդյունաբերական և գյուղատնտեսական արտադրության զարգացման մակարդակով, վերջինիս կողմից ընձեռվող հնարավորություններով: Այդ մասին է վկայում, օրինակ, քիմիական արդյունաբերության զարգացման և ժողովրդական տնտեսության քիմիացման ծրագրի իրականացման ընթացքը: Պարտիան մշակեց քիմիական արդյունաբերության արագ զարգացման և ժողովրդական տնտեսության, այդ թվում նաև հողագործության և անասնապահության քիմիացման լայն ծրագիր ոչ միայն այն պատճառով, որ արտադրության տվյալ բնագավառները ետ էին մնացել ժողովրդական տնտեսության մյուս բնագավառներից, այլև այն պատճառով, որ արդեն ստեղծված են ու կան անհրաժեշտ նյութատեխնիկական նախադրյալներ դրանց ետ մնալը հաղթահարելու համար: Ըստ որում նշված խնդիրները առաջին պլանի վրա քաշելը ամենևին չի նշանակում անտեսել կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ձևավորման ընդհանուր պրոցեսի մյուս հիմնական գործոնների՝ արտադրության էլեկտրիֆիկացման, կոմպլեքսային մեքենայացման և ավտոմատացման դերն ու նշանակությունը, քանի որ ժողովրդական տնտեսության վերոհիշյալ բնագավառների ետ մնալը հնարավոր է հաղթահարել այդ հիմնական գործոնների ամուր հիմքի վրա:

Սոցիալիստական հասարակարգում արտադրության ելակետային և առաջատար ձևը խոշոր մեքենայական արդյունաբերությունն է, որն իր հզոր արտադրողական ուժերով ու համեմատաբար ավելի կատարյալ սոցիալ-տնտեսական հարաբերություններով վճռական դեր է խաղում կոմունիստական ողջ էկոնոմիկայի, այդ թվում գյուղատնտեսության ասպարեզում կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ձևավորման մեջ: Կոմունիստական էկոնոմիկայի ձևավորման դիալեկտիկայի կարևորագույն առանձնահատկություններից մեկն այն է, որ արտադրության սոցիալիստական եղանակի ոչ անտագոնիստական բնույթի շնորհիվ նրա համաժողովրդական ձևը, ամենից առաջ, համաժողովրդական արդյունաբերության արտադրությունը սոցիալիստական կոլտնտեսային-կոոպերատիվ ձևի հետ ունեցած իր փոխհարաբերությունների մեջ ոչ միայն չի կլանում և չի թուլացնում նրան, այլև ընդհակառակը, նպաստում է վերջինիս ամրապնդմանն ու բազմակողմանի ծաղկմանը: Այդ բարերար ազդեցությունն ամենից առաջ արտահայտվում է նրանում, որ պետական սոցիալիստական արդյունաբերությունը որոշիչ դեր է խաղում գյուղատնտեսության մեջ զարգացած սոցիալիզմի և կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման ասպարեզում: Դա բացատրվում է նոր հասարակարգի նյութատեխնիկական բազայի ինդուստրիալ բնույթով և նրա սոցիալ-տնտեսական հարաբերությունների էությամբ ու հասունության աստիճանով:

Գյուղատնտեսական բոլոր աշխատանքների մեքենայացման և էլեկտրիֆիկացման անհրաժեշտությունն ու հնարավորությունը, հողագործության և



անասնաբուծության հաջող քիմիացումը, ոռոգովի հողագործության զարգացումը, գիտության ու տեխնիկայի նորագույն նվաճումների պլանաչափ կիրառումը գլխավորապես պայմանավորված է սոցիալիստական համաժողովրդական արդյունաբերությամբ, նրա զարգացման աստիճանով: Եթե մինչև վերջերս մեր երկրում դեռևս չկային անհրաժեշտ պայմաններ գյուղատնտեսության լայն քիմիացման և ոռոգովի հողագործության արագ զարգացման համար, ապա դա ամենից առաջ բացատրվում է նրանով, որ սոցիալիստական ինդուստրիան բավականաչափ զարգացած չէր և չէր կարող համապատասխան նյութատեխնիկական միջոցներ մատակարարել այդ անհետաձգելի խնդիրներն իրականացնելու համար:

Սոցիալիստական համաժողովրդական պետությունը արդյունաբերության զարգացման մակարդակին համեմատ գյուղատնտեսությանը մատակարարում է ժամանակակից մեքենայական տեխնիկա, պարարտանյութ և այլ նյութատեխնիկական միջոցներ, որոնք անգնահատելի նշանակություն ունեն սոցիալիստական գյուղատնտեսության համակողմանի զարգացման համար: Բայց որպեսզի այս օրըստորե աճող օգնությունը իսկապես դառնա բազմակողմանիորեն զարգացած և բարձր մթերատու գյուղատնտեսության ձևավորման հզոր գործոն, հարկավոր է միաժամանակ բարելավել հողագործության և անասնապահության կազմակերպումը, լիովին օգտագործել գյուղատնտեսության սոցիալիստական ձևերի հնարավորությունները և առավելությունները:

Հատկապես կարևոր են սովխոզների և կոլտնտեսությունների արտադրական ֆոնդերի հետևողական ընդլայնումը և ճիշտ օգտագործումը: Այդ ֆոնդերն իրենց իրային կազմով հիմնականում այն նյութատեխնիկական միջոցներն են, որոնք գյուղատնտեսությունն ստանում է համաժողովրդական արդյունաբերությունից: Եթե սոցիալիստական արդյունաբերության որոշիչ բարերար ազդեցությունը գյուղատնտեսության վրա գլխավորապես իրականացվում է գյուղին ժամանակակից նյութատեխնիկական միջոցներ մատակարարելու ձևով, ապա կոլտնտեսությունների և սովխոզների արտադրական ֆոնդերի վճռական դերը գյուղատնտեսության հետագա վերելքի ապահովման ասպարեզում արտահայտվում է նույն այդ միջոցների արդյունավետ օգտագործման եղանակով: Բանն այն է, որ երբ քաղաքը, օրինակ, կոլտնտեսային գյուղին մատակարարում է տրակտորներ, կոմբայններ, պարարտանյութ և համապատասխան նյութատեխնիկական այլ միջոցներ, վերջիններս իբրև արտադրական ֆոնդեր դառնում են կոլտնտեսությունների սեփականությունը, իսկ արտադրամիջոցների կոլտնտեսային սեփականությունը համաժողովրդական սեփականության նման կարող է ի[illegible]ցվել և բազմապատկվել աշխատավորների, տվյալ դեպքում, կոլտնտեսականների արտադրական գործունեության ընթացքում, գյուղատնտեսությունը վարելու պրոգրեսիվ եղանակների, առաջավոր փորձի լայն արմատավորման շնորհիվ:

Սովետական սոցիալիստական հասարակության զարգացման ժամանակակից էտապում արդեն կան բոլոր նյութական և սոցիալ-տնտեսական նախադրյալները հասարակական արտադրության բոլոր բնագավառների համընդհանուր և արագ վերելքը ապահովելու համար: Այսպիսի պայմաններում, երբ առկա են անհրաժեշտ նյութական, արտադրական նախադրյալներ և արդյունաբերական ու գյուղատնտեսական արտադրության զարգացման պահանջներին համապատասխանող սոցիալ-տնտեսական ձևեր, կոմունիզմի նյութատեխ-

նիկական բազայի և կոմունիստական ողջ էկոնոմիկայի ձևավորման օբյեկտիվ պրոցեսի արագացման գործում հսկայական դեր են խաղում տնտեսական ճիշտ, գիտականորեն հիմնավորված քաղաքականությունը և արտադրության ղեկավարման կատարելագործումը: Վերջին տարիներս արդյունաբերության և, հատկապես, գյուղատնտեսության ղեկավարման ասպարեզում եղած լուրջ թերությունները զգալի վնաս հասցրեցին սոցիալիստական էկոնոմիկային: Այդ թերությունները արդյունաբերական և գյուղատնտեսական արտադրության շատ տեղամասերի ետ մնալու գլխավոր պատճառներից էին, որովհետև առկա նյութատեխնիկական հնարավորությունները հարկ եղած չափով չէին օգտագործվում, մասնավորապես, արտադրության և աշխատանքի կազմակերպման առաջավոր մեթոդները բավականաչափ չէին կիրառվում: Կոմունիստական պարտիան դատապարտեց սուբյեկտիվիստական բնույթի այդ սխալները և ներկայումս սոցիալիստական էկոնոմիկայի զարգացման օրենքների ճիշտ օգտագործման հիման վրա հետևողականորեն կատարելագործում է ժողովրդական տնտեսության ղեկավարումը: Ըստ որում, պարտիան անշեղորեն ելնում է Վ. Ի. Լենինի այն ցուցումից, թե արտադրության կազմակերպումը և ղեկավարումը կատարելագործելիս հարկավոր է ոչ թե աջ ու ձախ վերակառուցել, այլ առավելագույն չափով օգտագործել արդեն ստեղծված և պրակտիկայում ստուգված ձևերն ու մեթոդները: Կարևոր է այստեղ հաշվի առնել ժամանակակից խոշոր մեքենայական արտադրության զարգացման, նրա արդյունավետ կենտրոնացման, կոոպերացման պահանջները և ըստ այդմ արագորեն արմատավորել արդյունաբերական ու գյուղատնտեսության արտադրության կազմակերպման ձևերը, աշխատանքի առաջավոր, բարձր արտադրողական մեթոդները:

Նոր տեխնիկայի և աշխատանքի պրոգրեսիվ մեթոդների մասսայական տարածումը և արմատավորումը արտադրական կոլեկտիվների, աշխատավորների նյութական շահագրգռվածության հիման վրա, նրանց ընկերական համագործակցության և անշահախնդիր փոխօգնության կազմակերպման, սոցիալիստական մրցության ավելի ու ավելի կատարյալ ձևերի հետևողական կիրառումը հանդիսանում են կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ձևավորման պրոցեսի կարևորագույն միջոցները: Դրանցում իր վառ արտահայտությունն է գտնում աստիճանաբար կատարելագործվող սոցիալիստական արտադրական հարաբերությունների և արտադրության ղեկավարման առաջավոր ձևերի ակտիվ ներգործությունն արտադրողական ուժերի զարգացման, արդյունաբերական և գյուղատնտեսական արդյունքների արտադրման պրոգրեսիվ մեթոդների ամենալայն արմատավորման ընդհանուր պրոցեսի վրա:

Արդյունաբերական և գյուղատնտեսական արտադրանքի բարձր արտադրողական մեթոդները ենթադրում են ժամանակակից տեխնիկական պրոգրեսի հիմնական ուղղությունների՝ էլեկտրիֆիկացման, կոմպլեքսային մեքենայացման, ավտոմատացման և քիմիացման համապատասխան զարգացում և իրենցով բնութագրում կոմունիզմի ձևավորվող նյութատեխնիկական բազան: Այդ մեթոդների հետագա կատարելագործումը իրենով կնշանավորի արտադրողական ուժերի այնպիսի զարգացում, երբ գյուղատնտեսական աշխատանքը կդառնա առաջավոր տեխնիկայով զինված բարձր արտադրողական արդյունաբերական աշխատանքի տարատեսակը, իսկ այնուհետև (լիակատար կո-



մունիզմի օրոք) տեղի կունենա մտավոր և ֆիզիկական աշխատանքի օրգանական միացում մարդկանց արտադրական գործունեության մեջ:

Գյուղատնտեսական աշխատանքի վերածումը արդյունաբերական աշխատանքի տարատեսակի և մտավոր ու ֆիզիկական աշխատանքի օրգանական միացումը մարդկանց արտադրական գործունեության մեջ հանդիսանում են կոմունիզմի ադեկվատ հասարակական արտադրողական ուժերի, նրան համապատասխանող նյութատեխնիկական բազայի ընդհանուր դիալեկտիկական պրոցեսի օբյեկտիվ օրինաչափությունները: Ավելի կոնկրետ արտահայտված, կոմունիստական արտադրաեղանակի ադեկվատ նյութատեխնիկական բազայի համար բնորոշ են հիմնականում երկրի էլեկտրիֆիկացման ավարտումը, արտադրական պրոցեսների կոմպլեքսային մեքենայացումը և լայն ավտոմատացումը, ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերում ժամանակակից քիմիայի նվաճումների լրիվ օգտագործումը, գիտության և արտադրության օրգանական միացումը: Հասարակական արտադրության նմանօրինակ նյութատեխնիկական բազայի կառուցումը ենթադրում է քաղաքի և գյուղի աշխատավորության կուլտուր-տեխնիկական բարձր մակարդակ:

Բայց այստեղից չի կարելի եզրակացնել, թե կոմունիզմի նյութատեխնիկական բազան կառուցող մարդիկ իրենց արտադրական փորձով, կուլտուր-տեխնիկական մակարդակով, իբրև գլխավոր արտադրողական ուժ, կազմում են կոմունիստական հասարակական տնտեսական ֆորմացիայի ձևավորվող նյութատեխնիկական բազայի տարրերից մեկը, ինչպես այդ անում են որոշ հեղինակներ:

Չի կարելի կոմունիզմի նյութատեխնիկական բազայի կառուցման պրոցեսը, նրա ձևավորման համար անհրաժեշտ նյութական-արտադրական նախադրյալները շփոթել կոմունիզմի նյութատեխնիկական բազայի հետ: Կոմունիզմի նյութատեխնիկական բազան ստեղծվում է միլիոնավոր և տասնյակ միլիոնավոր աշխատավորների անձնուրաց ստեղծագործական աշխատանքով և ձևավորվում է նրանց կուլտուր-տեխնիկական համընդհանուր վերելքի պայմաններում: Կոմունիզմի նյութատեխնիկական բազան գործողության մեջ բնութագրվում է աշխատանքի նոր, պրոգրեսիվ եղանակներով, արդյունաբերական և գյուղատնտեսական արտադրանքի ստեղծման առաջավոր մեթոդներով և որակով:

Որքան բարձր է արտադրողական ուժերի նյութական տարրերի՝ արտադրամիջոցների, հատկապես արտադրության գործիքների զարգացման մակարդակը, այնքան կատարյալ է հասարակության նյութատեխնիկական բազան: Հետևաբար կոմունիզմի նյութատեխնիկական բազայի կառուցումը որպես օբյեկտիվ դիալեկտիկական պրոցես ենթադրում է քաղաքի և գյուղի աշխատավորության կուլտուրական-տեխնիկական բարձր մակարդակ:

Կոմունիզմի նյութատեխնիկական բազան աշխատավորական մասսաների արտադրական գործունեությամբ ստեղծված արդյունաբերական և գյուղատնտեսական արտադրության զարգացման այնպիսի բարձր մակարդակ է, որն ի վիճակի է ամբողջ բնակչության համար ապահովելու նյութական ու հոգևոր բարիքների առատություն: Ստեղծելով արդյունաբերական և գյուղատնտեսական այդպիսի արտադրություն, սովետական հասարակությունը կավարտի զարգացած սոցիալիզմի նյութատեխնիկական բազայից կոմունիզմին ադեկվատ նյութատեխնիկական բազային անցնելու շրջանը:

Պարտիան և սովետական ժողովուրդը, կենսագործելով ՍՄԿՊ ծրագիրը,
կստեղծեն կոմունիստական արտադրաեղանակին լիովին համապատասխանող
նյութատեխնիկական բազա։

Նախ՝ կոմունիստական արտադրաեղանակին հատուկ աշխատանքի մի-
ջոցներին ու առարկաներին տիրապետելու իմաստով, նյութական արտադրու-
թյան իրային ու անձնական գործոնների տեխնոլոգիական միացման եղանակի
վերափոխման իմաստով, այսինքն՝ նոր հասարակությունը կստեղծի արդյունա-
բերական և գյուղատնտեսական արդյունքների պատրաստման միայն իրեն
բնորոշ առաջավոր մեթոդների համապարփակ սիստեմ։ Դա նշանակում է, որ
արդյունաբերական և գյուղատնտեսական աշխատանքի բնույթը, գիտության և
տեխնիկայի նորագույն նվաճումների կիրառման շնորհիվ, արմատապես կփոխ-
վի, այն իր տեխնիկական զինվածությամբ կդառնա բարձր արտադրողական
կոմունիստական աշխատանք։

Երկրորդ՝ հասարակության նյութատեխնիկական նման բազան իրեն հա-
տուկ աշխատանքի մեթոդներով կլինի ադեկվատ կոմունիստական արտադրա-
եղանակին նաև այն իմաստով, որ հնարավորություն կտա ավարտելու ան-
ցումն արտադրության իրային և անձնական գործոնների միացման սոցիալիս-
տական՝ սոցիալ-տնտեսական եղանակից դեպի կոմունիստական եղանակը,
այսինքն՝ իրականացնելու թռիչք դեպի մեկ միասնական համաժողովրդական
կոմունիստական սեփականություն և վճռական քայլ կատարելու նյութական ու
հոգևոր բարիքներն ըստ պահանջմունքի բաշխելու կոմունիստական սկզբուն-
քի կիրառման ճանապարհին։

Հասարակական արտադրության նյութատեխնիկական այդպիսի հզոր և
բազմակողմանի զարգացած նյութատեխնիկական բազա կարող է ստեղծ-
վել միայն ու միայն սոցիալիստական արտադրահարաբերությունների շրջա-
նակներում, որովհետև միմիայն ընկերական համագործակցության և անշա-
հախնդիր բարեկամական փոխօգնության այդ հարաբերություններն են, որ
հնարավորություն են տալիս լիովին իրացնելու ժամանակակից գիտության ու
տեխնիկայի նվաճումները, հաջողությամբ իրականացնելու արդի գիտատեխ-
նիկական ռևոլյուցիան և այդ ռևոլյուցիայի կատարման ընթացքում նրա
պտուղներն օգտագործելու հօգուտ հասարակության, հօգուտ ժողովրդի բարօ-
րության։



Հ. ԱՋԻՋԲԵԿՅԱՆ

Պատմական գիտությունների թեկնածու

# ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ԵՐԿՐՆԵՐԻ ՏՆՏԵՍԱԿԱՆ ԿԱՊԵՐԻ ԱՄՐԱՊՆԴՈՒՄԸ

Երկրորդ համաշխարհային պատերազմից հետո աշխարհում տեղի ունե-
ցան ռևոլյուցիոն մեծ տեղաշարժեր, որոնք արմատապես փոխեցին աշխարհի
քարտեզը։ Դարագլուխ կազմող այդ մեծ վերափոխությունների մեջ ամենա-
նշանակալիցն ու վճռականը համաշխարհային սոցիալիստական սիստեմի
ծնունդն ու անշեղ վերելքն է։

Պատմությունը դեռևս չգիտե սերտ համագործակցության և փոխադարձ
օգնության հասարակական-քաղաքական ու տնտեսական այնպիսի հարաբե-
րություններ, ինչպիսիք առաջացել են սոցիալիստական երկրների ժողովուրդ-
ների միջև։ Արմատական շահերի, ընդհանուր խնդիրների և նպատակների
միասնությամբ զոդված՝ սոցիալիզմի երկրներն ստեղծեցին Տնտեսական փո-
խադարձ օգնության խորհուրդը՝ ազատ ժողովուրդների բարեկամության բարձ-
րագույն օրգանը։

Միջազգային տնտեսական հարաբերությունների այդ նոր ձևը, խարսխ-
ված պրոլետարական ինտերնացիոնալիզմի և եղբայրական դաշինքի վրա,
հաղթանակ հաղթանակի հետևից է տանում այն ընդհանուր պայքարում, որ
միջազգային ասպարեզում մղում են սոցիալիստական լագերի երկրները ռազ-
մական ագրեսիայի վտանգի դեմ, հանուն սոցիալիստական տարբեր կարգ
ունեցող պետությունների խաղաղ գոյակցության, միջազգային լարվածության
թուլացման, բանվորական ու կոմունիստական պարտիաների միասնության
ամրապնդման։

Սովետական Միության և սոցիալիզմի մյուս երկրների միջև ստեղծված
տնտեսական ու քաղաքական համագործակցության 20 տարիները համոզիչ
կերպով ցույց են տալիս, որ այդ գործելակերպը բախտորոշ նշանակություն
ունի ինչպես յուրաքանչյուր սոցիալիստական երկրի, այնպես էլ ամբողջ հա-
մաշխարհային սոցիալիստական սիստեմի համար։

Դեռևս 1918 թվականին Վ. Ի. Լենինը նշում էր սովետական ռեսպուբլիկա-
ների տնտեսական սերտ դաշինքի անհրաժեշտությունը, առանց որի հնարա-
վոր չէ վերականգնել իմպերիալիզմի կողմից ավերված արտադրողական ուժե-
րը, ապահովել աշխատավորների բարեկեցությունը։ «...միասնական, մի ընդ-
հանուր պլանով բոլոր ազգերի պրոլետարիատի կողմից կարգավորվող համաշ-

խարհային տնտեսության՝ որպես ամբողջության ստեղծման տենդենցը,—գրում էր նա,— որը միանգամայն ակնհայտորեն դրսևորվել է արդեն կապիտալիզմի օրով... անպայման ենթակա է հետագա զարգացման ու լիակատար ավարտման սոցիալիզմի օրով» (Երկեր, հատ. 31, էջ 168)։

Մարքսը և Էնգելսը, խոսելով համաշխարհային պրոլետարիատի համերաշխության մասին, նշում էին, որ բանվոր դասակարգը ազատություն ձեռք կբերի միայն այն ժամանակ, երբ կնվաճի ամբողջ աշխարհի պրոլետարիատի եղբայրական դաշինքը։ «Անցյալի փորձը ցույց տվեց, որ արհամարհական վերաբերմունքը դեպի եղբայրական այն դաշինքը, որ պիտի գոյություն ունենա տարբեր երկրների բանվորների միջև և նրանց դրդի իրենց ազատագրական պայքարում ամուր պաշտպանել միմյանց, պատժվում է նրան ցաք ու ցրիվ ճիգերի ընդհանուր պարտությամբ» (Կ. Մարքս, Ֆ. Էնգելս, Ընտիր երկեր, հատ. 1, էջ 456)։

Կոմունիստական ու բանվորական պարտիաները սոցիալիզմի երկրների տնտեսական ու քաղաքական համագործակցության բազմակողմանի զարգացման գործում հաշվի են առնում, որ սոցիալիզմի ուղու վրա են կանգնում տնտեսական զարգացման տարբեր մակարդակ, պատմական տարբեր տրադիցիաներ, յուրահատուկ փորձ ունեցող երկրներ։ Ղեկավարվելով այս սկզբունքով՝ սոցիալիզմի երկրները համագործակցում և փոխադարձ օգնություն են ցույց տալիս միմյանց՝ առանձին երկրների ազգային շահերը ճիշտ զուգակցելով սոցիալիզմի ամբողջ սիստեմի տնտեսական զարգացման ընդհանուր շահերի հետ։

Համաշխարհային սոցիալիստական սիստեմի առաջացման հենց առաջին օրերից սոցիալիզմի բոլոր երկրների աշխատավորները փորձով համոզվել են, որ նրանց միջև հաստատված եղբայրական համակողմանի համագործակցությունն ապահովում է նրանցից յուրաքանչյուրի տնտեսության անշեղ զարգացումը, ամրապնդում եղբայրական ինտերնացիոնալ կապերը, ավելի հզոր ու անառիկ դարձնում ամբողջ սոցիալիստական լագերը։ Պայքարելով տնտեսության զարգացման համար, սոցիալիզմի լագերի երկրների աշխատավորները մեծ ավանդ են մուծում ինչպես ամբողջ սոցիալիստական համագործակցության, այնպես էլ համաշխարհային սոցիալիստական տնտեսության զարգացման գործում։

Հենվելով փոխադարձ օգնության և աջակցության վրա, Տնտեսական փոխադարձ օգնության խորհրդի անդամ երկրների աշխատավորներն իրավամբ հպարտանում են իրենց գործերով։ Ավարտվել է ինտերնացիոնալ մեծագույն կառուցումներից մեկը՝ Բարեկամություն նավթամուղը։ 4500 կիլոմետր երկարություն ունեցող այդ վիթխարի մայրուղին կառուցվել է ՍՍՌՄ-ի, Չեխոսլովակիայի, Լեհաստանի, Հունգարիայի, Գերմանական Դեմոկրատական Ռեսպուբլիկայի միացյալ ջանքերով։ Սովետական Միությունը և Լեհաստանը նավթատարի կառուցմանն են տրամադրել 4500 կիլոմետր խողովակ, որը մոնտաժվել է սովետական ամենակատարելագործված մեքենաների օգնությամբ։ Գերմանացի բանվորները նավթատարն ապահովեցին մղիչ բարդ սարքավորումներով։ Սովետական բարձրորակ նավթը Վոլգայի ափերից Բարեկամություն նավթատարով հասավ Լեհաստան, Գերմանական Դեմոկրատական Ռեսպուբլիկա, Չեխոսլովակիա և Հունգարիա։

Սոցիալիստական երկրների էկոնոմիկայի հանգուցային հարցերից մեկը



հումքային և վառելիքա-էներգետիկ բազայի համատեղ զարգացումն է։ Տնտեսական փոխօգնության խորհրդի անդամ երկրների՝ վառելիքի, էլեկտրաէներգիայի և հումքի հարաճուն պահանջները լրիվ բավարարելու համար մշակվել է վառելիքա-էներգետիկ հաշվեկշիռ մինչև 1980 թվականը։ Նախնական հաշվարկումներով, սոցիալիզմի երկրներում 1980 թվականին կարտադրվի մինչև 3.400 միլիոն տոննա պայմանական վառելիք, 1960 թվականի 970 միլիոնի դիմաց։ Այդ նույն ժամանակաշրջանում էլեկտրաէներգիայի արտադրությունը 407 միլիարդ կիլովատ-ժամից կհասնի երեք ու կես տրիլիոնի կամ կավելանա մոտ 9 անգամ։ Փոխադարձ օգնության խորհրդի երկրները ունեն հումքային և վառելիքա-էներգետիկ պաշարների օգտագործման ասպարեզում բոլոր հնարավորությունները՝ աշխատանքի միջազգային բաժանման և համագործակցության խորացման ու զարգացման միջոցով կատարելու այդ խնդիրը։

Աշխատանքի սոցիալիստական բաժանման մեջ մեծ նշանակություն ունի էլեկտրաէներգիայի փոխանակությունը։ Ավելի քան 40 տարի առաջ Վ. Ի. Լենինը գրել է, որ ժամանակակից առաջավոր տեխնիկան համառորեն պահանջում է մեկ պլանով էլեկտրիֆիկացնել ամբողջ երկիրը և հարևան մի շարք երկրներ։

Մեր օրերում կենսագործվում են լենինյան կանխագծումները։ 1960 թվականին ավարտվեց Լեհաստանի, ԳԴՌ-ի, Չեխոսլովակիայի և Հունգարիայի էներգասիստեմների միացումը, որի հետ 1962 թվականին խաղաղության բարձրավոլտ գծով միացան Ուկրաինայի արևմտյան մարզերի էլեկտրակայանները։ 1963 թվականին այդ օղակին միացավ Ռումինիան, իսկ 1964 թվականի վերջին՝ նաև Բուլղարիան։

ՍՍՌՄ Եվրոպական մասի էներգետիկ սիստեմը և եվրոպական սոցիալիստական երկրների՝ արդեն գործող էներգետիկ սիստեմը նույնպես միավորվում են միասնական էներգետիկ սիստեմում՝ Էլբայից մինչև Ուրալ։ Էլեկտրական վիթխարի հոսքը կառավարելու համար կազմակերպվել է միացյալ էներգասիստեմների կենտրոնական դիսպետչերային վարչություն, որը գտնվում է Պրագայում։

Եվրոպայի սոցիալիստական երկրների էլեկտրահաղորդիչ գծերի միացումը նպաստում է կոմունիստական էկոնոմիկայի շինարարության վիթխարի խնդիրների հաջող լուծմանը։

Սոցիալիզմի երկրների համատեղ ջանքերով օրըստօրե ծավալվում է նոր կառուցումների շինարարությունը։ Այսպես՝ Լեհաստանի հարավ-արևմուտքում՝ Տուրոշուվում, կառուցվում է վառելիքաէներգետիկ հզոր մի կոմբինատ։ Գորշ ածխի ամենահարուստ պաշարների բազայի վրա մի շարք երկրների ջանքերով ստեղծվում է էներգետիկ նոր կոմպլեքս։ ԳԴՌ-ն կատարում է այդ կոմպլեքսի հանքահրապարակների շինարարությունը, Լեհաստանը նույն նպատակով կառուցում է երկրում խոշորագույն ջերմաէլեկտրակենտրոնը և վիթխարի կաթսաներ։ Այդտեղ տեղադրվելու են 200 հազար կիլովատ կարողությամբ սովետական 7 տուրբոգեներատորներ։ Էլեկտրակայանը էներգիա է մատակարարելու Լեհաստանի հանքահորերին, Չեխոսլովակիայի և Հունգարիայի մեքենաշինական գործարաններին, Գերմանական Դեմոկրատական Ռեսպուբլիկայի նավաշինարարներին։

Հաջողությամբ է զարգանում Լեհաստանի, Չեխոսլովակիայի և ԳԴՌ-ի համագործակցությունը լեհական տերիտորիայում ածխի հանքաշերտերի մշակման ուղղությամբ։

1962 թվականին կարևոր տնտեսական համաձայնագրեր կնքվեցին Հունգարիայի, Լեհաստանի, Չեխոսլովակիայի և սոցիալիզմի մյուս երկրների միջև կավահողի, ալյումինի և կալիումային արտադրության բնագավառում համագործակցելու վերաբերյալ, Բուլղարիայի և Ռումինիայի միջև՝ Դանուբի վրա էլեկտրակայան կառուցելու մասին։ Ընդունված պայմանագրերի համաձայն ՍՍՌՄ-ը սոցիալիստական երկրներից ներմուծում է քիմիական սարքավորումներ, շաքարի և ցեմենտի գործարանների սարքեր, տրանսպորտային միջոցներ, գունավոր ու հազվագյուտ մետաղներ, վոլֆրամ, գլանվածք և այլ նյութեր։ Ռումինիայում ՍՍՌՄ-ի, Չեխոսլովակիայի, ԳԴՌ-ի և Լեհաստանի օգնությամբ կառուցվում է ցելյուլոզային կոմբինատ. ՍՍՌՄ-ը և Չեխոսլովակիան համատեղ կառուցում են սև ու գունավոր մետաղների մշակման գործարաններ։

Սոցիալիստական համագործակցության երկրներում առանձնապես արագ են զարգանում արդյունաբերության այն ճյուղերը, որոնցով Տնտեսական փոխօգնության խորհրդի անդամ երկրները մասնագիտանում են աշխատանքի միջազգային սոցիալիստական բաժանման մեջ։ Չեխոսլովակիայում, օրինակ, անցյալ տարի քիմիական արդյունաբերության համար սարքավորումների արտադրությունն ավելացավ 31,5, տեքստիլ արդյունաբերության համար՝ 34,2 տոկոսով։ Հունգարիայում հաստոցների, սարքերի և կապի միջոցների թողարկումը մեծացավ 24, նավթի վերամշակման սարքավորումներինը՝ 59 և քիմիական արդյունաբերության սարքավորումներինը՝ 41 տոկոսով։

Այսպիսով, փոխադարձ օգնության երկրների հարաբերություններում առաջին անգամ ստեղծվեցին աշխատանքի միջազգային բաժանման և տնտեսական պլանների կոորդինացման բարենպաստ պայմաններ, որոնց մասին երազում էր Կ. Մարքսը՝ պատկերելով ապագա սոցիալիստական հասարակարգը։ Տնտեսական համագործակցության և աշխատանքի միջազգային սոցիալիստական բաժանման առավելությունների շնորհիվ սոցիալիզմի երկրները կարող են զգալի չափով արագացնել իրենց առաջընթացը դեպի կոմունիզմ, ժամանակ շահել կապիտալիզմի հետ տնտեսական մրցության ասպարեզում։ Առանց դրա անկարելի է հաջողությամբ զարգացնել համաշխարհային սոցիալիստական սիստեմը՝ ամբողջությամբ վերցրած։ Այժմ գնալով կատարելագործվում են սոցիալիզմի երկրների տնտեսական ղեկավարման ձևերն ու մեթոդները, ավելի ռացիոնալ են օգտագործվում ներքին ռեսուրսները, տեղի է ունենում արտադրության մասնագիտացում և կոոպերացում, ժողովրդատնտեսական պլանների կոորդինացում։ Կյանքը ցույց է տալիս, որ համաշխարհային սոցիալիստական տնտեսության հետագա վերելքի մայրուղին յուրաքանչյուր սոցիալիստական երկրի ազգային տնտեսության զարգացման նպատակով տնտեսական համագործակցության ու փոխօգնության ամրապնդման ու ընդլայնման ասպարեզում գործադրած ջանքերի զուգակցումն է։

Տնտեսական փոխօգնության խորհրդի անդամ երկրների տնտեսական ու գիտատեխնիկական բազմակողմանի համագործակցության ընդլայնումն ու խորացումը նրանց էկոնոմիկայի արագ զարգացման կարևոր գործոնը հանդիսացան։ Այսպես, 1962 թվականին արդյունաբերական արտադրության ծավալը Բուլղարիայում 1950 թվականի մակարդակը գերազանցեց հինգ, Հունգարիայում, Չեխոսլովակիայում և Գերմանական Դեմոկրատական Ռեսպուբլիկայում՝ ավելի քան երեք, Լեհաստանում՝ չորս, Մոնղոլական Ժողովրդական Ռեսպուբ-



լիկայում՝ մոտավորապես չորս ու կես, Սովետական Միությունում՝ ավելի քան երեք ու կես անգամ։

Սոցիալիստական ինդուստրացման հետևողական կիրառման շնորհիվ արմատական փոփոխություններ են տեղի ունեցել տնտեսական փոխադարձ օգնության խորհրդի անդամ երկրների տնտեսական կառուցվածքում։ Այժմ զուտ արդյունաբերական ու գյուղատնտեսական արտադրանքի ընդհանուր արտադրության մեջ արդյունաբերության բաժինը, օրինակ, Բուլղարիայում և Ռումինիայում կազմում է ավելի քան 60, Լեհաստանում՝ 70, Հունգարիայում՝ 75 տոկոս։ Պետք է նկատի ունենալ, որ այդ երկրները մեկուկես-երկու տասնամյակ առաջ ագրարային երկրներ էին։

Այս փաստերը հերքում են հակասովետական պրոպագանդայի այն ստահոդ հերյուրանքները, որով փորձում են Սովետական Միությունը պատկերել որպես իմպերիալիստական պետությունների նման մի երկիր, մի մեծ տերություն, որն, իբր, արգելակում է արդյունաբերության զարգացումը տնտեսական փոխօգնության խորհրդի անդամ մյուս երկրներում, իբր, ուզում է նրանց պահել իրենից կախված վիճակում, որպես իր հումքային հավելուկը։

Համաշխարհային սոցիալիստական սիստեմը ո՛չ միայն ապահովում է սոցիալիզմի էկոնոմիկայի առաջընթաց ու ներդաշնակ զարգացումը, այլև զորեղ աջակցություն է ցույց տալիս նոր զարգացող երկրների ժողովուրդներին, որոնք պայքարում են ազգային անկախության, սոցիալական առաջադիմության ու դեմոկրատիայի համար։

Ներկայումս տնտեսական փոխօգնության խորհրդի անդամ երկրները տնտեսական ու տեխնիկական օգնություն են ցույց տալիս Ասիայի, Աֆրիկայի և Լատինական Ամերիկայի 43 երկրների՝ կառուցելու 1170 արդյունաբերական ձեռնարկություններ և այլ օբյեկտներ, որոնք վիթխարի նշանակություն ունեն այդ երկրներում ազգային անկախ ինդուստրիա ստեղծելու համար։

Արևմուտքում սիրում են նոր զարգացող երկրներին ցույց տված իրենց տնտեսական «օգնությունը» հռչակել որպես իմպերիալիզմի և գաղութատիրության գիշատիչ էության փոփոխման լավագույն վկայություն։ Սակայն հայտնի է, որ այդ «օգնությունը» սոսկ միջոց է, որի շնորհիվ իմպերիալիստները շարունակում են այդ երկրներից հսկայական հարստություններ քամել։ Մասնագետների հաշվարկումներում, իմպերիալիստական մոնոպոլիաները ներդրված կապիտալի դիմաց տարեկան ստանում են մոտավորապես 5 միլիարդ դոլար ուղղակի շահույթ, միջազգային մոնոպոլիաներն իրենց սեյֆերն են լցնում 14—16 միլիարդ դոլար՝ անհավասար փոխանակման, Աֆրիկայի, Ասիայի և Լատինական Ամերիկայի ժողովուրդներին կողոպտելու հաշվին։ Ազատագրված երկրների ժողովուրդներն սկսում են ավելի ու ավելի պարզ հասկանալ այդպիսի «օգնության» իսկական արժեքը, այն ճշտորեն բնորոշելով որպես նեոգաղութատիրության քաղաքականություն։ Հակառակ դրան սոցիալիստական երկրների օգնությունը հենվում է հավասարության, ընկերական աջակցության սկզբունքների վրա։ ՍՍՌՄ-ը և տնտեսական համագործակցության մյուս սոցիալիստական երկրները շարունակում են համագործակցել զարգացող երիտասարդ պետությունների հետ, օգնում են նրանց՝ ստեղծելու իրենց ազգային էկոնոմիկայի հիմքերը։

Հաղթանակած սոցիալիզմի երկրները համաշխարհային զարգացման վրա ներգործում են, գլխավորապես, տնտեսական շինարարության բնագավառում

ձեռք բերած իրենց հաջողություններով։ Խաղաղ մրցության մեջ սոցիալիստական երկրներն ապացուցել են իրենց լիակատար գերազանցությունը տնտեսավարության կապիտալիստական սիստեմի հանդեպ։ Այդ իր առավել ցայտուն արտահայտությունն է գտնում երկու լագերների տնտեսական զարգացման տեմպերում։ Այսպես, եթե 1963 թվականին սոցիալիզմի երկրների արդյունաբերական արտադրության ծավալը նախապատերազմյան մակարդակը գերազանցում էր 8 անգամ, ապա կապիտալիստական երկրներում՝ ընդամենը 2,9 անգամ։ Այժմ համաշխարհային սոցիալիստական սիստեմն արագ վեր է ածվում աշխարհի խոշոր ինդուստրիալ կենտրոնի։ Համաշխարհային արդյունաբերական արտադրանքի մեջ սոցիալիստական երկրների բաժինը, որը մինչև երկրորդ համաշխարհային պատերազմը կազմում էր մոտ 10 տոկոս, 1963 թվականին հասավ 38-ի։

ՍՍՌՄ-ի և սոցիալիստական մյուս երկրների միջև լայնորեն զարգանում է գիտատեխնիկական համագործակցությունը, որը մեծ չափով նպաստում է արդյունաբերության մոդեռնացմանը, արտադրության նոր ճյուղերի յուրացմանը։

Այժմ առավել մեծ նշանակություն է ստանում այդ երկրների գիտահետազոտական ինստիտուտների և նախագծային ու կոնստրուկտորական բյուրոների սիստեմատիկ համագործակցությունը, ինչպես նաև աշխատանքի բաժանումը նրանց միջև, որը բխում է գիտահետազոտական աշխատանքների պլանների կոորդինացումից ինչպես արդյունաբերության անմիջական պահանջների, այնպես էլ միջուկային հետազոտությունների ասպարեզում և գիտության կարևորագույն այլ բնագավառներում։ Սովետական գիտնականներն ու մասնագետները արժեքավոր օգնություն են ցույց տալիս արդյունաբերության այնպիսի բնագավառներում, ինչպիսիք են՝ մետալուրգիան, մեքենաշինությունը, քիմիան, հանքային գործը, էլեկտրոնիկան, էներգետիկան և այլն։ Միայն Լեհաստանը 1950 թվականից ստացել է տեխնիկական փաստաթղթերի մոտավորապես 2.800 կոմպլեկտ, որը մեծ չափով նպաստել է այնպիսի արտադրանքների թողարկմանը, ինչպիսիք են՝ որակավոր պողպատը, մեծ կարողություն ունեցող տուրբիններն ու գեներատորները, էլեկտրազոդված ալյումինը, սինթետիկ կաուչուկը, ավտոդողերը և հարյուրավոր այլ կարևոր ապրանքներ։

ՍՄԿԿ XXII համագումարը նշեց, որ այժմ գլխավորը բոլոր սոցիալիստական երկրների և նրանցից յուրաքանչյուրի էկոնոմիկայի անշեղ զարգացումն է, արտադրության բացարձակ ծավալով սոցիալիզմի համաշխարհային սիստեմի գերազանցության հասնելը՝ կապիտալիստականի հանդեպ։ ՍՍՌՄ-ը, որն առաջինը թևակոխեց կոմունիզմի ծավալուն կառուցման ուղին, հեշտացնում և արագացնում է համաշխարհային սոցիալիստական մյուս երկրների առաջընթացը դեպի կոմունիզմ։ Պարտիան առաջնորդվում է այն օրինաչափությամբ, որ սոցիալիզմի երկրները, հաջողությամբ օգտագործելով սոցիալիստական կարգերի հնարավորությունները, այս կամ այն չափով միաժամանակ կթևակոխեն կոմունիստական հասարակարգի բարձրագույն փուլը։ Այդ պայմանավորված է նրանով, որ ամբողջ սոցիալիստական սիստեմում գործում է պլանաչափ, համամասնական օրենքը, որի շնորհիվ անցյալում հետամնաց երկրները, հենվելով համագործակցության և փոխօգնության վրա՝ արագ բարձրացնում են իրենց տնտեսությունն ու կուլտուրան, հասնում ավելի զարգացած երկրներին։



Ժողովրդական տնտեսության բոլոր բնագավառներին զուգընթաց զարգանում է նաև Տնտեսական փոխադարձ օգնության խորհրդի անդամ երկրների գյուղատնտեսությունը։ Այժմ այդ երկրներում հողային տարածությունների 90 տոկոսը մշակվում է սոցիալիստական սեկտորի կողմից։ Այդ ռևոլյուցիոն խոր շրջադարձ է գյուղատնտեսության մեջ։ Գյուղատնտեսական արտադրության ասպարեզում սոցիալիստական համագործակցության երկրներն իրենց ջանքերը կենտրոնացնում են գյուղատնտեսության նյութատեխնիկական բազայի հետագա ամրապնդման ու ինտենսիֆիկացման հարցերի վրա։ Զգալի չափով հարստացել են այդ երկրների գյուղատնտեսության մեքենայական պարկերը։ 1963 թվականի վերջում տրակտորային պարկերում հաշվվում էր Բուլղարիայում՝ 34, Հունգարիայում՝ 54, ԳԴՌ-ում՝ 112, Մոնղոլական Ժողովրդական Ռեսպուբլիկայում՝ 4, Լեհաստանում՝ 101, Ռումինիայում՝ 65, ՍՍՌՄ-ում՝ 1.451, Չեխոսլովակիայում՝ 103 հազար տրակտոր։ Ավելացել է նաև հացահատիկային կոմբայնների թիվը։

Տնտեսական փոխօգնության խորհրդի անդամ երկրները որոշել են մասնագիտացնել նաև գյուղատնտեսության հիմնական ճյուղերը 50 կուլտուրաների գծով. օրինակ, Հունգարիան մասնագիտացվում է եգիպտացորենի սերմերի, առվույտի, արևածաղկի, սիսեռի, ինչպես նաև բանջարեղենի, մրգեղենի, խաղողի ու ծխախոտի արտադրության գծով։ Բուլղարիան Չեխոսլովակիային կմատակարարի վարունգի, պոմիդորի, վաղահաս կարտոֆիլի սերմեր, իսկ Չեխոսլովակիան Բուլղարիային՝ ցեղային անասուններ, խոտաբույսերի սերմեր, զանազան անասնակեր։ ՍՍՌՄ-ը փոխօգնության երկրներին կմատակարարի գյուղատնտեսական մեքենաներ և հանքային պարարտանյութեր։ Սոցիալիստական համագործակցության երկրների գյուղատնտեսության զարգացումը, մասնագիտացումն ու կոոպերացումը մեծ ավանդ են այն ընդհանուր պայքարում, որ մղում են սոցիալիզմի երկրների աշխատավորները կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման համար։

Այժմ արագ թափով մասնագիտացվում և կոոպերացվում են սոցիալիստական համագործակցության երկրների ժողովրդական տնտեսության հիմնական ճյուղերը։ Արտադրության մասնագիտացման ընթացքում հաշվի են առնվում յուրաքանչյուր սոցիալիստական երկրի էկոնոմիկայի զարգացման առանձնահատկություններն ու տնտեսական շահավետությունը։ Մասնագիտացվում է հատկապես մեքենաշինությունը։ Պայմանավորվել են մասնագիտացնել ավելի քան 1.200 տիպի մեքենաների ու սարքավորումների արտադրությունը, առանցքակալների արտադրության՝ 90, գլանվածքների՝ 80, էներգետիկ սարքավորումների՝ 70, նավթավերամշակման սարքավորումների՝ 75, երկաթուղային վագոնների՝ 75 տոկոսը։

Տնտեսական փոխադարձ օգնության խորհրդի անդամ երկրների մշտական կոմիտեի երաշխավորությամբ նավթասարքավորումների արտադրությունը կենտրոնացվում է ՍՍՌՄ-ում, Ռումինիայում և Չեխոսլովակիայում, ցեմենտի գործարանների սարքավորումներինը՝ ԳԴՌ-ում։ Լեհաստանում մասնագիտացվում է շաքարի գործարանների բոլոր տիպերի, 12—21 տիպի վագոնների, 34—162 տիպի մետաղամշակման հաստոցների և դարբնոցամամլիչային սարքավորումների, 11—5 տիպի գյուղատնտեսական մեքենաների արտադրությունը։ Չեխոսլովակիայում անցյալ տարիներին մասնագիտացվել է մեքենաշինությունը, արտադրված մեքենաների $1/3$-ը արտահանվել է սոցիալիստական այլ

երկրներ։ Մասնագիտացման խորացումը և արտադրության կոորդինացումը
արտացոլվել են նաև Տնտեսական փոխօգնության խորհրդի անդամ երկրների
առևտրական կառուցվածքում։ Այսպես՝ 1956 թվականին Չեխոսլովակիան Լե-
հաստանից ներմուծել է 40 միլիոն կրոնի սարքավորումներ, իսկ 1962 թվա-
կանին՝ 11 անգամ ավելի։ Այդ նույն ժամանակամիջոցում Լեհաստանից ար-
տահանվող ապրանքների քանակը մեծացել է ավելի քան 22 անգամ։ Սարքա-
վորումների ապրանքաշրջանառությունը Հունգարիայում և Լեհաստանում 1963
թվականին, 1958 թվականի համեմատությամբ, ավելացել է 2,5, Հունգարիա-
յում և Ռումինիայում մինչև 1962 թվականը, 1952 թվականի համեմատու-
թյամբ, 2,6 անգամ։ 1965 թվականին փոխօգնության խորհրդի անդամ երկր-
ներում ավելի քան 2,3 անգամ կավելանա արտադրական կարևոր ապրանքնե-
րի սարքավորումների և մեքենաների փոխանակությունը։ Բուլղարիայում,
օրինակ, մեքենաների արտահանումը կավելանա 4, Ռումինիայում՝ մոտ 5, Լե-
հաստանում՝ ոչ պակաս 3 անգամ։

Համատեղ կառուցումներ կատարելու նպատակով զգալիորեն մեծացել է
Տնտեսական փոխօգնության խորհրդի անդամ երկրների կապիտալ ներդրում-
ների չափը։ Միայն 1966—1975 թվականներին Հունգարիայի և Չեխոսլովա-
կիայի ուժերով կառուցվող կենտրոնական Եվրոպայի խոշորագույն էլեկտրա-
տեխնիկական կառուցվածքի շինարարության համար նախատեսվում է 12,4
միլիարդ ֆորինտ կապիտալ ներդրում։ Փոխօգնության երկրների կապիտալ
ներդրումների հիմնական մասը կտրամադրվի այդ երկրների ժողովրդական
տնտեսության ժամանակակից ճյուղերի ստեղծմանը։

Տնտեսական փոխօգնության խորհրդի անդամ երկրների կապիտալ ներ-
դրումների ռացիոնալ օգտագործման, առևտրական ու տնտեսական կապերի
ամրապնդման և ընդլայնման գործում կարևոր նշանակություն ունի սոցիալիս-
տական համագործակցության երկրների միջազգային բանկը, որն սկսեց գոր-
ծել 1964 թվականի հունվարի 1-ից, Մոսկվայում։

Սոցիալիստական համագործակցության երկրների ժողովուրդներն իրենց
մարտական ավանգարդի՝ կոմունիստական և բանվորական պարտիների ղե-
կավարությամբ, նորանոր հաջողությունների են հասնում սոցիալիզմի և կո-
մունիզմի հաղթանակի համար մղվող պայքարում, իրենց ավանդը ներդնում
սոցիալիզմի համաշխարհային սիստեմի հետագա ամրապնդման ու հզորաց-
ման մեծ գործում։



Մ. ՄԻՆԱՍՅԱՆ

# ԱՇԽԱՏԱՎՈՐՆԵՐԻ ՍՏԵՂԾԱԳՈՐԾԱԿԱՆ ԱԿՏԻՎՈՒԹՅԱՆ ԱՃԻ ԿԱՐԵՎՈՐ ՆԱԽԱԴՐՅԱԼԸ

Արտադրության մեջ նորագույն տեխնիկայի ու գիտության նվաճումների
ներդրման շնորհիվ զգալի չափով փոխվել են աշխատավորների արտադրական
գործունեության բնույթն ու բովանդակությունը։ Բանվորների կուլտուր-տեխ-
նիկական մակարդակի բարձրացումը, պայմանավորված լինելով արտադրու-
թյան նյութատեխնիկական բազայի կատարելագործմամբ, իր հերթին վեր է
ածվում արտադրության հետագա զարգացման կարևորագույն ազդակի։

«Իսկական հարստությունը,— նշել է Մարքսը,— դա բոլոր ինդիվիդների
արտադրողական ուժի զարգացումն է» («Из неопубликованных рукописей
К. Маркса», «Большевик», № 11—12, 1939, էջ 67)։

Արտադրության նյութական տարրերի կատարելագործումը և այդ տարրե-
րը շարժման մեջ դնող աշխատուժի կուլտուր-տեխնիկական մակարդակի բարձ-
րացումը սերտ կապի մեջ գտնվող պրոցեսներ են։ Այսպիսով, արտադրողա-
կան ուժերի բազմակողմանի զարգացումը, որպես սոցիալիզմից կոմունիզմին
անցնելու հիմնական օրինաչափություններից մեկը, արտահայտվում է ո՛չ
միայն համապատասխան նյութատեխնիկական բազայի, այլև նոր աշխատա-
վորի ստեղծմամբ։ Բազմակողմանիորեն զարգացած բանվորի ձևավորումը
ստեղծվող կոմունիստական հասարակարգի արտադրողական ուժերի զարգաց-
ման գլխավոր գործոնն է։ Մարքսը անդրադառնալով այն հարցին, որ արտա-
դրողական ուժերի զարգացումը կապիտալիստական հասարակարգում անհրա-
ժեշտաբար ստիպում է տիրող դասակարգին բանվորներին տալ անհրաժեշտ
ընդհանուր տարրական գիտելիքներ, նշել է. «Եթե գործարանային օրենս-
դրությունը, որպես կապիտալիստից խլված առաջին խղճուկ զիջումը, գործա-
րանային աշխատանքի հետ միայն տարրական ուսումն է կապում, ապա ոչ
մի կասկած լինել չի կարող, որ բանվոր դասակարգի կողմից քաղաքական իշ-
խանության անխուսափելի նվաճումը տեխնոլոգիական, թե՛ թեորիական և թե
գործնական ուսուցման համար էլ պատշաճ տեղ կնվաճի բանվորական դըպ-
րոցներում» («Կապիտալ», հատ. 1, էջ 512)։

Սովետական բանվորի կուլտուր-տեխնիկական մակարդակի բարձրացման
գործում վճռական նշանակություն ունեն կոմունիստական պարտիայի կողմից
կիրառվող արմատական այն միջոցառումները, որոնց նպատակը բանվորա-
կան օրվա կրճատումն է։ Դեռևս իր ժամանակին Մարքսն ընդգծում էր այն

վճռական դերը, որն ունի ազատ ժամանակը աշխատողի վերափոխման համար։ «Ազատ ժամանակը,— գրում է Մարքսը,— որն ինչպես հանգստի, այնպես էլ ավելի վեհ գործունեության իրականացման ժամանակ է, այդ ժամանակն ունեցողին, իհարկե, վերածում է այլ սուբյեկտի, և որպես այլ սուբյեկտ էլ նա մտնում է արտադրության անմիջական պրոցես» («Теории прибавочной стоимости», т. III, 1936, էջ 197)։ Մի այլ առիթով Մարքսն ընդգծում է այն միտքը, որ բանվորական ժամանակի խնայողությունը «կարելի է դիտել որպես հիմնական կապիտալի արտադրություն. այդ հիմնական կապիտալը ինքը մարդն է» («Большевик», № 11—12, 1939, էջ 65)։

Յոթնամյակի անցած տարիներին բանվորական ժամանակի կրճատումը և, որ կարևորն է, ազատ ժամանակի խելացի, մտածված օգտագործումը էական դեր են կատարել աշխատավորների կուլտուր-տեխնիկական մակարդակի բարձրացման գործում։ Այստեղ, իհարկե, մեծ դեր ունեն սուբյեկտիվ հակումները, որովհետև ազատ ժամանակի ճիշտ և խելացի օգտագործումն էապես կախված է մարդու կուլտուրական և գիտակցական մակարդակից։

Կարելի է ազատ ժամանակ շատ ունենալ, սակայն անբավարար գիտակցականության պատճառով այն օգտագործել ոչ խելացի, աննպատակահարմար։ Սովետական բանվորների մի զգալի մասն արդեն ունի գիտակցականության այնպիսի մակարդակ, որ ազատ ժամանակը կարողանում է խելացի օգտագործել իր ընդունակությունների բազմակողմանի զարգացման համար։

Կոմունիզմի ծավալուն կառուցման ժամանակաշրջանի համար հատկանշական է այն, որ լուծվում է ոչ թե առանձին բանվորների, այլ նրանց մեծամասնության և ապա ողջ բանվոր դասակարգի կուլտուր-տեխնիկական մակարդակի բարձրացման խնդիրը։ Ներկայումս երկրի ժողովրդական տնտեսության մեջ աշխատում են բարձրագույն և միջնակարգ կրթությամբ 10 միլիոն մասնագետներ. բանվորների 40 տոկոսը և կոլտնտեսականների 23 տոկոսից ավելին ունեն բարձրագույն և միջնակարգ կրթություն։ ՍՍՌՄ-ում ամեն տարի նոր մասնագիտություններ են ստանում 2,5 միլիոն բանվորներ, մոտ 5 միլիոնը բարձրացնում է իր որակավորումը։

Ինչպես Սովետական Միության, այնպես էլ Հայաստանի արդյունաբերական ձեռնարկություններում բանվորների կուլտուր-տեխնիկական մակարդակի բարձրացման հիմնական ուղիներից մեկը հենց ձեռնարկություններում ինժեներա-տեխնիկական աշխատողների և առաջավոր բանվորների միջոցով առանց բացառության բոլոր բանվորների որակավորման, նրանց տեխնիկական ուսուցման կազմակերպումն է։ Դրա համար օգտագործվում են տեխնիկական ուսուցման խմբակները, սեմինարները, առաջավոր փորձի, առաջավոր մեթոդների ուսումնասիրման դպրոցները և այլն։ Երևանի Ջերժինսկու անվան հաստոցաշինական գործարանում, օրինակ, մեծ արդյունավետությամբ են աշխատում վարպետների հասարակական հիմունքներով գործող դպրոցները, որտեղ իրենց տեխնիկական գիտելիքներն են հարստացնում բազմաթիվ հաստոցաշինարարներ։

Բանվորների տեխնիկական կրթության կազմակերպման այս բոլոր ձևերի բնորոշ առանձնահատկություններից մեկն այն է, որ նպատակ է դրվում յուրաքանչյուր բանվորի մեջ առավել չափով զարգացնել ստեղծագործաբար մտածելու ընդունակություն, աշխատանքում ցուցաբերել ստեղծագործական ոգի։ Այդ գործում որոշիչ դեր են կատարում ինժեներա-տեխնիկական աշխատող-



ները։ Նրանց եռանդուն ջանքերի շնորհիվ աշխատավորների տեխնիկական կրթության կազմակերպումը հիանալի արդյունք է տալիս։ 1960—1963 թվականներին Հայաստանի ժողտնտխորհի արդյունաբերական ձեռնարկություններում իրենց որակավորումը բարձրացրել և նոր մասնագիտությունների են տիրապետել մոտ 130 հազար բանվոր։ Այդ թիվը գնալով աճում է. 1963 թվականին այն հասել էր մոտ 60 հազարի։ Բանվորների տեխնիկական ուսուցման լայն սիստեմ է ստեղծված Երևանի Վ. Ի. Լենինի անվան էլեկտրամեքենաշինական գործարանում։ Այստեղ ամեն տարի որակավորվում և վերավորակավորվում են մոտ 1000 բանվոր, որոնք մեծ հաջողությամբ աշխատում են արտադրության մեջ։ Կիրովի անվան գործարանում ամեն տարի մասնագետներ են դառնում և որակավորվում մոտ 800 բանվոր։

Բանվորների տեխնիկական կրթության կազմակերպման հետ կապված բոլոր ծախսերը կատարում է սովետական պետությունը։ Միայն Հայաստանի տնտեսական շրջանում ժողտնտխորհն այդ նպատակի համար տարեկան ծախսում է մոտ 600 հազար ռուբլի (1960—1963 թվականներին ծախսվել է երկու միլիոն ռուբլուց ավելի)։

Երիտասարդ բանվորների որակավորումը բարձրացնելու, նրանց տեխնիկական գիտելիքները հարստացնելու նպատակով ռեսպուբլիկայում լայնորեն տարածվել է **յուրաքանչյուր բանվորը ինժեներ է իր տեղամասում** շարժումը։ Այս շարժմանը մասնակցող ինժեներա-տեխնիկական աշխատողները այդ գործը կատարում են հասարակական հիմունքներով։

Երևանի Կիրովի անվան գործարանի առաջավոր բանվորների **սովորել ես՝ սովորեցրու ուրիշին** նշանաբանով նախաձեռնության շնորհիվ ռեսպուբլիկայի հազարավոր բանվորներ տիրապետեցին նոր մասնագիտությունների կամ բարձրացրին իրենց մասնագիտական որակավորումը։ Այդպիսի բանվորներից է Երևանի գործիքաշինական գործարանի անվանի փականագործ Գրիգոր Շաշկինյանը։ Գործարանում նա է կատարում փականագործի ամենաբարդ և ամենապատասխանատու աշխատանքները։ Ընկերներին մշտապես օգնելը, արժանի փոխարինողներ պատրաստելը նա համարում է իր ամենասուրբ պարտականություններից մեկը։ Եվ այժմ իրենց ուսուցիչ վարպետի հետ կողք-կողքի աշխատում են բազմաթիվ բարձրորակ փականագործներ։

Արդյունաբերական ձեռնարկությունները որակյալ բանվորական կադրերով ապահովելու գործում գնալով բարձրանում է պրոֆեսիոնալ-տեխնիկական ուսումնարանների և դպրոցների դերը։ Միայն 1963 թվականին Հայաստանի այս ուսումնարաններն ու դպրոցներն ավարտել են 4000 երիտասարդ բանվոր։ 1960—1963 թվականների ընթացքում ռեսպուբլիկայի այդ ուսումնարանների ցանցն ընդլայնվել է երեք, իսկ սովորողների թիվն ավելացել է չորս անգամ։ Հայաստանի պրոֆեսիոնալ տեխնիկական ուսումնարանները ժողովրդական տնտեսության համար պատրաստում են ավելի քան 110 մասնագիտության կադրեր։

Կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծումն անմիջականորեն կապված է արտադրության մեջ գիտական աշխատանքի կիրառման ծավալի ու մասշտաբների հետ։ «Խոշոր արդյունաբերության զարգացմանը զուգընթաց,— գրում է Մարքսը,— իսկական հարստության ստեղծումը ավելի պակաս չափով է կախված դառնում աշխատաժամանակից և ծախսված աշխատանքի քանակից..., այլ կախման մեջ է լինում գիտության ընդհանուր վիճակից և տեխ-

*նոլոգիայի զարգացման աստիճանից կամ արտադրության մեջ այդ գիտության կիրառումից»* («Большевик», *№ 11—12, 1939, էջ 61)։ Անհրաժեշտություն է դառնում արտադրական-տեխնիկական ուսուցման հետ մեկտեղ աշխատավորներին հաղորդակից դարձնել գիտության նվաճումներին։ Այդ նպատակով Հայաստանի արդյունաբերական ձեռնարկություններում բանվորների համար կազմակերպվում են հասարակական հիմունքներով գործող տեխնիկական առաջադիմության, տնտեսագիտական, քիմիական գիտելիքների համալսարաններ, տեսական ու գիտա-տեխնիկական կոնֆերանսներ ու սեմինարներ, տեխնիկայի ակումբներ։ Արդյունավետ աշխատանք է կատարում, օրինակ, Երևանի «Պոլիվինիլացետատ» գործարանի քիմիական գիտելիքների համալսարանը, որն ստեղծվեց ՍՄԿՊ Կենտկոմի դեկտեմբերյան պլենումից հետո (1963 թվական)։ Այստեղ հետաքրքիր պարապմունքներ են անցկացնում ինչպես արտադրության առաջավորները, այնպես էլ անվանի գիտնականները։*

*Աշխատավորների կուլտուր-տեխնիկական մակարդակի բարձրացման գործում մեծ նշանակություն ունի նրանց տնտեսագիտական ուսուցումը։ Միայն Երևանում 1959—1963 թվականներին տնտեսագիտություն են ուսումնասիրել մոտ 120 հազար բանվոր։*

*Բանվորների տնտեսագիտական գիտելիքների հարստացմանն է ծառայում պարտիական լուսավորության սիստեմը՝ քաղխմբակները, դպրոցները, տեսական սեմինարները, դասախոսությունները, զեկուցումները և այլն։ Տնտեսագիտական ուսուցումը կազմակերպվում է դիֆերենցված, արտադրության ճյուղերին համապատասխան։ Ավտոպահեստամասերի, ավտոդողերի, ալյումինի և պահածոների գործարաններում այդ գործի ուսումնասիրությունը ցույց է տալիս, որ տնտեսական գիտելիքները բանվորներին օգնում են ծանոթանալու տնտեսագիտության ընդհանուր պրոբլեմներին, խորամուխ լինելու արտադրության մեջ, պատշաճ ձևով վերլուծելու, համեմատելու, փնտրելու և գտնելու արտադրության զարգացման նոր ռեզերվներ, ընդօրինակելու առաջավոր փորձը, բարձրացնելու աշխատանքի արտադրողականությունը, խնայելու առարկայացված և կենդանի աշխատանքը։*

*Բանվորների կուլտուր-տեխնիկական մակարդակի բարձրացման ուղղությամբ կատարվող աշխատանքի շնորհիվ փոխվում է բանվորի էությունը, զարգանում են ստեղծագործական միտքը, գիտահետազոտական աշխատանքի ունակությունը. նա ձգտում է իր աշխատանքում ավելի ու ավելի օգտագործել գիտության նվաճումները և, մյուս կողմից, հանդես է բերում նախաձեռնություն և ինքնագործունեություն՝ արտադրության պրոցեսում կատարելու այնպիսի եզրակացություններ և ընդհանրացումներ, որոնք հարստացնում են տեխնիկան ու գիտությունը։*

*ՍՍՌՄ բանվոր դասակարգի կուլտուր-տեխնիկական աճի բնորոշ գծերից է բանվորների հանրակրթական մակարդակի սիստեմատիկ բարձրացումը։ Այդ նույնպես սերտորեն կապված է գիտա-տեխնիկական բուռն պրոգրեսի հետ։ Նոր տեխնիկան և աշխատավորների ընդհանուր կրթական մակարդակը սերտորեն կապված են և փոխադարձաբար ազդում են միմյանց վրա։ Արտադրության կոմպլեքսային մեքենայացումն ու ավտոմատացումը բանվորին ազատում են արտադրության նեղ պրոֆեսիոնալ ստանդարտներին ենթարկվելուց և անհրաժեշտություն են դարձնում հանրակրթական, մասնավորապես, պոլիտեխնիկական կրթության կազմակերպումը։ Առանց հանրակրթական բավարար*



*պատրաստականության բանվորը չի կարող աշխատանքում հանդես բերել ստեղծագործական միտք և ինքնագործունեություն։*

*Սովետական իշխանության տարիներին մեծ թռիչք է կատարվել ֆիզիկական աշխատանքի մարդկանց հանրակրթական մակարդակի բարձրացման ուղղությամբ։ Այդ կարելի է ցույց տալ հենց մեր ռեսպուբլիկայի օրինակով։ Եթե 1913 թվականին Հայաստանում չկային միջնակարգ կրթություն ունեցող բանվորներ, ապա 1964 թվականի դեկտեմբերի տվյալներով միայն ժողտնտխորհի էլեկտրատեխնիկական և ռադիոէլեկտրոնիկայի ու սարքաշինության արդյունաբերության վարչությունների Երևանի ձեռնարկություններում աշխատում էին 8919 միջնակարգ կրթությամբ բանվորներ, որը կազմում է այդ ձեռնարկություններում աշխատող բանվորների 47,4 տոկոսը։ Պարտիայի նոր ծրագրով նախատեսվում է առաջիկա քսան տարում հասարակության հիմնական մասսային տալ լրիվ միջնակարգ, միջնակարգ-մասնագիտական ու բարձրագույն կրթություն։ Ծրագիրը հաջողությամբ իրականացվում է։ Եթե 1939 թվականին ՍՍՌՄ-ում միայն մեկ ու կես միլիոն մարդ ունեին բարձրագույն և միջնակարգ կրթություն, ապա միայն 1964 թվականին մեր բուհերն ու տեխնիկումները տվեցին մեկ միլիոն մասնագետ։ Սովետական հասարակարգի բարգավաճման մասին է խոսում հետևյալ համեմատությունը։* «Санкт-Петербургские ведомости»*-ն 1864 թվականի մայիսին հաղորդում է, որ 1863 թվականի նոյեմբերի 20-ին Ռուսաստանի բարձրագույն ուսումնական հաստատություններում հաշվվում են 4059 ուսանող և 842 ազատ ունկնդիր։ Իսկ* Պրավդան *ուղիղ հարյուր տարի հետո՝ 1964 թ. մայիսին, հաղորդում է, որ 1963 թվականին մեր երկրի բուհերը տվել են 364 հազար շրջանավարտ։ Միայն Հայաստանի բուհերում 1964 թվականին սովորում էին մոտ 30 հազար ուսանող։*

*Սովետական Միությունում ժողովրդական կրթության սիստեմում պարտադիր ուսուցման օրենքի հետևողական կիրառումը, պոլիտեխնիկական կրթության կազմակերպումը, բարձրագույն և միջնակարգ դպրոցների գործունեության բարելավման ուղղությամբ պարտիայի և կառավարության վերջին մի շարք միջոցառումների իրականացումը խոր ազդեցություն են թողել մեր երկրի բանվոր դասակարգի վրա։ Դրա ապացույցն է Հայաստանի արդյունաբերական ձեռնարկությունների բանվորների կազմում կատարված փոփոխությունը։ Մասնավորապես վերջին տարիներին հանրակրթական դպրոցներն ավարտած երիտասարդների մի հոծ մասսա աշխատանքի է անցնում գործարաններում ու ֆաբրիկաներում և դրանով իսկ փոփոխում բանվորների կազմը։ Ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ ռեսպուբլիկայի դպրոցների շրջանավարտների՝ միջին հաշվով 50 տոկոսը, որպես բանվոր, աշխատանքի է անցնում արդյունաբերական ձեռնարկություններում։ Այստեղ հատկանշական է նաև այն, որ երիտասարդությունն ավելի շատ ձգտում է աշխատել այն ձեռնարկություններում, որոնք ունեն մեքենայացման ու ավտոմատացման բարձր մակարդակ, արտադրության բարձր կուլտուրա։ Այստեղ իրենց գիտելիքների օգտագործման համար համապատասխան բնագավառ գտնելուց բացի, նրանք ստանում են նաև այնպիսի հնարավորություններ, տեխնիկա, որոնք նպաստում են նրանց պրակտիկ գիտելիքների, կենսափորձի հարստացմանը, որը հետագայում թույլ է տալիս առանց արտադրությունից կտրվելու ուսումը շարունակել բարձրագույն ուսումնական հաստատություններում։ Դրա ապացույցն*

այն է, որ Հայաստանում միջնակարգ դպրոցների շրջանավարտներից շատ քչերն են աշխատանքի անցնում, օրինակ, կահույքի արտադրության ձեռնարկություններում, որտեղ խիստ դանդաղ է ընթանում կոմպլեքսային մեքենայացումը և խոսք անգամ չկա արտադրական պրոցեսների ավտոմատացման մասին, և ավելի մեծ հոսք կա, օրինակ, դեպի էլեկտրատեխնիկական և սարքաշինական արդյունաբերության ձեռնարկությունները, ուր բարձր մակարդակի են հասել կոմպլեքսային մեքենայացումն ու ավտոմատացումը։

Մեծ տարբերություններ կան Հայաստանի ժողտնտխորհի անտառային արդյունաբերության և էլեկտրատեխնիկական արդյունաբերության Երևանի ձեռնարկությունների բանվորների կազմում։ Այսպես, ժողտնտխորհի անտառային արդյունաբերության ձեռնարկությունների բանվորների միայն 18,6 տոկոսն ունի միջնակարգ կրթություն, իսկ էլեկտրատեխնիկական արդյունաբերության ձեռնարկություններում՝ 43,6 տոկոսը (1964 թվականի նոյեմբեր ամսվա դրությամբ)։ Համեմատենք, թեկուզ, Երևանի երկու արդյունաբերական ձեռնարկությունների՝ Մյասնիկյանի անվան կահույքի ֆաբրիկայի և էլեկտրաճշգրիտ չափիչ սարքերի գործարանի բանվորների կազմը։ Եթե կահույքի ֆաբրիկայի բանվորների միայն 16,9 տոկոսն ունի միջնակարգ կրթություն, ապա էլեկտրաճշգրիտ չափիչ սարքերի գործարանում այն անցնում է 52 տոկոսից։

Արտադրական աշխատանքը կրթության հետ զուգակցելուն մեծ կարևորություն էր տալիս Լենինը։ Այդ կապակցությամբ նա գրել է. «...Չի կարելի պատկերացնել ապագա հասարակության իդեալը, առանց ուսուցումը միացնելու երիտասարդ սերնդի արտադրողական աշխատանքի հետ. ո՛չ ուսուցումն ու կրթությունն առանց արտադրողական աշխատանքի, ո՛չ արտադրողական աշխատանքն առանց զուգահեռ ուսուցման ու կրթության չեն կարող դրվել այն բարձրության վրա, որ պահանջում են տեխնիկայի արդի մակարդակը և գիտական իմացության վիճակը» (Երկեր, հ. 2, էջ 602—603)։

Բանվորների հանրակրթական մակարդակի բարձրացման գործում վճռական դեր է կատարում դպրոցներում, տեխնիկումներում և բարձրագույն ուսումնական հաստատություններում առանց արտադրությունից կտրվելու ուսումը։ Եթե 1958—1959 ուսումնական տարում այդպես սովորողների թիվը ռեսպուբլիկայի միջնակարգ դպրոցներում, միջնակարգ մասնագիտական և բարձրագույն ուսումնական հաստատություններում եղել է 23.231, ապա 1963—1964 ուսումնական տարում այն հասել է 42.067-ի։ Ռեսպուբլիկայում քիչ չեն արդյունաբերական այն ձեռնարկությունները, ուր հարյուրավոր բանվորներ առանց արտադրությունից կտրվելու շարունակում են իրենց կրթությունը։

Կոմունիզմի ծավալուն կառուցման ժամանակաշրջանում հասարակությունը ձգտում է յուրաքանչյուր մարդու տալ առավել բարձր կրթություն։ Եվ, պատահական չէ, որ առանց արտադրությունից կտրվելու սովորողների թիվը ամբողջ Միության մասշտաբով 1963 թվականին հասավ 7 միլիոնի։ Սա սոցիալական մեծ առաջադիմություն է։

Առանց արտադրությունից կտրվելու սովորող բանվորների մեծ մասը ռեսպուբլիկայի արդյունաբերության այն ճյուղերի բանվորներն են, որոնց գործարաններն ու ֆաբրիկաներն ունեն տեխնիկական բարձր հագեցվածություն, ուր հետևողականորեն իրականացվում են արտադրական պրոցեսների կոմպլեքսային մեքենայացումն ու ավտոմատացումը։ Գիտատեխնիկական



առաջադիմությունը բանվորներին մղում է բարձրացնելու իրենց կրթական մակարդակը և այդ շատերի համար դառնում է ներքին պահանջ։

Բանվորների կուլտուր-տեխնիկական մակարդակի աճը սերտորեն կապված է նրանց ընդհանուր կուլտուրայի բարձրացման, բազմակողմանի զարգացման հետ։ Մեր ժամանակաշրջանում, երբ գիտության ու տեխնիկայի բուռն առաջընթացը հանգեցնում է գործարան-ավտոմատների ստեղծմանը, բանվորների կուլտուր-տեխնիկական մակարդակի բարձրացումը օրակարգի հարց է դառնում ոչ միայն որպես արտադրության հետագա բարելավման պայման, այլև որպես սոցիալական պրոբլեմ։ Կիբեռնետիկայի հիմնադիրներից մեկը՝ ամերիկյան գիտնական Նորբերտ Վիներն իր կենսագրական բնույթի Ես՝ մաթեմատիկոս գրքում, խոսելով գործարան-ավտոմատների ստեղծման գործում իր ունեցած դերի մասին, նշում է, որ այդ տիպի հիմնարկների առաջանալն անհրաժեշտաբար հանգեցրեց սոցիալական նոր պրոբլեմների։ Կապիտալիզմի պայմաններում գործարան-ավտոմատների ստեղծումը առաջ է քաշում բանվորների զբաղվածության, տարբեր արտադրական հմտություն ունեցող բանվորական ուժի վերաբաշխման և այլ հարցեր։ Վիները նկատում է հետևյալ հակասությունը. գործարան-ավտոմատները, մի կողմից՝ սպառնում են ամբողջովին փոխարինել այն բանվորներին, որոնք օգտագործվում են որպես մեխանիկական կցորդներ, իսկ մյուս կողմից՝ պահանջում են պրոֆեսիոնալ բարձր մակարդակի աշխատավորներ։ Նա տագնապով նշում է, որ այդ վիճակը կարող է հանգեցնել այնպիսի գործազրկության, որը երբևիցե հայտնի չի եղել մարդկությանը (տե՛ս Норберт Винер. Я математик. М., 1964, էջ 284, 285, 299)։

Միանգամայն այլ սոցիալական հետևանքի է հանգեցնում գործարան-ավտոմատների ստեղծումը սոցիալիզմի, կոմունիստական հասարակության կառուցման պայմաններում։ Մարդը, ազատվելով մեխանիկական միապաղաղ գործողություններից, պլանաչափ զարգացող արտադրության պրոցեսում ամենալայն հնարավորություններն է ստանում իր աշխատանքային ստեղծագործական ակտիվությունը ցուցաբերելու, հաստատ համոզված լինելով, որ այն ծառայում է իր շահերին, կոմունիզմ կառուցող հասարակության շահերին։

Սոցիալիստական արտադրական հարաբերությունները, որպես շահագործումից ազատ մարդկանց համագործակցության ու փոխադարձ օգնության հարաբերություններ, գիտության, տեխնիկայի ու կուլտուրայի բուռն ծաղկումը, բանվոր դասակարգի նյութական բարեկեցության անընդհատ աճը — այս ամենը մեր երկրում օբյեկտիվ նախադրյալներ են ստեղծում բանվորի բազմակողմանի, ներդաշնակ զարգացման համար, կրթության և դաստիարակության այնպիսի սիստեմի ստեղծման համար, որը նպաստում է հարուստ հոգևոր աշխարհի տեր բանվորի ձևավորմանը։ «Կոմունիզմին անցնելու ժամանակաշրջանում,— ասված է մեր պարտիայի ծրագրում,— աճում են հոգևոր հարստություն, բարոյական անաղարտություն և ֆիզիկական կատարելություն ներդաշնակորեն մարմնավորող նոր մարդ դաստիարակելու հնարավորությունները»։ Սովետական բանվորների համար ներքին պահանջ է արդի կուլտուրայի բարձունքները նվաճելը։ Դեռևս Մարքսը Կապիտալում ցույց էր տալիս, որ «Խոշոր արդյունաբերությունն ինքն իր կատաստրոֆներով կյանքի ու մահվան հարց է դարձնում աշխատանքի փոփոխության, ուստի և բանվորների ըստ կարելույն ավելի մեծ բազմակողմանիության ճանաչումը՝ որպես հասա-

րական արտադրության ընդհանուր օրենք» (Կապիտալ, հ. 1, էջ 511—512)։

Անհատի բազմակողմանի զարգացման հիմքը աշխատանքն է։ Այն միշտ եղել է և կլինի մարդու գոյության ու զարգացման աղբյուրը։ Կոմունիստական հասարակարգի ծավալուն կառուցման ժամանակաշրջանում արտադրության մեջ բանվորի բազմակողմանի զարգացումը, առաջին հերթին, արտահայտվում է նրանում, որ նա ի հայտ է բերում մի քանի մասնագիտություններով աշխատելու ունակություն։ Այդ դարձել է արտադրական օբյեկտիվ անհրաժեշտություն, որը հնարավորություն է ընձեռում բանվորին՝ ստեղծագործական մեծ կարողություններ ցուցաբերելու։ Մարքսիզմ-լենինիզմի կլասիկներն իրավացիորեն ցույց են տվել, որ կոմունիզմի ժամանակ կվերանա մարդու ցմահ գամվածությունը աշխատանքի միևնույն տեսակին կամ մասնագիտությանը, սահմանափակումներ չեն լինի մասնագիտություններ ընտրելու գործում։

Կոմունիզմի ծավալուն կառուցման ժամանակաշրջանում օբյեկտիվ և սուբյեկտիվ պայմաններ են ստեղծվում մի քանի մասնագիտությունների տիրապետող բարձրորակ բանվորական կադրերի պատրաստման համար։ Մեր ռեսպուբլիկայում քիչ չեն արդյունաբերական այն ճյուղերն ու ձեռնարկությունները, ուր աշխատում են հազարավոր բանվորներ, որոնք տիրապետում են մեկից ավելի մասնագիտության։ Ժողտնտխորհի ռադիո-էլեկտրոնիկայի և սարքաշինության արդյունաբերության վարչության Երևանի ձեռնարկություններում, օրինակ, այդ բանվորների թիվը 1964 թվականի նոյեմբերին կազմում էր նույն վարչության Երևանի ձեռնարկությունների բանվորների թվի 36,5 տոկոսը։ Այս ուղղությամբ շոշափելի արդյունքներ կան Երևանի ժամացույցի, հիդրոհաղորդակ, էլեկտրատեխնիկական գործարաններում և բազմաթիվ այլ ձեռնարկություններում։

Կոմունիզմի ծավալուն կառուցման ժամանակաշրջանում տեխնիկայի զարգացման և սոցիալական պայմանների փոփոխման հետ մեկտեղ հեշտանում է աշխատանքի մի տեսակից մյուսին անցնելը, ինչպես նաև ֆիզիկական աշխատանքից մտավորին անցնելը։ Ֆիզիկական աշխատանքը իր սոցիալական բովանդակությամբ կոմունիզմի կառուցման պայմաններում այլ բնույթ է ձեռք բերում։

Մեկից ավելի մասնագիտությունների տիրապետելը տնտեսական մեծ արդյունք է տալիս։ Ռեսպուբլիկայի շատ ձեռնարկություններում, ցեխերում և բրիգադաներում հասնում են աշխատողների լրիվ փոխարինելիության, ձեռք է բերվում աշխատանքի բարձր արտադրողականություն, զգալիորեն բարելավվում է արտադրանքի որակը։

Մասնագիտությունների համատեղումը բանվորի գործունեության մեջ մտցնում է նաև սոցիալական էական փոփոխություն. նա ազատվում է միապաղաղ, միատեսակ աշխատանքից, հնարավորություն է ստեղծվում գործի մեջ ավելի ստեղծագործական տարրեր մուծելու, այն հաճելի և բազմակողմանի դարձնելու։ Աշխատանքի հեշտացումը, չափից ավելի նեղ մասնագիտացման վերացումը, ազատորեն մասնագիտություն ընտրելու հնարավորության ընդլայնումը պատշաճ պայմաններ են ստեղծում, որպեսզի աշխատանքը բանվորին հոգեկան բավականություն պատճառի։

Սակայն, պետք է ասել, որ սովետական բանվորի բազմակողմանի զարգացման հասկացողությունը չի ընդգրկում միայն արտադրության ոլորտում հարակից մասնագիտությունների տիրապետումը. այդ նշանակում է ունենալ



նաև հոգևոր այլ հարստություններ՝ մարքսիստական-լենինյան աշխարհայացք,
հարուստ հուզաշխարհ, բարոյական բարձր հատկանիշներ, զարգացած
ճաշակ՝ արվեստի և գրականության բնագավառներում, հասարակական գոր-
ծունեության համար անհրաժեշտ գիտելիքներ։ Պարտիայի ծրագիրը պարտիա-
կան կազմակերպությունների առջև խնդիր է դնում անդուլ հոգալ «...յուրա-
քանչյուր մարդու անձնական ընդունակությունների առավել լրիվ դրսևորման
համար բոլոր պայմանների ստեղծման, բոլոր աշխատավորների էսթետիկա-
կան դաստիարակության, ժողովրդի մեջ գեղագիտական բարձր ճաշակի և
կուլտուրական ունակությունների ձևավորման մասին»։ Այդ գործում կարևոր
դեր են կատարում ինչպես ամբողջ Սովետական Միության մեջ, այնպես էլ
Հայկական ռեսպուբլիկայում ստեղծված կուլտուրայի և արվեստի հարյուրա-
վոր համալսարանները։

Բանվոր դասակարգի կուլտուրական կյանքի բազմակողմանի զարգացման
կարևորագույն պայմաններից մեկը գեղարվեստական ինքնագործունեությունն
է։ Արդյունաբերական ձեռնարկությունների մեծ մասում ստեղծված են ժողո-
վրդական թատրոններ, երգչախմբեր, ժողովրդական գործիքների, պարի ան-
սամբլներ, էստրադային, սիմֆոնիկ նվագախմբեր և այլն։ Գեղարվեստական
ինքնագործունեությունն ընդգրկել է նույնիսկ կինոարվեստը։ Այժմ Հայաստա-
նի գեղարվեստական ինքնագործունեության խմբերում ընդգրկված են 30 հա-
զարից ավելի մարդ։ Գեղարվեստական ինքնագործունեությունը մեծապես
նպաստում է աշխատավորների էսթետիկական հայացքների ձևավորմանը,
նրանց կուլտուրական մտահորիզոնի ընդլայնմանը, բարձրացնում է մարդ-
կանց կենսունակությունը, ազնվացնում ու վեհացնում է նրանց զգացմունք-
ներն ու ցանկությունները, ստեղծագործական գործունեության մղում թե՛ աշ-
խատանքում և թե հասարակական կյանքում։ Եվ, պատահական չէ, որ բազ-
մակողմանի զարգացած, արվեստն ու գրականությունը սիրող բանվորները
առաջավորներ են։ Ուրախալին այն է, որ նրանք անհատներ չեն, այլ հազար-
ներ։

Մեր բանվոր դասակարգի կուլտուր-տեխնիկական մակարդակի բարձրա-
ցումը բազմապատկում է նրա ստեղծագործական ուժերն ու հնարավորություն-
ները, նախաձեռնությունն ու ինքնագործունեությունը, քաղաքական և աշխա-
տանքային ակտիվությունը։

Իրականություն է դառնում Լենինի կողմից կատարված այն հանճա-
րեղ կանխատեսությունը, որ կոմունիստական հասարակարգի կառուցման
պրոցեսում աստիճանաբար կիրականացվի մարդկանց միջև աշխատանքի բա-
ժանման վերացումը, բազմակողմանի զարգացած ու բազմակողմանի պատ-
րաստված մարդկանց դաստիարակությունը, ուսուցումն ու պատրաստումը
այնպիսի մարդկանց, որոնք կարողանում են ամեն ինչ անել։



# ԴԵՊԻ ՏԵՂԱԿԱՆ ՍՈՎԵՏՆԵՐԻ ԸՆՏՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

## ՍՈՎԵՏՆԵՐԸ ԵՎ ԱՇԽԱՏԱՎՈՐՆԵՐԻ ԿԵՆՑԱՂԱՅԻՆ ՍՊԱՍԱՐԿՈՒՄԸ

*Կոմունիստական շինարարության նպատակն է՝ հասարակական արտադրությունը հասցնել այնպիսի մակարդակի, որը հնարավորություն տա լրիվին բավարարելու հասարակության բոլոր անդամների նյութական ու հոգևոր պահանջմունքները։ Այդ պահանջմունքների բավարարումը սերտորեն կապված է աշխատավորության կենցաղային սպասարկումը կազմակերպելու հետ։ Ահա թե ինչու ՍՄԿՊ ծրագրում կենցաղի կոմունիստական ձևերի հաստատումը դիտվում է որպես կոմունիզմի կառուցման համար մղվող պայքարի անհրաժեշտ պայման։*

*Կենցաղի կոմունիստական ձևերը հաստատվում են կոմունիզմի կառուցման և, ամենից առաջ, նրա նյութատեխնիկական բազայի ստեղծման պրոցեսում։ Աշխատավորության կենցաղային սպասարկման մակարդակն, իր հերթին, նշանակալից չափով պայմանավորում է կոմունիզմի կառուցման խնդիրների հաջող լուծումը։ Մի ժամանակ այդ համարում էին «երկրորդական» գործ։ Բայց հենց կյանքը ցույց տվեց, որ աշխատանքի արտադրողականությունը մեծ չափով կախված է այն բանից, թե որքանով է կարգավորված մարդու կենցաղը, ինչպիսին է սպասարկման կուլտուրան։*

*Աշխատավորության կենցաղային սպասարկումը, ինչպես և կոմունիստական շինարարության մյուս բոլոր խնդիրները կենսագործում են պետական օրգաններն ու հասարակական կազմակերպությունները։ Բնակչության կենցաղային սպասարկման բնագավառում առանձնապես մեծ է աշխատավորների դեպուտատների սովետների դերը։ Սովետներն ամենամասսայական, համապարփակ ներկայացուցչական օրգաններն են և իրենց մեջ զուգակցում են պետական ու հասարակական կազմակերպությունների գծեր։ Սովետների այդ յուրահատկության շնորհիվ հնարավոր է դառնում ավելի լավ օգտագործել պետական միջոցները և զարգացնել աշխատավորության ինքնագործունեությունը կենցաղի հարցերի լուծման գործում։*

*Բայց այդ հնարավորությունները վերջին ժամանակաշրջանում լրիվ չեն օգտագործվել՝ սովետներն, այսպես կոչված, արտադրական սկզբունքով բաժանելու հետևանքով, որը և հանգեցրեց տնտեսական և կուլտուրական շինարարության ղեկավարման գործում նրանց դերի իջեցմանը։ Սովետները, որպես լիիրավ ներկայացուցչական օրգաններ, պետք է դառնան գյուղերի, շրջանների, քաղաքների, մարդկանց տնտեսական ու կուլտուր-կենցաղային ողջ կյանքի անմիջական կազմակերպիչներ։ Իհարկե, տեղական սովետներն իրենց վրա չեն կարող վերցնել ժողովրդական տնտեսության տարբեր բնագավառների զարգացման տեխնիկական ղեկավարությունը։ Բայց նրանք չեն կարող անտարբեր մնալ արտադրության պլանավորման, պլանների կատարման կազմակերպման և, հատկապես, բանվորների, ծառայողների և կոլտնտեսականների կենցաղային սպասարկման նկատմամբ։*

*ՍՄԿՊ Կենտկոմի նոյեմբերյան (1964 թ.) պլենումից հետո սովետների համար ստեղծվել են առավել նպաստավոր պայմաններ, իրենց ֆունկցիաները հաջողությամբ իրականացնելու համար։*

*Ինչպես և նախկինում, տեղական սովետների կարևորագույն ֆունկցիան, անմիջական պարտականությունը ամենօրյա հոգատարությունն է ողջ բնակչության կենցաղային սպասարկման նկատմամբ։*

*Որո՞նք են սովետների կոնկրետ խնդիրները տվյալ բնագավառում։ Հայտնի է, որ աշխատավորության կենցաղի լավագույն կազմակերպման կարևոր* ***պայմանը բնակարանային*** *հարցի լուծումն է։ Պարտիայի ծրագրում ասված է, որ երկրորդ տասնամյակի վերջում յուրաքանչյուր ընտանիք կունենա բարեկարգ բնակարան։ Մեր երկրում տարեցտարի ավելանում է բնակարանային շինարարությունը։ Միայն վերջին վեց տարում նոր բնակարաններ են ստացել, կամ իրենց բնակարանային պայմանները բարելավել են Միության բնակչության մոտ մեկ երրորդը։ Սակայն, չնայած բնակարանային շինարարության ծավալմանը, դեռևս զգացվում է բարեկարգ բնակարանների պակաս։ Ուստի, բնակարանային պրոբլեմի լուծումը պետական օրգանների և հասարակական կազմակերպությունների հիմնական խնդիրներից մեկն է։*

*Դրա համար էլ պարտիան ու կառավարությունը հսկայական միջոցներ են տրամադրում բնակարանային պրոբլեմի լուծմանը։ Նախատեսված է 1965 թվականին կառուցել 84 միլիոն քառակուսի մետր բնակելի տարածություն, կամ 10 միլիոն քառակուսի մետրով ավելի, քան անցյալ տարի։ Այս տարի մեր ռեսպուբլիկայում կկառուցվի ավելի քան 800 հազար քառակուսի մետր բնակելի տարածություն։*

*Բնակարանային պրոբլեմի լուծման գործում մեծ է աշխատավորների դեպուտատների սովետների դերը՝ բնակարանային շինարարության պլանները մշակելուց և ընդունելուց սկսած, վերջացրած բնակարանների բաշխմամբ։ Մինչև վերջերս սովետներից բացի բնակարանային շինարարությամբ զբաղվում էին շատ այլ կազմակերպություններ։ Դա մասնատում էր ուժերն ու միջոցները և զգալիորեն իջեցնում բնակարանային շինարարության տեմպերը։ Պրակտիկան ցույց տվեց, որ ինչպես արդյունաբերական, այնպես էլ բնակարանային շինարարությունը լավագույն ձևով կազմակերպելու համար անհրաժեշտ է ստեղծել ինքնուրույն շինարարական կազմակերպություններ։ Ելնելով դրանից, այժմ ստեղծված են շինարարության հատուկ վարչություններ, որոնք ղեկավարում են նոր ձեռնարկությունների, բնակելի շենքերի և կուլտուր-կենցաղային հիմնարկների շինարարությունը։ Ընդ որում, բնակարանային և կուլտուր-կենցաղային շինարարության հիմնական պատվիրատուն աշխատավորների դեպուտատների սովետներն են։ Բնակարանային շինարարության կազմակերպման նոր ձևերի պայմաններում սովետներն ավելի օպերատիվ են լուծում կազմակերպչական հարցերը, կարողանում են ավելի արդյունավետ օգ-*

տագործել նյութական ու տեխնիկական միջոցները, կրճատվում են շինարարության ժամկետները։

Բնակարանային պրոբլեմի արագ լուծման կարևոր միջոցներից մեկը բնակելի տների կոոպերատիվ շինարարության կազմակերպումն է։ Այս գործը ևս գտնվում է տեղական սովետների իրավասության տակ։ «Անհատական և կոոպերատիվ բնակարանային շինարարության մասին» ՍՄԿՊ Կենտկոմի և ՍՍՌՄ Մինիստրների սովետի 1962 թվականի օգոստոսի 6-ի որոշումը պարտավորեցնում է աշխատավորների դեպուտատների սովետներին՝ օգնել բնակարանային-շինարարական կոոպերատիվների ստեղծմանը, այդ շենքերը նախատեսել շինարարական-մոնտաժային աշխատանքների պլաններում, ժամանակին հողամասեր հատկացնել, ապահովել անհրաժեշտ շինանյութերով, վերահսկել շինարարության պլանների ժամանակին կատարմանը և այլն։ Բայց պետք է խոստովանել, որ մեր ռեսպուբլիկայի տեղական սովետներն անհրաժեշտ ուշադրություն չեն նվիրում այդ կարևոր հարցին։ Նույնիսկ Երևան քաղաքում 1963 թվականին կոոպերատիվ հիմունքներով ոչ մի շենք չի կառուցվել։ Կենտրոնական մամուլում հաճախ է գրվել մեր ռեսպուբլիկայում կոոպերատիվ բնակարանային շինարարության անբավարար կազմակերպման մասին, բայց դրությունը դանդաղ է բարելավվում։ Ի միջի այլոց շրջանային և քաղաքային գործադիր կոմիտեներում հավաքված են քաղաքացիների հարյուրավոր դիմումներ, որոնք ցանկություն են հայտնել իրենց միջոցներով լուծել բնակարանային հարցը։ ՍՍՌՄ Մինիստրների սովետի 1964 թ. նոյեմբերի «Բնակարանային կոոպերատիվ շինարարության հետագա զարգացման մասին» որոշման մեջ նշվում է, որ կոոպերատիվ բնակարանային շինարարության և օժանդակ հողամասերի հատկացման կազմակերպման հարցը տեղական սովետների կողմից պետք է վճռվի մեկ ամսվա ընթացքում։

Մեր երկրում բնակարանային շինարարությանն ուղեկցում է քաղաքների և բնակավայրերի ճարտարապետական տեսքի բարելավումը։ Այդ նպատակով անհրաժեշտ է լինում քանդել բազմաթիվ միհարկանի, երկհարկանի, երբեմն նաև բազմահարկ շենքեր։ Սակայն այս բնագավառում տեղական սովետները երբեմն թույլ են տալիս ծայրահեղություններ։ Այսպես, օրինակ, ներկայումս նախատեսված է շենքեր ու ամբողջ փողոցներ քանդել Նոր-Արեշում, Քանաքեռի ու քաղաքի այլ ծայրամասերում։ Բայց ավելի լավ չէ՞ր լինի քանդել միայն հին, կավաշեն տնակները քաղաքի կենտրոնում, որոնք փչացնում են նրա տեսքը։ Չէ որ արդի քաղաքաշինությունը չի բացառում նաև առանձնատների կառուցումը քաղաքների ծայրամասերում, օրինակ, Նոր-Արեշում, Քանաքեռում, Նորքում և այլուր։ Թերևս այդ շրջաններում կարելի է կառուցել միհարկանի շենքեր կամ եղած շենքերի վրա կառուցել նոր հարկեր, բայց քանդել ոչ շատ շուտ կառուցված շենքերը, հատկապես այժմ, երբ բնակարանային պահանջը մեծ է, նպատակահարմար չէ։

Բնակարանային պրոբլեմի լուծման գործում կարևոր նշանակություն ունի բնակարանային ֆոնդի պահպանումը, որը նույնպես մտնում է սովետների պարտականության մեջ։ Նրանք են վերահսկում շենքերը, անկախ դրանց գերատեսչական պատկանելությունից։ Սակայն այս հարցին ևս տեղական սովետները դեռ պատշաճ ուշադրություն չեն նվիրում։ Շատ շենքեր չեն նորոգվում, իսկ կապիտալ նորոգման ժամկետները ձգձգվում են անթույլատրելի կերպով։ Սպանդարյանի շրջսովետի պլաններում, օրինակ, նախատեսված էր



1964 թ. կապիտալ վերանորոգման ենթարկել 52 շենք։ Փաստորեն վերանորոգվել է կեսից էլ պակաս, 22 շենքերում վերանորոգումը դեռ նոր է սկսվել, իսկ 8-ում՝ դեռ չի էլ սկսվել։ Այդ նույն ժամանակ վերանորոգման գրասենյակը զեկուցել է բնակարանային վերանորոգման համախառն պլանի գերակատարման մասին։ Արտառոց է, բայց փաստ է։

Բնակարանային ֆոնդի պահպանման նկատմամբ անպատասխանատու վերաբերմունքը որոշ աշխատողներ ճգնում են բացատրել միջոցների պակասությամբ և այլ անհիմն պատճառներով։ Մինչդեռ շատ դեպքերում այդ նպատակով բաց թողնված միջոցները լրիվ չեն օգտագործվում կամ ծախսվում են այլ նպատակներով։ Սովետների աշխատանքի փորձը ցույց է տալիս, որ բնակարանային ֆոնդը պատշաճ ձևով կարելի է պահպանել հասարակայնության ուժերով։ Օրինակ, Մոսկվայում բնակարանային ֆոնդի պահպանման ու նորոգման աշխատանքները կատարում են վերանորոգման ժողովրդական խմբերը։ Դրանք ստեղծվել են մայրաքաղաքի լենինգրադյան շրջանում և ապա տարածվել քաղաքի մյուս շրջաններում։ Դրանց թիվն այժմ հասնում է 700-ի, ունեն շինարարական, սանտեխնիկական, էլեկտրանորոգման և տասնյակ այլ բրիգադաներ։ Դրանք զգալի օգնություն են ցույց տալիս բնակարանային շահագործման գրասենյակներին՝ բնակելի շենքերի հսկողությունն ապահովելու և պրոֆիլակտիկ աշխատանքներ կատարելու գործում, նորոգում են սանտեխնիկական հարմարանքները, ջրորդանները, դռները, լուսամուտները և այլն։ Կենցաղային սպասարկման այդ ձևը մեծ չափով օգնում է բնակչությանը և խնայում զգալի միջոցներ։ Մոսկվայի նորոգման խմբերի աշխատանքի փորձը լայնորեն տարածվում է ամբողջ երկրում, սակայն մեր ռեսպուբլիկայի տեղական սովետները գրեթե ոչինչ չեն արել այդ ուղղությամբ։

Մեր ռեսպուբլիկայում բավարար չափով չեն օգտագործվում հասարակայնության ուժերը՝ քաղաքներն ու գյուղերը բարեկարգելու բնագավառում։ Որոշ բան, իհարկե, կատարվել է, բայց այդ շատ քիչ է։ Դժվար է, օրինակ, հավատալ, որ դեռևս կան բնակավայրեր, որտեղ ոչ մի ծառ չկա։ Թալինի շրջանի Նոր Արթիկ գյուղում մինչև վերջերս կար երկու այգի. աշակերտների ուժերով դպրոցի շրջակայքում տնկվել էին հարյուրավոր ծառեր։ Բայց ամբողջ գյուղը կանաչապատելու փոխարեն վերջին ժամանակներս կտրատել են այդ ծառերը ևս։ Ո՛չ գյուղական սովետը, ո՛չ էլ շրջանային սովետը ոչինչ չեն արել գյուղի բարեկարգման ուղղությամբ։

Անհամեմատ բարձրացել է սովետների դերը կենցաղային սպասարկման ձեռնարկությունների ղեկավարման գործում։ Յոթնամյա պլանով կոմունալ շինարարությանը երկու անգամ ավելի շատ միջոցներ են հատկացրել, քան նախորդ յոթ տարիներում։ Ի դեպ, կոմունալ շինարարությունն այժմ պլանավորվում է արդյունաբերական շինարարությունից անջատ։ Դա սովետներին ավելի լայն հնարավորություն է ընձեռում հատկացված միջոցների օգտագործմանը վերահսկելու, կենցաղային սպասարկման զանազան օբյեկտների կառուցման հարցերը օպերատիվ կերպով լուծելու համար։

Ընդլայնվել են սովետների իրավունքները կոմունալ-կենցաղային ձեռնարկությունների անմիջական ղեկավարման ուղղությամբ։ Մինչև վերջերս շատ քաղաքներում այդ ղեկավարությունն իրականացնում էին գերատեսչությունները (արդխորհուրդը, զինառը, բանմատակարարման բաժինները և այլն)։ Այդ պայմաններում սովետները և նրանց գործկոմները մեծ դժվարություննե-

րի են հանդիպում կոմունալ և կենցաղային սպասարկման օբյեկտների պլանավորման ու ղեկավարման ասպարեզում: Այժմ սովետներին կից ստեղծված են կենցաղային և կոմունալ սպասարկման միասնական վարչություններ՝ համեմատաբար ավելի փոքր ապարատով: Նրանց տնօրինության տակ են գտնըվում անհատական կարի ֆաբրիկաները, հագուստի, կոշիկի, կահույքի նորոգման արհեստանոցները, լվացքատները և այլն: Այդ վարչություններն զբաղվում են արտադրության պլանավորման ու էկոնոմիկայի հարցերով, բնակչության կենցաղային սպասարկման կատարելագործմամբ, կոմունալ-կենցաղային ձեռնարկությունների համար կադրեր ընտրելու ու պատրաստելու գործով: Վարչություններին կից ստեղծվում են տեխնիկա-տնտեսական խորհուրդներ, որոնք մեծ օգնություն են ցույց տալիս՝ աշխատավորության կենցաղային սպասարկման հարցերը կոնկրետ և օպերատիվ լուծելու:

Դժբախտաբար, բնակչության կոմունալ-կենցաղային սպասարկման գծով սովետների աշխատանքի նոր ձևերը դանդաղ են տարածվում: Մինչև այժմ ռեսպուբլիկայում ավարտված չէ կենցաղային սպասարկման օբյեկտների կոմպլեքսային մասնագիտացումը: Մոտ 500 այդպիսի օբյեկտներ ունեն միայն 1—2-ական բանվոր: Այդ հանգամանքը խանգարում է աշխատավորության կենցաղային սպասարկումը պատշաճ ձևով կազմակերպելուն և առիթ է տալիս տնայնագործական մեթոդների տարածմանը: Տեղական սովետները երբեմն չեն կատարում պարտիական ու սովետական օրգանների որոշումները՝ նորակառույց շենքերում կենցաղային ձեռնարկություններին տեղ հատկացնելու մասին: Հաճախ կոմունալ-կենցաղային օբյեկտները ինչպես հարկն է չեն տեղաբաշխվում: Լենինականում, Հոկտեմբերյանում, Արթիկում, ինչպես և Երևանում այդպիսի ձեռնարկությունների հիմնական մասը տեղավորված է քաղաքի կենտրոնում, իսկ ծայրամասերում գրեթե ոչ մի օբյեկտ չկա: Օրինակ, ռեսպուբլիկայի մայրաքաղաքում այնպիսի մի խոշոր ծայրամաս, ինչպիսին է Քանաքեռը, չունի անգամ բարեկարգ բաղնիք, բավարար թվով մթերային խանութներ, հագուստեղենի, կոշկեղենի նորոգման արհեստանոցներ և այլն: Իսկ Արտաշատի ու Սևանի շրջսովետների գործկոմներն անցյալ տարի շահագործման հանձնված բնակելի շենքերում ոչ մի տեղ չեն հատկացրել կենցաղային սպասարկման օբյեկտներին:

Պարտիայի ծրագրում հատուկ ուշադրություն է նվիրված կենցաղային սպասարկումը գյուղերում լավագույն ձևով կազմակերպելուն: Կոլտնտեսականների և սովխոզների բանվորների նյութական բարեկեցության վերելքը արմատապես փոխել է գյուղի կենցաղային պայմանները: Աճել են գյուղի աշխատավորների պահանջմունքները բնակարանի, հագուստի ու կենցաղի այլ առարկաների նկատմամբ: Բայց մի շարք շրջաններում դեռևս անբավարար են շինարարությունը և կենցաղային սպասարկումը: Այսպես, Թալինի շրջանի Ցամաքասար, Սուսեր, Զարինջ, Նոր Արթիկ և մի շարք այլ գյուղեր լրիվին ապահովված չեն նույնիսկ խմելու ջրով: Այդ գյուղերում չկան բաղնիքներ և կենցաղային սպասարկման այլ օբյեկտներ: Ղափանի շրջանի 65 գյուղերից միայն երկուսն ունեն կենցաղային սպասարկման օբյեկտներ, իսկ Սևանի շրջանի 32 գյուղերից՝ երեքը: Նույնն է վիճակը նաև ռեսպուբլիկայի մի շարք այլ շրջաններում: Հագուստեղենը կամ կոշկեղենը նորոգելու, նույնիսկ լուսանկարվելու համար շատ գյուղերի բնակիչներ հարկադրված գնում են շրջկենտրոն կամ հասնում քաղաք: Գյուղական վայրերում ամեն տարի թերակատար-



վում են կենցաղային սպասարկման ձեռնարկությունների կառուցման պլանները: Գյուղական և շրջանային սովետների որոշ աշխատողներ այս գործում ցուցաբերած իրենց անպատասխանատու վերաբերմունքը անհիմն կերպով բացատրում են միջոցների պակասությամբ:

Ընթացիկ տարվա սկզբին մեր տեղական սովետները քննարկեցին ու հաստատեցին ժողովրդական տնտեսության զարգացման, ինչպես և աշխատավորների կենցաղային սպասարկման պլանները: Աշխատավորների կենցաղային սպասարկման ծախսերը մեր ռեսպուբլիկայում զգալիորեն կավելանան: 1965 թվականին դրանք կազմում են՝ 11,500 հազար ռուբլի, 1963 թվականի 6200 հազարի փոխարեն: Տեղական սովետները պետք է խելացի օգտագործեն այդ միջոցները, որպեսզի յոթնամյակի վերջին ռեսպուբլիկայի գյուղական ողջ բնակչությունն ունենա կենցաղային սպասարկման նորմալ պայմաններ:

Այդ բնագավառում մեծ անելիքներ ունեն ինչպես տեղական սովետները, այնպես էլ կոլտնտեսություններն ու սովխոզները: Վերջիններս արդեն զգալի չափով ամրապնդվել են տնտեսապես և կարող են ինքնուրույն կերպով զբաղվել կոմունալ կենցաղային սպասարկման զանազան օբյեկտների շինարարությամբ: Մեր ռեսպուբլիկայի որոշ կոլտնտեսություններ արդեն ձեռնամուխ են եղել այդ գործին: Այսպես, 1963 թվականին նրանց ուժերով կենցաղային սպասարկման օբյեկտներ են կառուցվել Արտաշատի շրջանի Այգեզարդ, Ներքին Դվին և Մխչյան գյուղերում: Նույնպիսի օբյեկտներ են կառուցում այդ նույն շրջանի Մասիս, Շահումյան, Վերին Արտաշատ և Բուրաստան գյուղերի կոլտնտեսությունները: Սակայն ռեսպուբլիկայի շատ կոլտնտեսություններում ու սովխոզներում դեռևս այդպիսի շինարարություն չի կատարվում: Մինչդեռ Հայկական ՍՍՌ Գերագույն սովետի 1963 թվականի ապրիլի 4-ի որոշմամբ կոլտնտեսությունների ու սովխոզների առջև խնդիր է դրված առաջիկա երկու տարում, սեփական միջոցների հաշվին, կառուցել կենցաղային սպասարկման անհրաժեշտ օբյեկտներ: Արդեն մոտ երկու տարի է անցել, բայց որոշումը գրեթե չի կատարվել:

ՍՄԿՊ Կենտկոմի վերջին պլենումները սահմանեցին գյուղատնտեսական արտադրության ինտենսիվացման պլան: Հարկ չկա ապացուցելու, որ այդ համաժողովրդական խնդրի հաջող կատարումը խոշոր չափով կախված է նաև անհրաժեշտ կենցաղային պայմաններից: Ընդսմին, հատուկ ուշադրություն պետք է նվիրել կենցաղային սպասարկման օբյեկտների կառուցմանը յուրաքանչյուր բրիգադայում, ֆերմայում և հեռավոր այլ աշխատամասերում: Այդ խիստ պատասխանատու գործը պետք է հանձնարարել մասնագիտական կրթություն ունեցող մարդկանց: Բայց ռեսպուբլիկայում կենցաղային սպասարկման կադրերի պատրաստումը խիստ անբավարար է: Ռեսպուբլիկայի կենցաղային սպասարկման ամբողջ սիստեմում միայն 176 հոգի ունեն բարձրագույն կրթություն և 167-ը՝ միջնակարգ: Անհրաժեշտ է, որ տեղական սովետները կազմակերպեն այդ բնագավառի կադրերի պատրաստման դասընթացներ:

Աշխատավորության կենցաղային սպասարկման ասպարեզում կարևոր տեղ է գրավում առևտրի և հասարակական սննդի կազմակերպումը, որը նույնպես աշխատավորների դեպուտատների սովետների հիմնական պարտականություններից մեկն է: Նրանք պետք է հոգան խանութների, ճաշարանների, բուֆետների, խոհանոց-ֆաբրիկաների և նման այլ օբյեկտների ցանցի ընդ-

լայնման մասին։ Պարտիայի ծրագրում ասված է, որ առաջիկա 10—15 տարում հասարակական սնունդը պետք է գերակշռող տեղ գրավի տնային պայմաններում պատրաստվող սննդի համեմատությամբ։ Բազմաթիվ սովետներ և հասարակական սննդի օրգաններ կարողացել են զգալի հաջողությունների հասնել այդ գործում։ Օրինակ, մեծ քիմիայի քաղաքում՝ Կիրովականում, գրեթե բոլոր գործարանային ճաշարաններն ունեն ժամանակակից սարքավորում։ Այստեղ ընդլայնվում է կիսաֆաբրիկատների կենտրոնացված մատակարարումը։ Քաղաքի հասարակական սննդի ողջ ցանցը շուտով առաջինը ռեսպուբլիկայում լիովին կանցնի սննդի կենտրոնացված մատակարարման։ Բավականին բան է արված այդ ուղղությամբ նաև ռեսպուբլիկայի մայրաքաղաքում։ Օրինակ, Երևանի բնակիչները գոհունակությամբ են խոսում կաֆեների և նախաճաշարանների մասին։

Սակայն հասարակական սննդի լավ կազմակերպման օրինակները դեռևս քիչ են։ Դա բացատրվում է ամենից առաջ համապատասխան շենքերի անբավարար քանակով։ Հայկական ՍՍՌ Մինիստրների սովետի 1959 թվականի մայիսի 8-ի որոշմամբ հասարակական սննդի ցանցը 1965 թվականին կաճի 630 միավորով կամ 29174 տեղով։ Անցած 4 տարում կառուցվեց դրանց մոտ մեկ երրորդը։ Շինարարական կազմակերպությունները չպետք է անտեսեն նաև այն կարևոր հանգամանքը, որ կառուցվող ձեռնարկություններում ու շենքերում անհրաժեշտ է միաժամանակ շահագործման հանձնել նաև ճաշարաններ, ռեստորաններ կամ հասարակական սննդի այլ օբյեկտներ։ Այսպես, օրինակ, 26 կոմիսարների անվան շրջանում կառուցվում է ուսանողական թաղամաս։ Արդեն շահագործման են հանձնված 2000 տեղանոց չորս շենք, իսկ ճաշարանի շինարարությունը միայն նոր է սկսվում։

Ճաշարանների շինարարության գործն անբավարար է նաև ռեսպուբլիկայի սովխոզներում։ 1960 թվականին միութենական և ռեսպուբլիկական կառավարությունների որոշումները սովխոզներին պարտավորեցնում էին սեփական միջոցներով կառուցել ճաշարաններ և ապահովել դրանք անհրաժեշտ պարագաներով։ Բայց մի շարք շրջաններում այդ որոշումը չի կենսագործվում։ Աբովյանի, Աշտարակի, Արթիկի և Ազիզբեկովի շրջանների շատ սովխոզներ ճաշարաններ չունեն։ Ռեսպուբլիկայի սովխոզների մոտ 50 ճաշարաններ չունեն բարեկարգ շենքեր ու այլ հարմարություններ։

Առևտրի ու հասարակական սննդի կազմակերպման բնագավառում դեռևս թույլ է պայքարը առևտրի կանոնների խախտումների, թերակշռումների դեմ։ Այդպիսի պայքարը հաջողությամբ է պսակվում միայն հասարակայնության լայն մասնակցությամբ։ Սովետների արտահաստիքային բաժիններն ու մշտական գործող հանձնաժողովները կարող են լավ կազմակերպել վերահսկողություն, ուսումնասիրել բնակչության պահանջմունքները և օգնել անհրաժեշտ մթերքների պատշաճ մատակարարման գործին։ Նրանք ստուգում են խանութների վարիչների և առևտրի այլ օբյեկտների ղեկավարների աշխատանքը, նրանց հաշվետվությունները ներկայացնում սովետների գործկոմների նիստերի քննարկմանը։ Այդ առումով նշանակալի աշխատանք է կատարված 26 կոմիսարների և Շահումյանի անվան շրջանների սովետների առևտրի և հասարակական սննդի արտահաստիքային բաժիններում։ Այդ բաժինների ակտիվիստները 1963 թվականի ընթացքում հայտաբերել են թերակշռումներ և այլ խախտումներ, նրանց աչքից չի վրիպել նաև ճաշարանների ու ռեստորանների



հակասանիտարական վիճակը։ Առևտրի ու հասարակական սննդի բնագավառում հայտաբերված նման թերությունները վերացնելու նպատակով ձեռք են առնվել համապատասխան միջոցներ։ Խանութների ու ճաշարանների տասնյակ վարիչներ և աշխատողներ ազատվել են աշխատանքից։ Նրանցից շատերը դատական պատասխանատվության են ենթարկվել։ Սակայն շատ սովետներում առևտրի ու հասարակական սննդի արտահաստիքային բաժինները գոյություն ունեն միայն ձևականորեն, իսկ հաստիքայինները մատնված են անգործության։ Այդ է պատճառը, որ ռեսպուբլիկայում վերջին տարիներս ավելացել են առևտրի ու հասարակական սննդի կանոնների խախտումները։

Տեղական սովետները ամենևին չեն զբաղվում կոլտնտեսային շուկաներում առևտրի կազմակերպման գործով։ Շուկաներում մթերքների գինը, հատկապես բանջարեղենինը և մրգերինը, խիստ բարձրացել է։ Ընդ որում, գները բարձրացնում են ոչ թե կոլտնտեսականները, այլ սպեկուլյացիայով զբաղվող մարդիկ, որոնց դեմ տեղական օրգանները շատ թույլ են պայքարում։

Հիշատակենք կենցաղային սպասարկման մի հարց ևս, որը չպետք է վրիպի աշխատավորների դեպուտատների սովետների ուշադրությունից։ Այդ տրանսպորտի կազմակերպումն է։ Վերջին տարիներս զգալիորեն ավելացել է ավտոբուսների և փոխադրական տրանսպորտի այլ ձևերի թիվը, ավելացել են նաև ներքաղաքային երկաթուղիները, կապ է հաստատված շրջկենտրոնների և այլ բնակավայրերի հետ։ Բայց և այնպես այս բնագավառում եղած հնարավորությունները դեռ լրիվ չեն օգտագործվում։ Վերցնենք, թեկուզ, մեր Երևանը։ Քաղաքացիները երբեմն ստիպված են լինում մի ամբողջ ժամ սպասել տրանսպորտի, մինչդեռ տասնյակ ավտոբուսներ, տրոլեյբուսներ ու տրամվայներ կանգնած են մնում պարկերում։ Այսպես, № 4 երթուղում պետք է գործեն 14 մեքենա։ Սակայն այդքան մեքենաներ լինում են միայն առավոտյան ժամերին, իսկ ժամը 5-ից հետո մնում են 3—4 մեքենա։ Ավտոպարկի ղեկավարությունը ոչ մի միջոց ձեռք չի առնում նման վիճակից դուրս գալու համար։ Քաղաքային սովետը պետք է ակտիվ միջամտի և ռեալ միջոցներ ձեռք առնի տրանսպորտի աշխատանքը կարգավորելու համար։

Տրանսպորտի աշխատանքին մեծ չափով խանգարում է բարեկարգ ճանապարհների պակասը։ Ճանապարհների բարեկարգ վիճակը կարևոր է ո՛չ միայն էկոնոմիկայի, այլև բնակչության կենցաղային սպասարկման համար։ Ճանապարհաշինության և, հատկապես, տեղական նշանակություն ունեցող ճանապարհների բարեկարգման խնդիրը հաջողությամբ կարելի է լուծել հասարակության ուժերով։ Տեղական սովետները մեծ անելիքներ ունեն այդ գործում։

Հասարակական հիմունքների զարգացումն ունի ո՛չ միայն տնտեսական, այլև դաստիարակչական խոշոր նշանակություն։ Համատեղ աշխատելով մարդիկ աստիճանաբար փոխում են իրենց վերաբերմունքը «հասարակականի» և «անհատականի» հանդեպ։ Նրանք դաստիարակվում են կոլեկտիվիզմի և հանրային սեփականության նկատմամբ հոգատարության ոգով։ Հասարակությանը լայնորեն ներգրավելով տեղական սովետների գործունեության ոլորտը և ճիշտ օգտագործելով պետական միջոցները, աշխատավորների դեպուտատների սովետները կկարողանան հաջողությամբ լուծել բնակչության կենցաղային սպասարկման խնդիրները։

Լ. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ
Փիլիսոփայական գիտությունների թեկնածու

# ՄՇՏԱԿԱՆ ՀԱՆՁՆԱԺՈՂՈՎՆԵՐԻ ԱՇԽԱՏԱՆՔԸ ՈՒՇԱԴՐՈՒԹՅԱՆ ԿԵՆՏՐՈՆՈՒՄ

*Աշխատավորների դեպուտատների տեղական սովետների մշտական հանձնաժողովները՝ տեղական իշխանության այդ ամենամասսայական օրգանները, իրենց ամենօրյա աշխատանքով օգնում են սովետներին նրանց խնդիրների հաջող կատարման և մասսաների հետ կապերի ամրապնդման գործում։ Միաժամանակ դրանք կոչված են նաև վերահսկելու գործադիր և կարգադրող-օրգանների գործունեությանը։*

*Աշխատավորների դեպուտատների 9-րդ գումարման Երևանի տեղական սովետների մշտական հանձնաժողովները դեպուտատների և ակտիվի մասնակցությամբ բավականին աշխատանք են կատարում իրենց այդ ֆունկցիաների կենսագործման ուղղությամբ։*

*Երևան քաղաքում ներկայումս գործում են տեղական սովետների (քաղաքային և հինգ շրջանային) 65 մշտական հանձնաժողովներ՝ 615 անդամներով և 500-ից ավելի ակտիվիստներով։ Անցած երկու տարում նրանք նախապատրաստել և սովետների կամ նրանց գործկոմների քննարկմանն են ներկայացրել քաղաքային տնտեսության տարբեր բնագավառներին վերաբերող 128 հարց։ Նիստերում քննարկել և համապատասխան որոշումներ են ընդունել ուսումնասիրված ավելի քան 800 հարցի վերաբերյալ։ Մշտական հանձնաժողովները չեն սահմանափակվում միայն հարցեր նախապատրաստելով կամ որոշումներ կայացնելով։ Նրանք սիստեմատիկաբար ստուգում են որոշումների կատարման ընթացքը և միջոցներ ձեռնարկում դրանց անթերի կատարման համար։*

*Հանձնաժողովներից շատերը բարեխղճորեն են կատարում իրենց պարտականությունները։ Օրջոնիկիձեի շրջանային սովետի կոմունալ տնտեսության մշտական հանձնաժողովը (նախագահ Ա. Գասպարյան) այդ ուղղությամբ խրախուսելի աշխատանք է կատարել։ Շատ բողոքներ կային բնակչության խմելու ջրի պակասի մասին։ Երբ հանձնաժողովն ուսումնասիրեց վիճակը, պարզվեց, որ Սարի Թաղում, Վարդաշենում և այլ վայրերում ջրի ծորակների անսարքության և առանձին բնակիչների անպատասխանատվության հետևանքով շռայլվում էր խմելու ջուրը։ Հանձնաժողովի առաջարկությունների հիման վրա գործադիր կոմիտեն ընդունեց հատուկ որոշում, որի կենսագործման շնորհիվ կարգավորվեցին բազմաթիվ ծորակներ, կարգի հրավիրվեցին առանձին քաղաքացիներ. այդ նպաստեց որոշ չափով բարելավելու բնակչության ջրամատակարարումը։*

*Հանձնաժողովի ուսումնասիրությունների հիման վրա շրջսովետի գործկոմը որոշում ընդունեց նաև բնակարանային ֆոնդի վերանորոգումն արագացնելու ուղղությամբ։ Արդյունքը եղավ այն, որ ժամանակին ավարտվեց պլանով նախատեսված 63 շենքերի վերանորոգումը։ Նույն հանձնաժողովի միջնորդությամբ բարելավվեց ավտոտրանսպորտի որոշ երթուղիների աշխատանքը. ասֆալտապատվեց կայարանի շենքի մուտքը. կապի մինիստրությունը 1965 թվականի առաջին եռամսյակում կավելացնի Նոր-Արեշի, Սարի-Թաղի, Վարդաշենի և այլ վայրերի հեռախոսային կետերի թիվը և այլն։*

*Ուսումնասիրությունները ցույց էին տվել, որ 5-րդ և 6-րդ հիվանդանոցներում առանձին բուժաշխատողներ կոպիտ են վարվում հիվանդների և նրանց այցելողների հետ. կան բժիշկներ, որ ժամանակին չեն ախտորոշում հիվանդությունը։ Հիվանդները ժամանակին հիվանդանոց չեն տեղափոխվում, որի հետևանքով ստեղծվում են բարդություններ։ Լենինյան շրջանային սովետի առողջապահության և սոցիալական ապահովության մշտական հանձնաժողովը (նախագահ Մ. Խաչատրյան) նախապատրաստեց և սեսիայի քննարկմանը ներկայացրեց շրջանի ազգաբնակչության բուժսպասարկման հարցը։ Ընդունված որոշումների կատարման ստուգման շնորհիվ հանձնաժողովը հասավ այն բանին, որ նշված հիվանդանոցներում արդեն բավականին բարելավվել է բուժսպասարկումը։ Շրջանի բուժաշխատողների համար պարբերաբար կազմակերպվում են դասախոսություններ, հանդես են գալիս անվանի պրոֆեսորներ Ա. Ճաղարյանը, Գ. Միրզոյանը, դոցենտներ Ս. Թորոսյանը, Ս. Ավդալբեկյանը, Մ. Խաչատրյանը և ուրիշներ։ Այս միջոցառումը*



*զգալի չափով նպաստում է նրանց տեսական գիտելիքների հարստացմանը, օգնում ճիշտ ախտորոշման գործին, բարձրացնում է շրջանի բուժաշխատողների որակավորումը։ Հանձնաժողովի ղեկավարությամբ և բուժաշխատողների ակտիվ մասնակցությամբ շրջանի բուժհիմնարկներում կազմակերպվել են հատուկ բրիգադներ, որոնք հսկում են սանիտարական պրոֆիլակտիկ միջոցառումների կատարմանը։ Հսկողություն է սահմանված նաև առկայաններին կից գործող արտադրության տեխնոլոգիական պրոցեսների հետևանքով առաջացած վնասներն ուսումնասիրող բրիգադների գործունեության վրա։ Լուրջ ուշադրություն է նվիրվում հասարակական սննդի օբյեկտների՝ ճաշարանների, բուֆետների աշխատանքներին և շրջանի սանիտարական վիճակի բարելավմանը։*

*Երբ այս նույն հանձնաժողովն ուսումնասիրեց շրջանի 9-րդ և 10-րդ մանկապարտեզների աշխատանքը, պարզվեց, որ անբավարար է սանիտարական վիճակը, խախտվում է օրվա ռեժիմը, երեխաները սահմանված նորմաներով սննդամթերք չեն ստանում և այլն։ Հանձնաժողովի առաջարկությամբ շրջսովետի գործկոմը քննարկեց այդ հարցը և ձեռնարկված միջոցների շնորհիվ բարելավվեց մանկապարտեզների գործունեությունը. այժմ դրանք քաղաքի օրինակելի մանկապարտեզներից են։ Այս հանձնաժողովի գործունեության դրականն այն է, որ նա իր աշխատանքներին մասնակից է դարձնում առողջապահության աշխատողների լայն ակտիվին։*

*Լավերի կողքին, ցավոք, դեռևս կան նաև վատ աշխատող հանձնաժողովներ։ Աճում է և բարեկարգման մեծ կարիք ունի 26 կոմիսարների անվան շրջանը։ Մեծ անելիքներ ունի շրջանային սովետի բարեկարգման և ճանապարհաշինարարության մշտական հանձնաժողովը, որը, սակայն, անգործության է մատնված։ Անբավարար է աշխատում նաև Լենինյան շրջանային սովետի առևտրի մշտական հանձնաժողովը։ Իսկ թե որքան թերություններ կան առևտրի օբյեկտների աշխատանքներում և ինչպիսի անելիքներ ունի հանձնաժողովը, հանրահայտ է։ Զգալի թերություններ ունեն նաև քաղսովետի բյուջետային, սպանդարյան շրջսովետի արդյունաբերության և այլ հանձնաժողովներ։*

*Այդ մշտական հանձնաժողովների անբավարար աշխատանքը հետևանք է նրանց նախագահների անպատասխանատվության և գործկոմների անբավարար օգնության։ Գործին զգալիորեն խանգարում է նաև առանձին բաժինների, վարչությունների և մշտական հանձնաժողովների անբավարար կապը. նրանք հանձնաժողովներին չեն օգնում, նրանց օգնությանը չեն դիմում, երբեմն էլ թերագնահատում են նրանց դերն ու նշանակությունը։ Մինչդեռ գործը շատ կշահի, եթե տեղական սովետների գործկոմները, նրանց բաժիններն ու վարչությունները կատարեն իրենց պարտավորությունները՝ մշտապես իրադրությանը տեղյակ պահեն մշտական հանձնաժողովներին, կոորդինացնեն աշխատանքային պլանները, համատեղ կատարեն ուսումնասիրությունները և միջոցներ ձեռնարկեն բաժնի կամ վարչության գործունեության բարելավման նպատակով։*

*Նման կապերի բացակայությունը հանգեցնում է այն բանին, որ միևնույն հարցի ուսումնասիրությունը պլանավորում է թե՛ բաժինը և թե հանձնաժողովը։ Օրինակ, երբ քաղսովետի ժողովրդական կրթության մշտական հանձնաժողովի որոշմամբ դեպուտատներ Ս. Աղատյանը, Գ. Համբարձումյանը, Ա. Ղուկասյանը և ուրիշներ ներկայացել էին Ավանի գիշերօթիկ դպրոցի աշխատանքներն ուսումնասիրելու, նույն նպատակով այնտեղ էին և քաղաքային՝ ժողկրթբաժնի ներկայացուցիչները։*

*Անբավարար է նաև միևնույն սովետի տարբեր հանձնաժողովների և տարբեր սովետների միևնույն հանձնաժողովների կապը։ Արդյունքը գոհացուցիչ կլինի, եթե դպրոցական օբյեկտների շինարարության հարցն ուսումնասիրվի քաղսովետի ժողովրդական կրթության և շինարարական հանձնաժողովների համատեղ ջանքերով կամ առողջապահության ու առևտրի հանձնաժողովները համատեղ ուսումնասիրեն առևտրական օբյեկտների աշխատանքներն ու սանիտարական վիճակը, դրան մասնակից դարձնելով շրջսովետների համապատասխան մշտական հանձնաժողովներին։*

*Մշտական հանձնաժողովների կազմի ընտրությունից է կախված աշխատանքների մակարդակի բարձրացումը։ Անհրաժեշտ է մեծ հոգատարությամբ և ուշադրությամբ ընտրել հանձնաժողովների կազմը և, առաջին հերթին՝ նախագահներին՝ հաշվի առնելով մարդկանց ունակությունները, ցանկությունները և գործարար մյուս հատկանիշները։ Մշտական հանձնաժողովների կազմում անպայման պետք է ընտրվեն համապատասխան բնագավառի մասնագետներ, հասարակական աշխատանքը սիրող, եռանդուն, գործիմաց և ջանք չխնայող մարդկանց։*

*Սոցիալիստական պետականության զարգացումն աստիճանաբար կհանգեցնի այն բանին, որ նա կվերափոխվի կոմունիստական ինքնավարության։ Մշտական հանձնաժողովներն այն հիմնական օղակներն են, որոնք պետք է կապեն սովետները հասարակության հետ։ Սակայն նրանք այդ կարող են կատարել միմիայն հասարակության կողմից կազմակերպված և հասարակական հիմունքներով գործող բազմաթիվ ու բազմապիսի կազմակերպությունների հետ միա-*

սին, նրանց ակտիվ մասնակցությամբ։ Երևան քաղաքում ներկայումս կան հասարակական հիմունքներով գործող 1355 կազմակերպություններ, որոնցում ընդգրկված են մոտ 22 հազար մարդ։ Նրանք զգալի գործ են կատարում աշխատավորության դաստիարակման, հակահասարակական երևույթների դեմ պայքարի, համակեցության կանոնների պահպանման, քաղաքի բարեկարգման, կանաչապատման, սանիտարական վիճակի բարելավման ուղղությամբ։

Տեղական սովետների գործադիր կոմիտեներն ավելի լավ են ղեկավարում ենթակա բաժինները, վարչություններն ու կազմակերպությունները, երբ լավատեղյակ են լինում նրանց գործունեությանը։ Այդ գործի կազմակերպման բնագավառում մեծ դեր պետք է խաղան մշտական հանձնաժողովները։ Այս տեսակետից բավականին գործ է կատարված Երևանում։ Միայն քաղսովետի մշտական հանձնաժողովներն ուսումնասիրել և համապատասխան օգնություն են ցույց տվել ավելի քան 750 կազմակերպությունների։ Երևանի քաղսովետի կենցաղ-սպասարկման մշտական հանձնաժողովը (նախագահ Ս. Էլբակյան) ուսումնասիրել է 97 օբյեկտների գործունեությունը և ցույց տվել կոնկրետ օգնություն. իր նիստերում քննարկել է 33, նախապատրաստել և գործկոմի քննարկմանն է ներկայացրել 18 կարևոր հարցեր, որոնց մասին ընդունված որոշումները որոշ չափով նպաստել են բնակչության կենցաղ-սպասարկման գործի բարելավմանը։ Հանձնաժողովի ուսումնասիրությունների և առաջարկությունների շնորհիվ բավականին բարելավվեց բաղնիք-լվացքատների աշխատանքը, պաշտոններից զրկվեցին երեք բաղնիքների անգործունյա դիրեկտորներ։

Հանձնաժողովը զբաղվեց նաև քիմիական մաքրման ֆաբրիկայի աշխատանքներով՝ իր առաջարկությունները ներկայացրեց գործկոմի քննարկմանը։ Այդ օգնեց կենցաղ-սպասարկման վարչությանը և ֆաբրիկայի դիրեկցիային՝ վերացնելու աշխատանքներում տեղ գտած թերությունները։ Այժմ այստեղ պայքարում են կոմունիստական աշխատանքի կոլեկտիվի կոչմանն արժանանալու համար։ Հանձնաժողովի ուսումնասիրությունների, առաջարկությունների և գործկոմի ձեռնարկած միջոցների շնորհիվ բավականին դրական գործ կատարվեց նաև անհատական պատվերների կարի ֆաբրիկաների, կենցաղ-սպասարկման բյուրոյի, մեխանիկական գործարանի և կենցաղ-սպասարկման այլ օբյեկտների աշխատանքների բարելավման ուղղությամբ։ Այսպես են աշխատում նաև քաղսովետի առողջապահության և սոցիալական ապահովության (նախագահ Ա. Եսայան), առևտրի և հասարակական սննդի (նախագահ Ա. Գևորգյան), Սպանդարյանի շրջսովետի առողջապահության (նախագահ Մ. Բրուտյան) և այլ հանձնաժողովներ։

Սակայն կան նաև հանձնաժողովներ, որ այս կամ այն օբյեկտի ուսումնասիրության վերաբերյալ եզրակացություն ներկայացնելուց կամ հարցը քննարկելուց հետո իրենց պարտականությունները համարում են ավարտված։ Մշտական հանձնաժողովները կոչված են հսկողություն սահմանելու վերադաս օրգանների, տեղական սովետների, նրանց գործկոմների և իրենց կողմից ընդունված որոշումների կենսագործմանը, և ո՛չ միայն վերահսկելու, այլև միջոցներ ձեռնարկելու դրանց անթերի կատարման համար։ Մշտական հանձնաժողովների և դեպուտատների աշխատանքի բարելավման համար մեծ նշանակություն ունի նրանց բարձրացրած հարցերին ժամանակին ընթացք տալը։

Վերջերս քաղսովետի գործկոմը քննարկեց մշտական հանձնաժողովների և դեպուտատների առաջարկությունների, ինչպես նաև ընտրողների նակազների կատարման ընթացքը։ Քննարկումը ցույց տվեց, որ այդ ուղղությամբ ձեռք են բերվել որոշակի հաջողություններ՝ անհամեմատ բարելավվել է մշտական հանձնաժողովների և դեպուտատների առաջարկությունների, ինչպես և ընտրողների նակազների կատարման գործը։ Երևանի քաղաքային և շրջանային սովետների գործկոմները ժամանակին ամփոփում և քննարկում են այդ առաջարկություններն ու նակազները, միջոցներ են ձեռնարկում դրանց կենսագործման համար։

Անցած երկու տարվա ընթացքում գործկոմները մի քանի անգամ անդրադարձել են այդ հարցերին։ Որպես դրական երևույթ պետք է նշել, որ ամեն մի սեսիայից հետո քաղսովետի գործկոմն ամփոփում է մշտական հանձնաժողովների ու դեպուտատների առաջարկություններն ու քննադատական դիտողությունները, մշակում կոնկրետ միջոցառումներ դրանց կենսագործման համար։ Սակայն հարցը դրանով չի սահմանափակվում։ Գործկոմը սիստեմատիկաբար ստուգում է առաջարկությունների կատարման ընթացքը։ Նույն ձևով են վերաբերվում նաև շրջսովետների գործկոմները։ Այս առումով ուսանելի է Շահումյանի շրջսովետի գործկոմի աշխատանքի փորձը։ Այստեղ շաբաթը մեկ անգամ ապարատի պատասխանատու աշխատողների խորհրդակցությունում ինֆորմացիա է տրվում, թե ինչպես են կատարվում ընտրողների նակազները և դեպուտատների առաջարկությունները։ Այդ, անկասկած, բարձրացնում է գործկոմի ապարատի աշխատողների պատասխանատվությունը և դեպուտատների ակտիվությունը։

Այս ամենի կողքին գոյություն ունեն և լուրջ թերություններ։ Տեղական սովետների գործկոմների առանձին բաժինների և վարչությունների, մինիստրությունների ու գերատեսչությունների, հիմնարկ-ձեռնարկությունների և կազմակերպությունների որոշ ղեկավարներ անհոգի, բյուրոկրատական վերաբերմունք են ցույց տալիս մշտական հանձնաժողովների, դեպուտատների առաջարկությունների, ընտրողների նակազների կատարման հանդեպ։ Նրանք մի պահ մոռանում են, որ դեպուտատների և մշտական հանձնաժողովների առաջարկություններն արտահայտում են ընտրողների կամքը, պաշտպանում սովետական մարդու շահերը, որի մասին այնպես հոգում են պարտիան ու սովետական կառավարությունը։

Դեպուտատ, Երևանի քաղսովետի ժողովրդական կրթության մշտական հանձնաժողովի անդամ Ս. Պասկևիչյանը, կատարելով ընտրողների պահանջը, առաջարկել էր Չերնիշևսկու փողոցում տեղադրել ավտոմատ հեռախոս։ Երբ քաղաքային հեռախոսային ցանցի պատասխանատու ընկերները եղան տեղում, պարզվեց, որ հնարավոր է այդ անել։ Ինժեներ Հ. Գրիգորյանն անձամբ ստուգելուց հետո 1964 թվականի մայիսի 8-ին արեց համապատասխան կարգադրություն՝ դուրս գրելով կարգագիր։ Արդեն անցել է ավելի քան տասն ամիս, դեպուտատ Ս. Պասկևիչյանը նույն Հ. Գրիգորյանի մոտ է եղել տասնյակ անգամ, մի քանի անգամ եղել է քաղաքային հեռախոսային ցանցի պետ ընկ. Մ. Թոքմաջյանի, կապի մինիստրի տեղակալ ընկ. Ս. Խարազյանի մոտ, նրանք պարտավորվել են, հանձնարարել, բայց այդ քաշքշուկն ու բյուրոկրատիզմը դեռ չեն վերջացել և մինչև օրս Չերնիշևսկու փողոցում հեռախոս չի տեղադրված, դեպուտատի արդարացի և տեղին առաջարկությունը չի կատարված։

Վերցնենք մի այլ օրինակ. դեպուտատ Հ. Գևորգյանն առաջարկել էր ավելացնել Սովետաշենի խմելու ջրի ծորակների թիվը։ Երբ քաղսովետի գործկոմի կոմունալ ձեռնարկությունների վարչությունն զբաղվեց այդ հարցով, պարզվեց, որ ծորակների թիվն անհրաժեշտ է ավելացնել, և այն պետք է կատարի Արտաշատի միջշրջանային ջրմուղի վարչությունը։ Քիչ ջանքեր չգործադրվեցին այդ ուղղությամբ, բայց գործը մնաց անկատար։

Տեղական սովետների գործկոմները և նրանց կազմհրահանգչական բաժինները պետք է խիստ հսկողություն սահմանեն դեպուտատների, մշտական հանձնաժողովների առաջարկությունների և ընտրողների նակազների կատարման վրա։ Գործկոմներում պարբերաբար այդ հարցերի քննարկումն ու միջոցների ձեռնարկումը կապահովի նրանց հաջող կենսագործումը։ Վերջերս քաղաքային սովետի գործկոմն ընդունեց կոնկրետ միջոցառումներ մշտական հանձնաժողովների և դեպուտատների հետ տարվող աշխատանքի բարելավման ուղղությամբ։ Պարտավորեցրեց գործկոմներին, նրանց բաժիններին ու վարչություններին՝ սահմանել հանձնաժողովների ու դեպուտատների առաջ քաշած հարցերի կատարման հատուկ հաշվառում։ Անկասկած, այդ կբարձրացնի դեպուտատների ու մշտական հանձնաժողովների ակտիվությունը, գործկոմների և նրանց բաժինների ու վարչությունների պատասխանատվությունը։

Պարտիան պետության կառավարման հետագա դեմոկրատացման ուղին համարում է մշտական հանձնաժողովների դերի բարձրացումն ու նրանց իրավունքների ընդլայնումը։ «Հետզհետե տեղական սովետների մշտական հանձնաժողովների լուծմանը պետք է տրվեն,— ասվում է ՍՄԿՊ ծրագրում,— գործադիր օրգանների, վարչությունների և բաժինների իրավասության ենթակա ավելի ու ավելի մեծ թվով հարցեր»։ Անհրաժեշտ է համարձակությամբ կենսագործել պարտիայի ծրագրի այս պահանջը։

Սովետների աշխատանքի մակարդակի բարձրացման, բնակչության հետ նրանց կապերի ամրապնդման, դեպուտատների և մշտական հանձնաժողովների աշխատանքների բարելավման ասպարեզում շատ անելիքներ ունեն տեղական սովետների պարտիական խմբերը, որոնց գործունեությունը, դժբախտաբար, մինչև այժմ սահմանափակվում է սոսկ կազմակերպական հարցերի քննարկմամբ։ Կյանքը պահանջում է, որ պարտիական խմբերում լսվեն մշտական հանձնաժողովների նախագահների և դեպուտատների ինֆորմացիաները՝ իրենց դեպուտատական պարտականությունների կատարման մասին։ Լավ կլիներ, եթե դեպուտատների աշխատանքներով հետաքրքրվեին նաև դեպուտատ առաջադրող կոլեկտիվները և նրանց պարտիական կազմակերպություններն իմանային, թե նա սովետում ինչպե՞ս է արդարացնում իր կոլեկտիվի վստահությունը։

Սովետների մշտական հանձնաժողովների և, ընդհանրապես, կազմակերպական մասսայական աշխատանքների մակարդակի բարձրացմանը չափազանց կօգնի աշխատանքի փորձի փոխանակումը։ Լավ կլիներ, եթե աշխատանքի փորձի փոխանակում կազմակերպվեր ռեսպուբլիկայի մասշտաբով և, բացի այդ, առանձին մշտական հանձնաժողովների նախագահներ, գործկոմների կազմհրահանգչական բաժինների աշխատողներ և դեպուտատներ լինեին միութենական այլ ռեսպուբլիկաների տարբեր քաղաքներում, ուսումնասիրեին ու տարածեին տեղական սովետների աշխատանքներում եղած դրականը։

Ռ. ԳԵՎՈՐԳՅԱՆ
Երևանի քաղսովետի գործադիր
կոմիտեի կազմհրահանգչական
բաժնի վարիչ

# ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ՀԱՐՑԵՐ

## ՊԼԱՍՏՄԱՍՍԱՆԵՐԸ և ԾԱՆՐ ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՒԹՅՈՒՆԸ

Կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման վճռական պայմաններից մեկը ժողովրդական տնտեսության քիմիացումն է։ Այդ պատճառով մեծ նշանակություն ունի ժողովրդական տնտեսության, մասնավորապես ծանր արդյունաբերության մեջ պլաստմասսաների կիրառումը։ Խիստ մեծ է այդ նյութերի նկատմամբ մեր ժողովրդական տնտեսության պահանջը։ Միայն օդափոխիչ սարքավորումներ արտադրող ձեռնարկությունների համար տարեկան պահանջվում է միլիոնավոր քառակուսի մետր այդպիսի նյութ։

Մետաղների պլաստմասսայե ծածկույթների համար օգտագործվում են պոլիվինիլքլորիդը, պոլիէթիլենը, պոլիամիդները և այլ պլաստմասսաներ։ Մետաղապլաստմասսաները ենթարկվում են մեխանիկական մշակման (դրոշմում, ճկում, ձգում, գայլիկոնում)։ Դրանցից պատրաստված իրերը կարող են շահագործվել շատ ավելի երկար ժամկետներում, քան չժանգոտող պողպատից պատրաստվածները և մոտ վեց անգամ էժան են։ Պլաստմասսաների արտադրության ընդհանուր ծավալի մոտ 85 տոկոսը ներկայումս ծախսվում է ծանր արդյունաբերության մեջ, որոնցից 55 տոկոսը՝ մեքենաշինության զանազան ճյուղերում։

Մեխանիկական մշակման ժամանակ մեր երկրում ամեն տարի մետաղի տաշեղի է վերածվում 4,5 միլիոն տոննա մետաղ։ Ընդսմին, հաշվումները ցույց են տալիս, որ եթե մեքենաների հանգույցների ու դետալների պատրաստման ժամանակ բացառվի մշակման ստադիան, ապա տնտեսված մետաղից կարելի է պատրաստել հսկայական քանակությամբ զանազան իրեր, օրինակ, մոտ 300 միլիոն հեծանիվ կամ 6 միլիոնից ավելի Մոսկվիչ մարկայի մարդատար ավտոմեքենա։ Ծանր արդյունաբերության զանազան ճյուղերում չափազանց կարևոր ժողովրդատնտեսական նշանակություն ունի պայքարը մետաղների կորուստների դեմ։ Առաջադրված խնդրի լուծման հիմնական միջոցներից մեկը պոլիմերների, այդ թվում պլաստմասսաների հնարավորին չափ լայն օգտագործումն է։

Ծանր արդյունաբերության մեջ պլաստմասսաների կիրառումը թույլ է տալիս մետաղի մշակման պրոցեսում ո՛չ միայն ազատվելու նրա զգալի կորուստից, այլև, որ ավելի կարևոր է, շատ դեպքերում հրաժարվելու մեծ քանակությամբ սովորական և հատուկ պողպատների, դեֆիցիտային գունավոր մետաղների և դրանց համաձուլվածքների (բրոնզ, պղինձ, արույր, անագ, կապար, նիկել, քրոմ և այլն) օգտագործումից, զգալիորեն նվազեցնելու մեքենայի քաշը, բարելավելու նրա շահագործողական հատկությունները, տնտեսելու հանրօգուտ աշխատանքի միլիոնավոր ժամեր, բարձրացնելու մեքենաների դիմացկունությունը և այլն։



Դեռևս 1920 թվականին գիտնականները հաշվումներ կատարեցին, հաստատելով, որ 60 տարում արտադրված պողպատյա իրերի 30 տոկոսը շարքից դուրս է եկել մետաղի ահավոր թշնամու՝ կոռոզիայի (օքսիդացման) պատճառով։ Պլաստմասսայից պատրաստված իրերը չեն ժանգոտվում, դեռ ավելին, դրանք կարող են երկար ժամանակ գործածվել քիմիապես ակտիվ զանազան նյութերի միջավայրում, առանց քայքայվելու։

Հաշվումները ցույց են տալիս, որ մետաղները մեկ տոննա պլաստմասսայով փոխարինելու դեպքում միջին հաշվով կարելի է տնտեսել 500 ռուբլի, իսկ դրանց լայն արմատավորումը միայն մեքենաշինության մեջ հնարավորություն կտա տարեկան տնտեսելու 1,8—2 միլիարդ ռուբլի։

Հեռու չէ այն ժամանակը, երբ մեր երկրի մեքենաշինական ձեռնարկություններում երևան կգան պլաստմասսաներից պատրաստված մետաղահատ հաստոցներ։ Այժմ արդեն կան, օրինակ, խառատային-պտուտակահան հաստոցներ, որոնց բազմաթիվ դետալները (ատամնանիվավորներ, պտուտակներ և այլն) պատրաստված են պլաստմասսաներից։ Ի տարբերություն գոյություն ունեցող հաստոցների, պլաստմասսայի դետալներով հաստոցներն աչքի են ընկնում շահագործման մեծ ժամկետներով, պատրաստման պարզությամբ և էժանությամբ։ Բացի դրանից, այդ հաստոցներն ավելի ճշգրիտ են, արագընթաց և անաղմուկ։ 1Կ—62 մոդելի խառատային-պտուտակահան հաստոցի համար հիսուն զանազան պլաստմասսայե դետալներ է պատրաստում երկրի հաստոցաշինական առաջատար գործարաններից մեկը, Մոսկվայի Կրասնի պրոլետարի գործարանը։ Դա հնարավորություն է տալիս տարեկան տնտեսելու ավելի քան 130 հազար ռուբլի և 1300 տոննա մետաղ։ Այդքան մետաղը բավական կլինի, որպեսզի գործարանն ամեն տարի լրացուցիչ թողարկի շուրջ 600 խառատային-պտուտակահան հաստոց։

Մինսկի Կիրովի անվան հաստոցաշինական գործարանում հաստոցների դետալներ պատրաստելիս օգտագործում են կապրոնե և փայտյա պլաստիկներ։ Կապրոնե դետալների կիրառման տնտեսական արդյունավետությունը հասնում է մոտ 16 հազար ռուբլու։ Մետաղյա դետալների փոխարեն կապրոնե դետալների պատրաստմանն անցնելը հնարավորություն տվեց նվազեցնելու աշխատանքի ծախսումները։ Դրա հետ մեկտեղ զգալիորեն պակասեց աշխատատարությունը, որի շնորհիվ ավելի քան 11 անգամ բարձրացավ աշխատանքի արտադրողականությունը։

Հաշված է, որ եթե 1965 թվականից սկսած հայրենական հաստոցաշինական արդյունաբերությունը տարեկան ծախսի 5—7 հազար տոննա պլաստմասսա, ապա պլաստմասսայե դետալների օգտագործման շնորհիվ տարեկան կտնտեսվի մոտ 15 միլիոն ռուբլի։ Բացի դրանից, այդ հնարավորություն կտա տարեկան տնտեսելու 20—25 հազար տոննա մետաղ, այնքան, որից հնարավոր կլինի լրացուցիչ արտադրել 20—25 հազար զանազան հաստոցներ։

Պլաստմասսաների կիրառումը կարևոր նշանակություն ունի նաև տրանսպորտային մեքենաշինության մեջ։ Օրինակ, մարդատար ավտոմեքենաների շարժիչների արտադրած էներգիայի մեծ մասը ծախսում են իրենց, ավելի փոքր մասը՝ ուղևորների փոխադրման վրա։ Դրա հետևանքով մարդատար

ավտոմեքենաների բեռնամբարձիչ ունակությունը շատ ավելի փոքր է, քան
իրենց սեփական քաշը: Մասնավորապես ԶԻԼ—110 մարկայի մարդատար ավ-
տոմեքենան ունի մոտ 0,5 տոննա բեռնամբարձիչ ունակություն, մինչդեռ նրա
սեփական քաշը հասնում է 2,6 տոննայի: Մարդատար և բեռնատար ավտո-
մեքենաների պատրաստման ժամանակ պլաստմասսաների օգտագործման մի-
ջոցով քաշի թեթևացման ուղղությամբ տարվող աշխատանքներն արդեն դրա-
կան արդյունք են տվել: Մոսկվիչ մարդատար ավտոմեքենայի ապակեպլաս-
տիկայից պատրաստված թափքի քաշը 25 տոկոսով պակաս է մետաղից պատ-
րաստված նույնպիսի թափքի քաշից: Ավտոմեքենաների ապակեպլաստիկային
թափքերի պատրաստման բնագավառում մեր երկրում կատարված փորձերը
ցույց տվեցին դրանց առավելությունը մետաղյա թափքերի նկատմամբ: Այս-
պես, փորձարկման ժամանակ միանգամայն դրական կերպով դրսևորեց իրեն
ԳԱԶ—69 մարկայի ավտոմեքենայի ապակեպլաստիկայից պատրաստված
թափքը: Ավտոմեքենայի 30 հազար կիլոմետր տարածության վազքի արդյունք-
ները ցույց տվին, որ այդպիսի ավտոմեքենան հնարավորություն կտա յու-
րաքանչյուր 100 կիլոմետր վազքում բենզինի ծախսը կրճատել երկու լիտրով:
Ապակեպլաստիկայից պատրաստված թափք ունեցող յուրաքանչյուր ավտոմե-
քենա տարեկան կարող է տալ մոտ 500 կիլոգրամ վառելիքի խնայողություն,
իսկ այդ միջոցառման արմատավորումը ամբողջ երկրի մասշտաբով թույլ կտա
տարեկան տնտեսել մի քանի միլիոն տոննա բենզին:

Ապակեպլաստիկայից պատրաստված թափքերն ու խցիկներն ավելի լավ են
դիմանում հարվածների, քան մետաղյինները, հեշտությամբ նորոգվում են,
հասարակ խնամք են պահանջում: Այդպիսի թափքեր ու խցիկներ ունեցող
ավտոմեքենաները հարմար են հատկապես մեր երկրի հարավային շրջանների,
մասնավորապես Հայաստանի համար: Ապակեպլաստիկ նյութը ցածր ջերմա-
հաղորդականություն ունի: Ինչպես շոգը, այնպես էլ ցուրտը համարյա չեն
թափանցում մեքենայի թափքի կամ խցիկի մեջ: Մարդատար ավտոմեքենա-
ների պլաստմասսայե թափքերն ու բեռնատար ավտոմեքենաների խցիկներն
ավելի հեշտ են պատրաստվում և էժան են նստում:

Պլաստմասսաներն օգտագործվում են նաև ավտոմեքենաների բազմաթիվ
դետալներ ու հանգույցներ պատրաստելու համար: Միայն Պոբեդա մարկայի
ավտոմեքենայի այդպիսի դետալների թիվը 100-ից ավելի է: Ավտոմեքենա-
ների ավելի ուշ շրջանի կոնստրուկցիաներում դրանց թիվը հասնում է 200—
250-ի, իսկ որոշ մարկաներում՝ ավելի մեծ է: Այժմ, նույնիսկ նստարանն ու
թիկնակը պատրաստվում են թեթև ու ծակոտկեն պլաստմասսաներից:
Պլաստմասսայե նստարանն ունենում է ընդամենը մի քանի հարյուր գրամ
ծանրություն և իր զսպանակային հատկությունները պահպանում է բավակա-
նին երկար ժամանակ: Լավ արդյունք է տալիս ավտոմեքենայի մետաղյա
զսպանների փոխարինումը ապակեպլաստիկայով, որոնց ծառայության ժամ-
կետը հինգ անգամ ավելի է, քան մետաղյա զսպաններինը:

Ավտոմեքենաների և ավտոշարժիչների կենտրոնական գիտահետազո-
տական ինստիտուտը հաստատել է, որ պլաստմասսայե դետալների քաշը մեկ
ավտոմեքենայի մեջ քսանամյակի ընթացքում 6,62 կիլոգրամից միջին հաշվով
կհասնի մինչև 82,1 կիլոգրամի: Ավտոմոբիլային արդյունաբերության համար
պատրաստվող պլաստմասսայե դետալների թիվը մինչև 1980 թվականը
կհասնի 1600-ի: Կծախսվի մոտ 470 հազար տոննա պլաստմասսա: Պլաստ-



մասսաների կիրառումը տեխնիկա-տնտեսական մեծ արդյունք կտա ավտոմե-
քենաշինական արդյունաբերության մեջ: Արդյունաբերության այս ճյուղը մինչև
1965 թվականը պետք է օգտագործի մոտ 35 հազար տոննա ապակեպլաս-
տիկներ և մոտ 65 հազար տոննա այլ պլաստմասսաներ: Դրա շնորհիվ կխնայ-
վի մեկ միլիարդ ռուբլի, կտնտեսվի 200 հազար տոննա մետաղ (որից հինգ
հազարը գունավոր մետաղներ), երկու անգամ կնվազեն պահանջվող արտա-
դրական տարածությունները, երեք անգամ կկրճատվեն անհրաժեշտ գործիք-
ները:

Հայտնի է, որ մետաղյա (էլեկտրական) հաղորդիչների ռետինե մեկուսիչը
վատ է դիմադրում ուժեղ տաքացմանը և բարձր լարվածությանը: Մոտ 160
աստիճան ջերմության պայմաններում այն հալվում և ածխանում է: Ընդսմին,
աշխատանքի ընթացքում էլեկտրական հզոր գեներատորներն ու շարժիչներն
այնքան են տաքանում, որ նրանց փաթույթների ջերմաստիճանը հասնում է
200-ի, երբեմն նաև ավելի: Այսպիսի պայմաններում լավ արդյունք է տալիս
պլաստմասսան, որը դիմանում է մինչև 200 աստիճան ջերմության, իսկ կար-
ճատև գերտաքացումը կարող է հասնել նույնիսկ 350 աստիճանի: Ապակե-
պլաստիկ մեկուսացում ունեցող էլեկտրական մեքենաները աչքի են ընկնում
ծառայության առավել երկար ժամկետով (3—4 անգամ ավելի), զգալիորեն
փոքր չափերով և քաշով (25—40 տոկոսով), բարձր հզորությամբ (20—30
տոկոսով): Ապակեպլաստիկային մեկուսացում ունեցող էլեկտրական շար-
ժիչները կիրառվում են նաև երկաթուղային շոգեքարշերի, ջերմանավերի և այլ
մեքենաների մեջ:

Վերջին ժամանակներս պլաստմասսաներն սկսել են թափանցել նաև մե-
տալուրգիական արտադրության զանազան բնագավառները: Հայտնի է, որ ձու-
լածո իրերի արտադրության համար անհրաժեշտ են կաղապարներ: Եթե դրանք
պատրաստվեն պլաստմասսաներից, ապա դրա համար կպահանջվի ընդամենը
երկու րոպե, մինչդեռ հողե կաղապարների պատրաստման համար պահանջ-
վում է 30—40 րոպե: Պլաստմասսայե կաղապարների մյուս առավելությունն
այն է, որ վերանում է ստացված ձուլվածքի մեխանիկական մշակման անհրա-
ժեշտությունը, քանի որ այդպիսի կաղապարներում ստացված իրերն արդեն
հարթ մակերես են ունենում: Պլաստմասսայե կաղապարներում ճշգրիտ ձուլ-
վածքի արտադրությունը թույլ է տալիս ձուլողների աշխատանքի արտադրողա-
կանությունը բարձրացնել 30 տոկոսով, իսկ մետաղի ծախսումը կրճատել 15,
որոշ դեպքերում նույնիսկ՝ 20 տոկոսով: Դրա հետ մեկտեղ պետք է նշել, որ
ճշգրիտ ձուլման մեթոդով ստացված մետաղյա ձուլածո իրերի յուրաքանչյուր
տոննայի արժեքը մոտավորապես 350—400 ռուբլով էժան է նստում, քան սո-
վորական եղանակով ստացված ձուլվածքներն ու նրանց մեխանիկական մշա-
կումը:

Մետալուրգիական գործարանների գլանման հաստոցների աշխատանքի
փորձը ցույց է տալիս, որ առանցքակալների բրոնզե կամ գունավոր մետաղ-
ների այլ համաձուլվածքներից պատրաստված ներդիրների փոխարեն պլաստ-
մասսաներից, մասնավորապես տեքստոլիտից կամ փայտաթերթավոր պլաս-
տիկներից պատրաստելը թույլ է տալիս էլեկտրաէներգիայի ծախսումն իջեց-
նել 15—25 տոկոսով, գլանված մետաղի յուրաքանչյուր հազար տոննայի մեջ
տնտեսել 120—180 կիլոգրամ գունավոր մետաղ: Պլաստմասսայե առանցքա-
կալների կիրառումը (կապրոնից, նեյլոնից, տեքստոլիտից, փայտաթերթավոր և

այլ պլաստիկներից) թույլ է տալիս ո՛չ միայն երկարացնել առանցքակալների ծառայության ժամկետը, փոխարինել դեֆիցիտային մետաղները, կրճատել էլեկտրաէներգիայի ծախսումը (շփման ցածր գործակցի պատճառով), այլև նվազեցնել առանցքակալների հանգույցների քաշը, կրճատել քսայուղերի ծախսումը և կամ լրիվին հրաժարվել դրանց օգտագործումից։

***

Մեր ռեսպուբլիկայում կան սինթետիկ խեժերի և պլաստմասսաների սինթեզի և վերամշակման մեծ ու ռեալ հնարավորություններ։ Ներկայումս Երևանի Պոլիվինիլացետատ գործարանում այլ նյութերի հետ մեկտեղ մշակվում է պոլիվինիլբուտիրալային թաղանթ-բուտաֆոլ և պոլիվինիլային սպիրտ, Կիրովականի քիմիական կոմբինատում՝ մելամին։ Բուտաֆոլ թաղանթը լայնորեն կիրառվում է չկոտրվող ապակու արտադրության մեջ, որը, մասնավորապես, լայնորեն օգտագործվում է տրանսպորտային մեքենաշինության ձեռնարկություններում։ Պոլիվինիլային սպիրտն օգտագործվում է բենզակայուն նյութերի մշակման, սարքաշինության մեջ և այլ նպատակներով։ Մելամինը կօգտագործվի բարձրորակ էլեկտրամեկուսիչ պլաստմասսաներից, սինթետիկ խեժերի մշակման, ինչպես նաև ժողովրդական տնտեսության այլ կարիքների համար։ Դրա պահանջարկը չափազանց մեծ է։

Մոտ ժամանակում Հայաստանի քիմիական ձեռնարկություններում կկազմակերպվի մի շարք այլ պլաստմասսաների ու սինթետիկ խեժերի արտադրություն։ Կիրովի անվան սինթետիկ կաուչուկի գործարանում նախատեսված է ացետիլեն արտադրել ոչ թե կալցիում կարբիդից, ինչպես արվում է ներկայումս, այլ բնական գազից, ջերմաօքսիդացման պիրոլիզի մեթոդով։ Այդ թույլ կտա կազմակերպել պոլիքլորովինիլային խեժերի արտադրությունը, որոնցից ստացվում են լայնորեն հայտնի այնպիսի նյութեր, ինչպես՝ պոլիվինիլքլորիդը և վինիպլաստը։ Այդ պրոցեսի ընթացքում առաջացած սինթեզ գազը արժեքավոր քիմիական նյութ է, որից կարելի է ստանալ մեթանոլ, իսկ վերջինս հումք է ծառայում պլաստմասսաների արտադրության համար։ Մեթանոլի օգտագործումը տեղական հումքի և կիսանյութերի այլ տեսակների հետ հնարավորություն կտա կազմակերպելու ժողովրդական տնտեսության համար մեծ նշանակություն ունեցող կոնստրուկցիոն պլաստիկ պոլիֆորմալդեհիդի արտադրությունը։ Կիրովականի քիմիական կոմբինատում աշխատանքներ են տարվում կարբամիդի (սինթետիկ միզանյութ) և կապրոլակտամի ստացման ուղղությամբ։ Կարբամիդային խեժեր ստանալիս, որոնք անհրաժեշտ են էլեկտրամեկուսիչ պլաստիկների և քիմիական այլ նյութերի մշակության համար, կօգտագործվի մելամինը, որն արտադրվում է դարձյալ Կիրովականի քիմիական կոմբինատում։ Իսկ մելամինի օգտագործումը ֆորմալդեհիդի հետ մեկտեղ հնարավորություն կտա սկսելու այնպիսի պլաստմասսաների թողարկումը, որոնք հայտնի են մելամինա-ֆորմալդեհիդային անվամբ։

Պակաս հետաքրքիր չեն նաև Կիրովականի քիմիական կոմբինատի աշխատանքները կապրոլակտամի ստացման ուղղությամբ, որը հումք է ծառայում ֆոտոսինթեզի մեթոդով կապրոնի ստացման համար։ Կոմբինատի և ազոտային արդյունաբերության ու օրգանական սինթեզի նյութերի պետական գիտա-



հետազոտական ինստիտուտի, Համամիութենական գիտահետազոտական լուսատեխնիկական ինստիտուտի համատեղ ջանքերով այստեղ նախատեսված է տեղադրել կապրոլակտամի արտադրության հարմարանք՝ տարեկան մի քանի հարյուր տոննա արտադրողականությամբ։ Այդ հարցի դրական լուծումը կարող է հիմք ծառայել Հայաստանում կապրոլակտամի արդյունաբերական արտադրություն կազմակերպելու համար։

Սևանի էլեկտրապակեմեկուսացման գործարանում, որը լրիվ կարողությամբ շահագործման կհանձնվի 1965 թվականին, տեղական հումքի հիման վրա նախատեսվում է սկսել էլեկտրամեկուսիչ և կոնստրուկցիոն ապակեպլաստիկների արտադրությունը, որոնք անհրաժեշտ են քիմիական մեքենաշինության, ավտոմոբիլաշինության և ծանր արդյունաբերության այլ ճյուղերի համար, ինչպես նաև շինարարական արտադրության մեջ։

Ավելի մեծ հեռանկարներ կարող են բացվել մեր ռեսպուբլիկայի քիմիական արդյունաբերության առաջ Բաքու—Բաթումի մագիստրալային նավթամուղից դեպի Հայաստան նավթամուղ գծի շինարարության հարցի դրական լուծման դեպքում։ Այդ թույլ կտա կազմակերպել նավթավերամշակման ուղեկից նյութերի՝ էթիլենի և պրոպիլենի արտադրությունը, ժողովրդական տնտեսության համար չափազանց արժեքավոր պոլիէթիլենի և պոլիպրոպիլենի սինթեզի համար։

Սինթետիկ խեժերի և պլաստմասսաների մշակումը մեր ռեսպուբլիկայում առայժմ իրականացվում է հիմնականում երկու ձեռնարկությունների կողմից՝ էջմիածնի պլաստմասսաների գործարանի և Երևանի պոլիպլաստ գործարանի։ Դրանցից առաջինը ռեսպուբլիկայի սահմաններից դուրս գտնվող ձեռնարկություններից ստացվող մամլված փոշիներից (ամինոպլաստներից և ֆենոպլաստներից) և մանրաթելերից պատրաստում է դետալներ ու հանգույցներ Հայաստանի էլեկտրատեխնիկական, սարքաշինական, ինչպես նաև ժողովրդական սպառման առարկաների ձեռնարկությունների համար։ Գործարանն իր արտադրանքը մատակարարում է մեր ռեսպուբլիկայի 22 ձեռնարկություններին։ Ներկայումս այն թողարկում է ավելի քան 550 տեսակ զանազան կոմպլեկտավորող իրեր։ Նրա արտադրանքի անվանացանկում կան էլեկտրաչափիչ սարքերի, զարթուցիչ ժամացույցների կորպուսներ, խառատային հաստոցների մասեր, մեկուսիչներ և այլն։ Պլաստմասսաների օգտագործումը մեխանիկական ուղղիչներում (որոնք նախկինում պատրաստվում էին մետաղից էլեկտրամեքենաշինական գործարանում) հնարավորություն է տալիս տարեկան խնայել մոտ մեկ միլիոն ռուբլի։ Պոլիպլաստ գործարանը արտադրում է լուսատեխնիկական թաղանթ, լինոլեում, կենցաղային նշանակություն ունեցող իրեր։ Հայաստանում ըստ էության դեռևս գոյություն չունի պլաստմասսաների վերամշակման խոշոր ձեռնարկություն, որը կենտրոնացված կարգով արտադրի բավականաչափ քանակությամբ իրեր մեր ռեսպուբլիկայի բուռն կերպով զարգացող արդյունաբերության համար։

Նախատեսված է մոտիկ ապագայում ավարտել էջմիածնի պլաստմասսաների գործարանի գլխավոր կորպուսի շինարարությունը՝ չորս հիմնական բաժանմունքներով— մամլման, մշակման, գործիքաշինական և հավաքման։ Բաժանմունքները հագեցած կլինեն ժամանակակից բարձր արտադրողական սարքավորումներով, իսկ այդ հնարավորություն կտա գործարանի արտադրական կարողությունն ավելացնել մոտ երկու անգամ։ Չնայած դրան, գործարանն

արտադրական այդպիսի կարողություններով ի վիճակի չէ բավարարել Հայաստանի կարիքները, որտեղ կենտրոնացված են մեծ թվով հաստոցաշինական, էլեկտրամեքենաշինական, սարքաշինական ձեռնարկություններ և արդյունաբերության այլ ճյուղերի ձեռնարկություններ, որոնք պլաստմասսաների խիստ կարիք են զգում։ Ռեսպուբլիկան պլաստմասսաներից պատրաստված խողովակների, երեսպատման ձևավորման, տանիքային, հերմետիկ կերպով փակող, ջերմա-հիդրոձայնամեկուսիչ նյութերի սուր պահանջ է զգում։ Նշված իրերից և նյութերից շատերը կոոպերացված առաքման ձևով կարող են ստացվել միութենական այլ ռեսպուբլիկաներից, մասնավորապես Անդրկովկասյան ռեսպուբլիկաներից, սակայն պլաստմասսաների և դրանցից պատրաստված իրերի արտադրությունը հիմնականում պետք է կազմակերպել Հայաստանում։ Այդ տեսակետից ճիշտ պետք է համարել Խրոմպիկ գործարանի տերիտորիայում պոլիէթիլենից և պոլիստիրոլից պատրաստված տարբեր իրեր արտադրող ձեռնարկություն կառուցելու որոշումը։

Պլաստմասսայե իրերի նկատմամբ մի շարք գործարանների աճող պահանջարկի հետևանքով այդ ձեռնարկություններում կազմակերպվեց տվյալ նյութերի արտադրությունը։ Այսպես՝ Լենինականի հղկող հաստոցների գործարանի ձուլման բաժանմունքում մոդելների պատրաստման համար օգտագործվում է ստիրակրիլ ՏՇ նյութը։ Ի տարբերություն նախկինում կիրառվող ալյումինե մոդելների, ստիրակրիլային մոդելները լավ են ենթարկվում մեխանիկական մշակման՝ գործիքների միջոցով, դիմացկուն են, առաձգական և այլն։ Դրանց պատրաստումը համեմատաբար ավելի դյուրին է, իսկ կոտրվելու դեպքում հեշտությամբ սոսնձվում են։ Գործարանի ձուլման բաժանմունքում ստիրակրիլի օգտագործումը թույլ տվեց երեք ու կես անգամ նվազեցնել մոդելների պատրաստման ծախսերը։ Երևանի էլեկտրալամպերի գործարանում Կնորկովը և Թադևոսյանը լյումինեսցենտային լամպերի զոդման ավտոմատի վրա օգտագործեցին ֆտորոպլաստ—4-ի մանժետներ։ Ի տարբերություն նախկինում օգտագործվող ռետինե մանժետների, որոնք հիդրավլիկ հեղուկի ներգործման հետևանքով հինգ օրից ավելի չէին դիմանում, ֆտորոպլաստե մանժետները դիմանում են մեկ տարուց ավելի։ Գործարանում նոր մանժետների օգտագործումը թույլ տվեց զգալիորեն կրճատել աշխատանքի ծախսումները շարքից դուրս եկած մանժետների փոխարինման վրա և բարելավել սպասարկող անձնակազմի աշխատանքի պայմանները։

Երևանի Ձերժինսկու անվան հաստոցաշինական գործարանում Հայաստանում մշակված նոր պլաստմասսայից՝ լորինիտից, պատրաստում են դետալներ մետաղամշակման հաստոցների համար։ Նախկինում կիրառվող մետաղյա դետալների համեմատությամբ պլաստմասսայից պատրաստված դետալների ծառայության ժամկետը շատ ավելի երկար է, դրանք աչքի են ընկնում նաև լավագույն տեխնոլոգիական ցուցանիշներով, լավ են ենթարկվում դրոշմման, ֆրեզման և գայլիկոնման։ Լորինիտ պլաստմասսայի կիրառումը մետաղամշակման հաստոցների մեջ հնարավորություն է տալիս գործարանին տարեկան տալու տասնյակ հազար տոննա սև և գունավոր մետաղների խնայողություն։

ՍՄԿԿ Կենտկոմի դեկտեմբերյան պլենումի որոշումները սինթետիկ խեժերի և պլաստմասսաների արտադրության շեշտակի ավելացման մասին պատվավոր և պատասխանատու առաջադրանքներ են դնում նաև մեր ռեսպուբլիկայի առջև։ Այդ հարցերի լուծման գործում առաջատար տեղ է պատկանում



ինժեներա-տեխնիկական մտքին։ Հայաստանում պլաստմասսաների ստացման և կիրառման հարցերով զբաղվում են մի շարք գիտահետազոտական ինստիտուտներ և մասնագիտացված լաբորատորիաներ, իսկ մեքենաշինության և հաստոցաշինության ասպարեզներում Հայաստանի մեքենաշինության գիտահետազոտական ինստիտուտը, շինանյութերի գծով՝ շինանյութերի հայկական ինստիտուտը, էլեկտրամեքենաշինության գծով՝ էլեկտրամեքենաշինության համամիութենական գիտահետազոտական ինստիտուտի հայկական ֆիլիալը և այլն։ Քիմիական նախագծման հայկական գիտահետազոտական ինստիտուտը մշակում է պլաստմասսաների սինթեզի և կիրառման մի շարք հարցեր ժողովրդական տնտեսության բազմաթիվ ճյուղերի համար։ Վերջին տարիների ընթացքում այդ ինստիտուտներից մի քանիսը կատարել են մի շարք ակտուալ հետազոտություններ։ Այսպես՝ քիմիական նախագծման հայկական գիտահետազոտական ինստիտուտը մի շարք հետաքրքրական հետազոտություններ է կատարել մելամինից, ֆորմալդեհիդից, կարբամիդից սինթեզված խեժերի հիման վրա պլաստմասսաների ստացման ուղղությամբ, որոնց մեջ օգտագործվում է նաև մեր ռեսպուբլիկայի տրիկոտաժի և փայտամշակման արդյունաբերության ձեռնարկությունների թափոնը։

Առաջադրված խնդիրների ճիշտ ուսումնասիրման, համապատասխան մշակումներն ու դրանց արդյունքները արտադրության մեջ ներդնելու համար անհրաժեշտ է ընդլայնել և խորացնել գիտահետազոտական հիմնարկներում կատարվող ուսումնասիրությունները։ Մեր կարծիքով, գործի շահերը պահանջում են Հայաստանում կազմակերպել պլաստմասսաների վերամշակման մասնագիտացված ինստիտուտ, որը պլաստմասսաների վերամշակումից բացի կզբաղվի նաև ճյուղային գիտահետազոտական ինստիտուտների լաբորատորիաների գիտահետազոտական աշխատանքների կոորդինացմամբ և դրանց հետ միասին կկատարի պլաստմասսաներից պատրաստված իրերի և նյութերի փորձարկումն ու ներդրումն արտադրության մեջ։

Ս. ՍԻՄՈՆՅԱՆ
ԻՆԺԵՆԵՐ



# ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍԱԿԱՆ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՕԳՏԱԳՈՐԾՈՒՄԸ ՍՈՎԽՈԶՆԵՐՈՒՄ

*Գյուղատնտեսական արտադրության ինտենսիվացումը նրա վերելքի, արտադրողական ուժերի զարգացման գլխավոր ուղղությունն է։ Այն իրականացվում է երեք հիմնական ճանապարհով, որոնցից մեկը գյուղատնտեսության կոմպլեքսային մեքենայացումն է. դրա համար մեր երկրում ստեղծվում են նյութական անհրաժեշտ նախադրյալներ։ Տարեցտարի ավելանում են կոլտնտեսությունների ու սովխոզների հիմնական արտադրական ֆոնդերը, ընդ որում մեծանում է նրանց հագեցվածությունը տրակտորներով, կոմբայններով, բեռնատար ավտոմեքենաներով և գյուղատնտեսական այլ մեքենաներով։*

*Այսպես՝ վերջին 3 տարում հիմնական արտադրական ֆոնդերը մեր ռեսպուբլիկայի սովխոզներում ավելացել են 35,1 մլն ռուբլով կամ 43 տոկոսով, այդ թվում՝ տրակտորների, կոմբայնների, բեռնատար ավտոմեքենաների և գյուղատնտեսական այլ մեքենաներինը՝ 3,9 մլն ռուբլով կամ 58,2 տոկոսով։ Հիմնական արտադրական ֆոնդերի մեջ առավել արագ է ավելացել գյուղատնտեսական տեխնիկան։ Եթե 1961 թվականին վերջինիս տեսակարար կշիռը հիմնական արտադրական ֆոնդերի մեջ կազմում էր 8,2 տոկոս, ապա 1963 թվականին այն հասավ 9,1-ի։*

*Առավել մեծ չափերով է ավելացել տեխնիկական հագեցվածությունը 100 հեկտար հողատարածության հաշվով։ Վերջին երեք տարում 100 հեկտար հողատարածությանն ընկնող հիմնական արտադրական ֆոնդերն ավելացել են 37,6 տոկոսով. այդ թվում տրակտորներով, կոմբայններով և գյուղատնտեսական այլ մեքենաներով հագեցվածությունը՝ 59 տոկոսով. դրա շնորհիվ մեր ռեսպուբլիկայի սովխոզներում որոշ չափով բարձրացել է բուսաբուծության ու անասնապահության աշխատատար պրոցեսների մեքենայացման աստիճանը։ Այսպես, օրինակ, տրակտորային աշխատանքների ծավալը (վերածած փափուկ վարի) վերջին երեք տարում աճել է 145 հազար հեկտարով կամ 26 տոկոսով։ Եթե 1961 թվականին սովխոզներում կոմբայններով հնձվել է ամբողջ հացահատիկային ցանքատարածության 71,9 տոկոսը, ապա 1963 թվականին՝ 83,7 տոկոսը։ Լրիվին մեքենայացվել է ոչխարների խուզը։*

*Սովխոզների տեխնիկական հագեցվածության աճը հնարավորություն է տալիս ձեռքի աշխատանքը փոխարինելու առավել արտադրողական՝ մեքենայական աշխատանքով։ «Ձեռքի աշխատանքը մեքենայականով փոխարինելու մեջ...— գրել է Վ. Ի. Լենինը,— հենց դրա մեջ է մարդկային տեխնիկայի ամբողջ պրոգրեսիվ աշխատանքը։ Որքան ավելի է զարգանում տեխնիկան, այնքան ավելի է արտամղվում մարդու ձեռքի աշխատանքը, մի շարք ավելի ու ավելի բարդ մեքենաներով փոխարինվելով» (Վ. Ի. Լենին, Երկեր, հատ. 1, էջ 117)։*



*Չնայած այդ ուղղությամբ ձեռք բերված հաջողություններին, մեր ռեսպուբլիկայի սովխոզներում դեռևս ցածր է բուսաբուծության աշխատատար պրոցեսների մեքենայացման աստիճանը։ Աշխատանքների մեծ մասը կատարվում է ձեռքով։ Այսպես, 1963 թվականի տվյալներով ռեսպուբլիկայի սովխոզներում կարտոֆիլի ցանքը մեքենայացված էր 1,4, քանդումը՝ 4, միջշարային մշակումը՝ 8,2 տոկոսով, խոտհունձը՝ 26,9, եգիպտացորենի միջշարային մշակումը՝ 56,4, բանջարեղենինը՝ 51,9, տոկոսով և այլն։*

*Ինչպես երևում է այս թվերից, կարտոֆիլի ցանքի, մշակման, քանդման, խոտի հավաքման և այլ աշխատանքների մեքենայացման աստիճանը ցածր է, որի պատճառը ո՛չ միայն տեխնիկայի պակասն է, այլև եղած մեքենաների ոչ արդյունավետ օգտագործումը։*

*Սովխոզներում փաստորեն անբավարար է օգտագործվում գյուղատնտեսական տեխնիկան, հարկ եղած միջոցներ չեն ձեռնարկվում հողատարածությունները մեքենահարմար դարձնելու ուղղությամբ։*

*Մեկ պայմանական տրակտորի արտադրողականությունը 1963 թվականին կազմեց 198 հեկտար, 1961 թվականի համեմատությամբ իջնելով 16, իսկ մեկ հերթափոխում՝ 17 տոկոսով։ Մի շարք սովխոզներում (Խանջյանի անվան, Վերիշենի, Սիսիանի և այլն) պայմանական մեկ տրակտորի արտադրողականությունը 1962 թվականին, 1961 թվականի համեմատությամբ, իջել է 35—51 տոկոսով, իսկ Արտաշատի արտադրական վարչության Արազափ սովխոզում 1962 թվականին այն կազմեց 54 հեկտար։*

*Պարտիան ու կառավարությունը մեծ ուշադրություն են դարձնում գյուղատնտեսության նյութատեխնիկական մատակարարմանը։ Անցյալներում սովխոզների նյութատեխնիկական մատակարարումը կատարվում էր կենտրոնացված կարգով, որը լրիվ հաշվի չէր առնում տեղերի առանձնահատկություններն ու պահանջները։ 1957 թվականին որոշվեց այն կատարել սովխոզների կողմից ներկայացվող հայտերի համաձայն։ Սակայն երբեմն խախտվում է այդ սկզբունքը. սովխոզներին (առանց հայտերի) երբեմն մատակարարում են այնպիսի մեքենաներ, որոնք անհրաժեշտ չեն։ Այդպիսով ստացված մեքենան դառնում է մեռյալ կապիտալ ու փչանում է։ Եվ դա այն դեպքում, երբ նրանք կարիք ունեն այլ մեքենաների։*

*Տրակտորների արտադրողականության իջեցումը բացատրվում է նաև նրանով, որ մի շարք սովխոզներում կան պահանջից ավելի տրակտորներ և գյուղատնտեսական այլ մեքենաներ. դրանց մի մասն անսարք վիճակում է կամ մեխանիզատորական կադրերի հոսունության և պակասի հետևանքով չի օգտագործվել։*

*Մեր ռեսպուբլիկայի սովխոզներում 1964 թվականի հունվարի մեկին եղած 1977 տրակտորներից 1963 թվականի ընթացքում բոլորովին չեն օգտագործվել 210-ը կամ 10,6 տոկոսը, 285 հացահատիկային կոմբայններից՝ 45-ը կամ 15,8 տոկոսը։ 1963 թվականին չի օգտագործվել սովխոզներում եղած գյուղատնտեսական այլ մեքենաների 11,8 տոկոսը։*

*Արթիկի շրջանի Մանթաշի սովխոզը 1963 թվականին հայտ է ներ-*

կայացրել 2 տրակտոր ստանալու, սակայն ստացել է չորսը, առանց հայտի՝ 3 կոմբայն և 1 բուլդոզեր։ Պեմզաշենի սովխոզը, չնայած նրան, որ ապահովված է եղել անհրաժեշտ քանակությամբ տրակտորներով և կոմբայններով, 1963 թվականին ստացել է ևս 2 տրակտոր, 1 կոմբայն և գյուղատնտեսական այլ մեքենաներ, 4,3 հազ. ռուբլու արժեքով, որի հետևանքով նախկինում ստացված մեքենաները թողնվել են անխնամ, չեն օգտագործվել։ Արթիկի սովխոզը 1960 թվականին ստացել է կալսիչ մեքենա, սակայն կալսման աշխատանքներ չլինելու պատճառով այն չի օգտագործվել. մինչդեռ Բերդի սովխոզն ուներ դրա կարիքը։ Արթիկի սովխոզը 1963 թվականի հունվարի մեկի դրությամբ պահանջից ավելի ուներ 9 տրակտոր և, չնայած դրան՝ 1963 թվականին ստացել է ևս 3-ը։ Արագածի սովխոզը 1963 թվականին պահանջից ավելի ուներ 7 տրակտոր։

Բազմաթիվ օրինակներով կարելի է ցույց տալ, որ պահանջից ավելի մեքենաներ ունենալու դեպքում էլ գյուղատնտեսական աշխատանքները պատշաճ չափով չեն մեքենայացվում։

Հաճախ գյուղատնտեսական մեքենաները չեն օգտագործվում ապակոմպլեկտավորված լինելու, պահեստամասերի բացակայության և այլ պատճառներով։ Վերջին 3 տարում Պեմզաշենի սովխոզում պահեստամասերի բացակայության հետևանքով չեն օգտագործվել 2 տրակտոր, տրակտորային 3 գութան, 2 շարքացան, 3 կուլտիվատոր և այլն։

Գյուղատնտեսական արտադրության ինտենսիվացման համար անհրաժեշտ է մեքենայացնել ոչ միայն բուսաբուծության, այլև անասնապահության աշխատատար պրոցեսները։ Ռեսպուբլիկայի առանձին տնտեսություններում լայնորեն կոմպլեքսային մեքենայացման են ենթարկվում անասնապահական ֆերմաները։ Այդ տեսակետից խրախուսման արժանի է Հայգյուղտեխնիկայի Արտաշատի բաժանմունքի աշխատողների նախաձեռնությունը։ 1964 թվականին նրանք կոմպլեքսային մեքենայացման են ենթարկել 10 ֆերմա, լրիվ մեքենայացրել են կոշտ կերի մշակումը։ Բայց ընդհանուր առմամբ այս բնագավառում մեր ռեսպուբլիկայի սովխոզները խիստ ետ են մնում։ Մինչև 1964 թվականի հունվարի մեկը կերի մատակարարման և գոմաղբի դուրստարման աշխատանքները խոզաբուծական ֆերմաներում մեքենայացված էին 1,6, խոշոր եղջերավոր անասունների ֆերմաներում՝ 19 տոկոսով, կովերի կիթը մեքենայացված էր 5,6, ջրամատակարարումը՝ 12,7 տոկոսով։

Սովխոզներում անասնապահության աշխատատար պրոցեսների մեքենայացման ցածր աստիճանը բացատրվում է նրանով, որ դրան պատշաճ ուշադրություն չի նվիրվում, անասունների մի մասն ապահովված չէ տիպային շենքերով և եղած սարքավորումներն արդյունավետ չեն օգտագործվում։ Սակայն առանձին սովխոզներում տիպային անասնաշենքեր ունենալու դեպքում էլ աշխատատար պրոցեսները չեն մեքենայացվում։

Արտենիի այգեգործական սովխոզը 1962 թվականին ձեռք է բերել գոմաղբի դուրս տարման կախովի ճանապարհի սարքավորում՝ 1,1 հազար ռուբլու արժողությամբ, սակայն այն չի տեղադրվել։ Ավելի վատ են օգտագործվում կթի ագրեգատները։ 1964 թվականի հունվարի մեկի դրությամբ սովխոզներում տեղադրված կթի ագրեգատներն օգտագործվել են միայն 50 տոկոսով։

Սեմյոնովկայի կաթնաանասնապահական սովխոզում չեն օգտագործվում կթի 2, Եղեգնաձորի սովխոզում՝ 1, Բատիկյանի սովխոզում՝ 3 ագրեգատ։



Աբովյանի սովխոզը 1961 թվականին գնել է ոչխարների խուզի Ի—12 ագրեգատ, որը ոչխարներ չլինելու պատճառով չի օգտագործվում։ Գուգարքի շրջանի Ժդանովի անվան սովխոզն ունի կթի 2 ագրեգատ՝ 3 հազար ռուբլու արժողությամբ, սակայն դրանք դեռևս չեն տեղադրվել։ Նման շատ օրինակներ կարելի է բերել, որոնք ցույց են տալիս, որ ռեսպուբլիկայի սովխոզների մի մասում պատշաճ ուշադրություն չի նվիրվում տեխնիկայի և սարքավորումների ռացիոնալ օգտագործմանը։

Որոշ սովխոզներ փաստորեն ճիշտ չեն կազմում մեքենաների հայտերը, իսկ Հայգյուղտեխնիկան էլ դրա վրա հարկ եղած ուշադրություն չի դարձնում։ Ավելին, Հայգյուղտեխնիկան ինքն էլ երբեմն ստանում է այնպիսի մեքենաներ ու սարքավորումներ, որոնք մեր ռեսպուբլիկայի պայմաններում օգտագործելի չեն։ Այսպես, օրինակ, Հայգյուղտեխնիկայի Շահումյանի շրջանային բաժանմունքը 1963 թվականին ստացել է թեյ հավաքող մեքենաներ 14,2 հազար ռուբլու արժողությամբ և դա այն դեպքում, երբ մեր ռեսպուբլիկայի սովխոզներում ու կոլտնտեսություններում թեյ չի մշակվում։ Մի այլ օրինակ։ Հայգյուղտեխնիկայի ռեսպուբլիկական բազան ստացել է լեռնային արդյունաբերության մեջ օգտագործվող 8 վագոնետկա՝ 7,2 հազար ռուբլու արժողությամբ, որը չի օգտագործվում ոչ միայն գյուղատնտեսության, այլ նույնիսկ մեր ռեսպուբլիկայի լեռնահանքային արդյունաբերության մեջ։

Գյուղատնտեսական տեխնիկայի օգտագործման բնագավառում կարևոր են նաև միջվերանորոգման ժամկետների պահպանումը, տեխնիկական խնամքի գրաֆիկների կազմումը, որակյալ վերանորոգումը և այլն։ Սրանք կարևոր հարցեր են, որոնց վրա Հայգյուղտեխնիկայի շրջանային բաժանմունքների ղեկավարները պետք է հատուկ ուշադրություն նվիրեն։ Բայց բոլորը չէ, որ այդպես են վարվում։ Մարտունու շրջանի Թազագյուղի սովխոզում գյուղտեխնիկայի շրջանային բաժանմունքը 1963 թվականին վերանորոգեց ԴՏ—34 մարկայի մեկ տրակտոր, սակայն 107 հեկտար փափուկ վար կատարելուց հետո այն նորից անցավ կապիտալ վերանորոգման։ Նման փաստեր կան նաև մյուս շրջաններում, որի հետևանքով էլ չեն պահպանվում միջվերանորոգման ժամկետները։

Տեխնիկայի անբավարար օգտագործման պատճառներից մեկն էլ, ինչպես նշվեց վերը, մեխանիզատորական կադրերի հոսունությունն է, որը հիմնականում հետևանք է նրանց աշխատանքում նյութական շահագրգռվածության սկզբունքի ոչ ճիշտ կիրառման։ Ուսումնասիրված սովխոզների մեծ մասում աշխատանքները սեղմ ժամկետում և որակով կատարելու համար լրացուցիչ վարձատրություն չի տրվել մեխանիզատորներին։

Սովխոզների գյուղատնտեսական տեխնիկայի օգտագործումը բարելավելու համար անհրաժեշտ է՝ մշակել գիտականորեն հիմնավորված նորմաներ (ելնելով ինչպես արտադրական, այնպես էլ ֆինանսական արդյունքից), սահմանելով, թե յուրաքանչյուր կուլտուրայի գծով քանի հեկտար ցանքսի դեպքում ինչպիսի մեքենաներ պետք է ունենան սովխոզները՝ ըստ գոտիների (հարթավայրային և լեռնային-նախալեռնային)։ Նորմաներ մշակելիս պետք է նկատի ունենալ, որ մեր ռեսպուբլիկայում գյուղատնտեսական աշխատանքները կատարվում են բարդ կլիմայական պայմաններում, իսկ սովխոզները տեղաբաշխված են ամբողջ ռեսպուբլիկայով մեկ։

Լեռնային և նախալեռնային շրջանների սովխոզներում գյուղատնտեսական

աշխատանքների (ինչպես ցանքի, այնպես էլ բերքահավաքի) տևողությունը, սովորաբար, ավելի երկար է, քան դաշտավայրային սովխոզներում։ Եթե դաշտավայրում հացահատիկի հունձը տևում է 10—12 օր, ապա լեռնային շրջաններում՝ 20—30 և նույնիսկ ավելի օր։ Այդ հետևանք է այն բանի, որ նույն սովխոզի որոշ հողամասերում բերքը հասունանում է ավելի շուտ, քան մյուսներում, ուստի, նույն քանակությամբ տեխնիկայով կարելի է կատարել ավելի շատ աշխատանք, քան հարթավայրային շրջաններում։ Տեխնիկայի պահանջը որոշելիս անպայման պետք է հաշվի առնել նաև սովխոզների դիրքային առանձնահատկությունները։

Տրակտորները, կոմբայնները և գյուղատնտեսական այլ մեքենաներ բարձր արտադրողականությամբ օգտագործելու համար անհրաժեշտ է խրախուսական վճարումներ սահմանել սովխոզների մեխանիզատորների, գյուղտեխնիկայի շրջանային բաժանմունքների և արտադրական վարչությունների ինժեներատեխնիկական աշխատողների համար։ Պետք է սահմանել խրախուսման շըրջանցված նորմաներ (փափուկ վարի, հնձի և այլնի գծով), որից բարձր ցուցանիշների հասնելու համար տալ խրախուսական վճարներ։

Հայտնի է, թե Վ. Ի. Լենինը նյութական շահագրգռվածության հետ միասին ինչպիսի նշանակություն էր տալիս նյութական պատասխանատվության սկզբունքի հետևողական կիրառմանը ինչպես պետական պլանների կատարման, այնպես էլ միջոցների ռացիոնալ օգտագործման բնագավառում։ «...տրեստներն ու ձեռնարկությունները հիմնված են տնտեսական հաշվարկի վրա հենց նրա համար, որպեսզի նրանք իրենք պատասխանատու լինեն և ընդ որում ամբողջապես պատասխանատու լինեն իրենց ձեռնարկությունների շահաբերության համար» (Վ. Ի. Լենին, Երկեր, հատ. 35, էջ 589)։ Գյուղատնտեսական տեխնիկայի արդյունավետ օգտագործման նպատակով նյութական պատասխանատվությունը, մեր կարծիքով, պետք է կրի հետևյալ բնույթը. վերը նշված նորմաներից ավելի ստացած տեխնիկայի համար սովխոզի դիրեկտորից, մեխանիկից, արտադրական վարչության և գյուղտեխնիկայի շրջանային բաժանմունքի համապատասխան աշխատողներից որպես տույժ գանձել ավելորդ տեխնիկայի մեկ տարվա ամորտիզացիոն հատկացումների ողջ գումարը, պարտավորեցնելով նրանց մեկ տարվա ընթացքում այդ տեխնիկան վաճառել այն կազմակերպություններին կամ տնտեսություններին, որոնք զգում են դրա կարիքը։

Կ. ԱԼԵՔՍԱՆՅԱՆ
Հայկական ՍՍՌ ֆինանսների մինիստրության սովխոզների ֆինանսավորման բաժնի պետ

Լ. ԱՆԱՆՅԱՆ
ՀՍՍՌ ԳԱ տնտեսագիտության ինստիտուտի ասպիրանտ



# ՈՉԽԱՐԱԲՈՒԾՈՒԹՅԱՆ ԻՆՏԵՆՍԻՎԱՑՄԱՆ ՈՒՂԻՆԵՐԸ ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ

Ոչխարաբուծությունը ռեսպուբլիկայի կոլտնտեսությունների և սովխոզների շահավետությունը բարձրացնելու խոշոր ռեզերվներից է։ Ռեսպուբլիկայի գյուղատնտեսության էկոնոմիկայում այն գրավում է կարևոր տեղերից մեկը և տալիս անասնաբուծության ապրանքային արտադրանքի 35—40 տոկոսը։ Կոլտնտեսությունների ու սովխոզների դրամական եկամուտների 11—12 տոկոսն ստացվում է ոչխարաբուծությունից. այդ ոլորտում զբաղված է գյուղատնտեսության մեջ աշխատող մարդկանց ոչ ավելի, քան 4 տոկոսը։

Ռեսպուբլիկայում արտադրվող մսի 30—33 տոկոսը կազմում է ոչխարի միսը, իսկ առանձին շրջաններում (Ազիզբեկով, Ապարան, Սպիտակ, Թալին, Մարտունի) այն հասնում է 50—55 տոկոսի։ Բավականին էժան է ոչխարի միսը. դրա ինքնարժեքը 1963 թվականին ռեսպուբլիկայի կոլտնտեսություններում կազմել է տավարի մսի ինքնարժեքի 58,6 տոկոսը։

Սակայն անհրաժեշտ է նշել, որ կոլտնտեսություններում ու սովխոզներում դեռևս անբավարար աշխատանք է տարվում ոչխարաբուծության ինտենսիվացման ուղղությամբ։ Այսպես, եթե ռեսպուբլիկայում յուրաքանչյուր կոլտնտեսություն ու սովխոզ միջին հաշվով ունի 1700 ոչխար, ապա նախալեռնային և լեռնային գոտու 260 տնտեսություններում ոչխարների գլխաքանակը 200—1500 է։ Նման փոքր գլխաքանակ ունեցող ֆերմաները կասեցնում են տնտեսությունների հնարավորությունների լրիվ օգտագործումը, արգելակում արտադրության ինտենսիվացումն ու կոմպլեքսային մեքենայացումը։

Որքան խոշոր են ֆերմաները, այնքան բարձր է նրանց տնտեսական արդյունավետությունը։ Օրինակ, 1960 թ. ռեսպուբլիկայում 3000 ոչխար ունեցող կոլտնտեսություններում, 250 գլուխ ոչխար ունեցող տնտեսությունների համեմատությամբ, 100 հեկտար հողատարածության հաշվով մսի համախառն արտադրանքը ավելի է եղել 1,77 և բրդինը՝ 1,92 անգամ։ Խոշոր ֆերմաներում արտադրված մսի ինքնարժեքը կազմել է փոքր գլխաքանակ ունեցող ֆերմաներում արտադրված մսի ինքնարժեքի 69, բրդի՝ 66 տոկոսը։

1963 թվականին ռեսպուբլիկայի կոլտնտեսություններում մեկ ցենտներ ոչխարի մսի ինքնարժեքը կազմել է 61, բրդինը՝ 319 ռուբլի, մինչդեռ Աշտարակի, Բասարգեչարի, Նոյեմբերյանի, Շամշադինի շրջանների տնտեսություններում այն անհամեմատ բարձր է եղել և համապատասխանաբար կազմել է 64 : 70 և 336 : 377 ռուբլի։

Մենք ունենք բազմաթիվ տնտեսություններ, ուր համեմատաբար արդյու-

նավետ են վարում ոչխարաբուծությունը և արտադրանքի ինքնարժեքն էլ ցածր է լինում։ Սիսիանի և Գորիսի շրջանների կոլտնտեսություններում մեկ ցենտներ ոչխարի մսի ինքնարժեքը (կենդանի քաշով) կազմել է 52—55, իսկ բրդինը՝ 269—270 ռուբլի։

Այդ արդյունք է այն բանի, որ տնտեսությունների ղեկավարները հաշվի են առնում անասնապահության ճյուղերի զարգացման հեռանկարները, կերի բազայի ընդարձակումը, նրա արտադրության ինտենսիվացումը և ողջ տնտեսությունը վարում են տնտեսական հաշվարկի համաձայն։

Նկատի ունենալով, որ ոչխարաբուծական մթերքների արտադրության վրա կատարվող ծախսումների մոտ 50 տոկոսը կազմում է կերը, այդ շրջանների տնտեսությունները ոչխարները պահում են համեմատաբար էժան կերով, ձմռանը՝ խոտով և մասամբ արոտով, իսկ տարվա մյուս եղանակներին առավել չափով օգտագործում են արոտները։ Դրա հետ միաժամանակ նրանք խտացրած կերի քանակը նվազագույնի են հասցրել։ Մեծ են այն տնտեսությունների ֆերմաները, որոնցում ոչխարների միջին գլխաքանակը կազմում էր 3050։

Ոչխարաբուծության զարգացման ամենահիմնական պայմանը կերի ամուր բազայի ստեղծումն է։ Սակայն շատ տնտեսություններ բավարարվում են մսուրային շրջանի համար յուրաքանչյուր ոչխարի հաշվով 1,0—1,5 ցենտներ խոտ կուտակելով։ Մսուրային ժամանակաշրջանը տևում է 120—150 օր. այսպիսով յուրաքանչյուր ոչխարի օրական կերաբաժինը չի գերազանցում 0,8—1,0 կիլոգրամ խոտից, որը կազմում է նորմալ պահանջի 50 տոկոսը։

Անբավարար կերակրման հետևանքով շատ ցածր է ոչխարաբուծության արտադրանքը։ Այդ պատճառով էլ սիստեմատիկաբար չի կատարվում մսի, բրդի և մատղաշի ստացման ու պահպանման առաջադրանքը։ Ռեսպուբլիկայում վերջին հինգ տարիների ընթացքում մեկ ոչխարի միջին բրդատվությունը կազմել է 2,2 կիլոգրամ, իսկ 100 մաքիից ստացվել ու պահպանվել են միայն 63—73 գառ։

Ոչխարաբուծական մթերքների արտադրությունը հիմնականում կարելի է բարձրացնել միայն կերի ամուր բազա ստեղծելու միջոցով։ Այդ նպատակով անհրաժեշտ է մսուրային ժամանակաշրջանի համար մեկ ոչխարի հաշվով կուտակել՝ խոտ 2—2,5, սիլոս՝ 1—2 և խտացրած կեր՝ 0,1—0,2 ցենտներ։

Անասունների կերաբաժնում շատ հաճախ սպիտակուցների պարունակությունը հազիվ է հասնում պահանջվող նորմայի 60—70 տոկոսին, որի հետևանքով կերի գերածախսը կազմում է 30—40 տոկոս, իսկ անասնաբուծական մթերքների արտադրությունը կրճատվում է ավելի քան մեկ երրորդով։

Ժամանակակից քիմիան խոշոր ազդեցություն է գործում ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի տեխնիկական առաջադիմության վրա։ Քիմիական միջոցներով արտադրվում են սպիտակուցների և վիտամինների փոխարինողներ, զանազան բիոլոգիական ակտիվ խթանիչներ ու հարստացուցիչներ, հանքային կեր, բուժիչ և հիվանդությունները կանխող խմունոգեն նյութեր։ Քիմիան լրացնում է նաև ոչխարների կերաբաժնում անհրաժեշտ սպիտակուցային նյութերի պակասը։ Ապացուցվում է, որ մսուրային շրջանում ոչխարներին տրվող կերին մեկ կիլոգրամ միզանյութ (կարբամիդ) խառնելով կարելի է լրացուցիչ ստանալ՝ 1—2 կգ միս, 90—150 գր բուրդ։

Անասնաբուծական մթերքների արտադրության ավելացման այնպիսի գործոնների հետ մեկտեղ, ինչպիսիք են՝ մթերատու անասունների գլխաքանակի



աճը, նրանց կերակրման ու խնամքի պայմանների բարելավումը, խոշոր նշանակություն ունի նաև տոհմային աշխատանքը, մասնավորապես նրա կարևոր օղակներից մեկը՝ ցեղի բարելավումը և կատարելագործումը։

Տոհմային աշխատանքը լավագույն ձևով կազմակերպելու միջոցով տարեցտարի կբարելավվի կենդանիների ցեղական կազմը, մթերատու և տոհմային հատկություններն ու դրա հիման վրա անընդհատ կկատարելագործվի հոտը, կավելանա անասնապահական մթերքների համախառն արտադրանքը։

Մեր ռեսպուբլիկայում ոչխարաբուծության համար հիմնականում ընդունված է կիսանրբագեղմ ուղղությունը, ուստի և անհրաժեշտ է ռեսպուբլիկայի լավագույն տնտեսություններում կազմակերպել տոհմային ֆերմաներ, որոնք ամեն տարի, պլանային կարգով տոհմային կենդանիներ կվաճառեն մյուս տնտեսություններին։ Նման տնտեսություններ նպատակահարմար է կազմակերպել Զանգեզուրի, հյուսիս արևելյան, Սևանի ավազանի, Շիրակի և Լոռի-Փամբակի գոտու շրջաններում։

Ոչխարաբուծության ինտենսիվացման համար առաջին հերթին անհրաժեշտ է արմատական վերափոխում կատարել հոտի վերարտադրման աշխատանքներում և ներդնել զոոանասնաբուժական և տնտեսական կոմպլեքս միջոցառումներ, ընտրել զուգավորման և ծնի լավագույն ժամկետներ ու տնտեսությունների ռեալ հնարավորություններից ելնելով, աշխատանքի ու միջոցների համեմատաբար փոքր ծախսումներով ապահովել այդ ճյուղի բարձր արտադրողականությունն ու եկամտաբերությունը։

Ոչխարաբուծության զարգացմանը և արտադրանքի առավել ավելացմանը խոշոր չափով արգելակում է հոտի ոչ ռացիոնալ կառուցվածքը։ Կոլտնտեսությունների ու սովխոզների ոչխարների ընդհանուր գլխաքանակում մաքիների տեսակարար կշիռը կազմում է 55—56 տոկոս։ Ոչխարաբուծական մթերքների արտադրությունն ավելացնելու նպատակով անհրաժեշտ է ներդնել հոտի այնպիսի կառուցվածք, որ աշխատանքի ու միջոցների հիմնական ծախսումները ուղղված լինեն հոտի վերարտադրողական մասի առավել պահպանմանը, որը հնարավորություն կընձեռի գլխաքանակի տարեկան պլանի կատարման հետ միասին մեծ չափով կրճատելու ձմեռման գնացող մինչև մեկ տարեկան արու մատղաշի գլխաքանակը, հոտում մաքիների տեսակարար կշիռը 55-ից 75—78 տոկոսի հասցնելու համար։

Այս միջոցառման իրականացմամբ, մեր հաշվումներով, ոչխարի մսի արտադրությունը կավելանա 15,7, բրդինը՝ 7,6, կաթինը՝ 36,4 տոկոսով, որն, իր հերթին, կնպաստի արտադրանքի ինքնարժեքի իջեցմանը, իսկ կոլտնտեսություններն ու սովխոզները յուրաքանչյուր տարի կստանան 3,2 միլիոն ռուբլի լրացուցիչ դրամական եկամուտ, որը կկազմի ոչխարաբուծությունից ստացվող դրամական ընդհանուր եկամուտների 17 տոկոսը։

Կոլտնտեսություններում և սովխոզներում այդ միջոցառման ներդրմամբ հնարավոր է 1967 թ. մաքիների գլխաքանակը այժմյան 780 հազարից հասցնել մեկ միլիոնի և տարեկան 900—950 հազար գառ ստանալ, որի 50 տոկոսը որպես արուներ արոտային գիրացումից հետո, 8—9 ամսականում իրացնել որպես միս, դրանով իսկ կանխելով մինչև մեկ տարեկան արու մատղաշի մսուրային խնամքը և դրա հետ կապված անարդյունավետ ծախսումները։

Մինչև այժմ իշխել է այն սխալ կարծիքը, որ, իբր, տնտեսապես ձեռնտու չէ ընթացիկ տարվա արու մատղաշի վաճառքը։ Սակայն առաջավորների փորձը

հիմնովին հերքեց այդ։ Հաշվարկումները ցույց են տալիս, որ մինչև մեկ տարեկան արու մատղաշի խրացման շնորհիվ բարձրանում է մաքիների տեսակարար կշիռը հոտում, ավելանում են ոչխարաբուծական մթերքների արտադրանքը, եկամտաբերությունը, իսկ մատղաշի մսի ինքնարժեքը, հասակավոր ոչխարի համեմատությամբ, մեծ չափով իջնում է։ Փորձը ցույց է տալիս, որ արոտային պայմաններում խառնացեղ (կիսանրբագեղմ և կիսակոպտաբուրդ) արու գառները լավ գիրանում են և առանց լրացուցիչ կերակրման դրանց կենդանի քաշը աշնանը հասնում է 36—41 կգ, իսկ մսեղիքը կշռում է 17—19 կգ։

Մեկ տարի պահելուց և կերակրելուց հետո մատղաշի կենդանի քաշը հասցվում է 48—50 կգ, իսկ սպանդային քաշը՝ 22—24 կգ։ Քաշաճի այդ տարբերությունն այնքան փոքր է, որ չի արդարացնում մեկ տարվա ընթացքում մատղաշի վրա կատարված կերի և աշխատանքի լրացուցիչ ծախսումները, որի հետևանքով էլ բարձրանում է 1,5 տարեկան և ավելի մեծահասակ արու ոչխարների մսի ինքնարժեքը։

Այդ չափազանց կարևոր խնդիրը հաջողությամբ կարելի է լուծել ալպիական հարուստ արոտների ռացիոնալ օգտագործման և ոչխարների ամառային սերմնավորում (ձմեռային և վաղ գարնանային ծին) կազմակերպելու միջոցով։ Ձմեռային և վաղ գարնանային ծնից ստացված մատղաշը լավ է ընտելանում բարձրադիր լեռնային անբարենպաստ պայմաններին, ի վիճակի է առավել չափով օգտագործել արոտների հարուստ բուսականությունը, ընդ որում արոտային գիրացման ենթարկվող 5—6 ամսական մատղաշներն արագ են աճում։

Ռեսպուբլիկայի գարնան-ամառային ընդարձակ արոտավայրերում արածում են մոտ 3 միլիոն գլուխ մանր եղջերավոր անասուն, սակայն այդ տարածությունները բարելավելու և նրանց ռացիոնալ օգտագործումը կազմակերպելու միջոցով հնարավոր է այնտեղ մինչև 5 միլիոն գլուխ ոչխար պահել։ Ելնելով ամառային արոտների ռացիոնալ օգտագործման անհրաժեշտությունից, ինչպես նաև մատղաշի ինտենսիվ աճի բիոլոգիական առանձնահատկությունից, անհրաժեշտ է արոտային գիրացման ենթարկել և խրացնել 8—9 ամսական արու գառները, որպես էժան միս։

Հայտի է, որ մեկ միավոր քաշաճի համար համեմատաբար քիչ կեր է ծախսվում մատղաշի աճեցման ու գիրացման ժամանակ։ Այսպես, հասակավոր ոչխարների մեկ կիլոգրամ քաշաճի համար ծախսվում է 10 և ավելի կգ կերային միավոր, իսկ 3—8 ամսական մատղաշի՝ մոտ 7 կերային միավոր։ Ոչխարաբույծների առաջնահերթ խնդիրն է՝ օգտագործել մատղաշի բիոլոգիական աճի այդ առանձնահատկությունը և մյուս կողմից լավ կազմակերպել նրանց արոտային գիրացումը։

Ոչխարաբուծության ինտենսիվացման հիմնական հարցերից մեկն էլ մաքիների զուգավորման ժամկետների ճիշտ սահմանումն է։ Այդ միջոցառման կիրառմամբ հնարավոր է ստանալ ամրակազմ սերունդ և աճեցնել տեղի պայմաններին լավ հարմարված, առողջ և բարձր մթերատու կենդանիներ։

Ռեսպուբլիկայի տարբեր գոտիներում ոչխարների զուգավորման և ծնի ժամկետները տարբեր են։ Զուգավորման և ծնի ժամկետները պայմանավորվում են՝ կոշտ, հյութալի, խտացրած կերի ապահովվածությամբ, բարեկարգ ոչխարանոցների, աշնանա-ձմեռային արոտների և բավարար թվով աշխատող ձեռքերի առկայությամբ։

Առաջավոր տնտեսությունների փորձը ցույց է տալիս, որ ոչխարաբուծու-



թյան մեջ ամենաարդյունավետը ձմեռային և վաղ գարնանային ծինն է։ Դեկտեմբեր-փետրվար ամիսներին ծնված գառը մինչև արոտային շրջանն սկսվելը ավելի ամրակազմ է լինում, հեշտ է մարսում բարձրադիր արոտների հարուստ բուսականությունը, լավ է հարմարվում բնակլիմայական պայմաններին։ Գարնանային ծնից ստացված մատղաշի համեմատությամբ, ձմեռային և վաղ գարնանային ծնից ստացված 8—9 ամսական մատղաշի կենդանի քաշը 8—13 և բրդատվությունը 0,4—0,6 կիլոգրամով բարձր է լինում։ Այս նկատառումով էլ կարելի է աշնանը՝ ձմեռային և վաղ գարնանային ծնից ստացված ամբողջ արու մատղաշն խրացնել, չպահել հաջորդ տարին, տեղի չտալով անարդյունավետ ծախսերի։

Ռեսպուբլիկայի բնատնտեսական տարբեր պայմաններից ելնելով կարելի է ոչխարների զուգավորումն ու ծինն անցկացնել հետևյալ ժամկետներում.

1. Զանգեզուրի գոտու և Արարատյան դաշտավայրի տնտեսություններում զուգավորումը պետք է անցկացնել հուլիս—սեպտեմբեր ամիսներին, որպեսզի ծինն ընդունվի դեկտեմբեր—փետրվարին։

2. Միջին լեռնային գոտու տնտեսությունների մեծ մասում՝ օգոստոս—սեպտեմբեր ամիսներին, որպեսզի ծինն ընդունվի հունվար—փետրվարին։

3. Բարձրադիր լեռնային շրջաններում, որտեղ մսուրային խնամքը երկարատև է (5—6 ամիս)՝ հոկտեմբերին, որպեսզի ծինն ընդունվի մարտին։

Ոչխարաբուծական մթերքների արագ ավելացման համար անհրաժեշտ է խոր մասնագիտացում և արտադրության կենտրոնացում՝ հաշվի առնելով յուրաքանչյուր տնտեսության բնատնտեսական պայմանները։

Ոչխարաբուծության մասնագիտացումը կփոխի արտադրական պրոցեսների բնույթը, արոտային շրջանում ոչխարի գլխաքանակը կհասցվի առավել չափերի, իսկ մսուրային շրջանի սկզբում այն կկրճատվի 37—40 տոկոսով։

Հաշվարկումները ցույց են տալիս, որ նախալեռնային ու լեռնային շրջաններում ոչխարաբուծական փոքր ֆերմաները խոշորացնելու և ռեսպուբլիկայի միջին մակարդակին հասցնելու դեպքում ոչխարների գլխաքանակը նրանցում կավելանա 170 հազարով։

Անասնապահական տնտեսություններում ոչխարաբուծության կենտրոնացմամբ հնարավոր կլինի խոշոր չափով մեքենայացնել աշխատատար պրոցեսները, արդյունավետ օգտագործել կերային ռեսուրսները, բարելավել տոհմային աշխատանքը, բարձրացնել համախառն և ապրանքային արտադրանքը։

Ոչխարաբուծության զարգացման այդ ուղին հնարավորություն կտա ինտենսիվ վարել տվյալ ճյուղը և զարգացնել շահութաբեր խոշոր տնտեսություններ։

Ոչխարաբուծության առանձնահատկությունների շնորհիվ ոչխարի միսը, տավարի մսի համեմատությամբ, բավականին ցածր ինքնարժեք ունի։ Մի շարք շրջանների տնտեսություններում ոչխարի մսի ինքնարժեքը կազմում է տավարի մսի ինքնարժեքի 40—56 տոկոսը (Ղուկասյանի, Գորիսի, Սիսիանի, Շամշադինի, Կրասնոսելսկի, Սպիտակի շրջաններում)։ Հենց այդ տեսակետից էլ յուրաքանչյուր տնտեսություն, իր պայմաններից ելնելով ու հաշվի առնելով ժողովրդական տնտեսության պահանջները, պետք է որոշի, թե որն է շահավետ, ավելի շատ արտադրել ոչխարի՞, թե՞ տավարի միս, բո՞ւրդ, կա՞թ, թե մի այլ մթերք։

Բնութագրելով ոչխարաբուծության ինտենսիվացման հիմնական հարցերը և հաշվի առնելով կոլտնտեսային-սովխոզային արտադրության բնատնտեսա-

կան պայմանները, ոչխարաբուծության տեսակարար կշիռը, ինչպես նաև այդ
ճյուղի զարգացման հեռանկարները, ռեսպուբլիկայի ոչխարաբուծության մաս-
նագիտացման վերաբերյալ կարելի է անել հետևյալ եզրակացությունը։
Այն տնտեսությունները, որոնք ոչխարաբուծության զարգացման համար
նպաստավոր պայմաններ ունեն և տալիս են ավելի շատ ու ցածր ինքնարժե-
քով արտադրանք, պետք է ավելի խոր մասնագիտացվեն այդ ուղղությամբ։
Մեր կարծիքով այդ, առաջին հերթին, վերաբերում է՝ Անիի, Ապարանի, Բա-
սարգեչարի, Մարտունու, Գորիսի, Եղեգնաձորի, Ազիզբեկովի, Թալինի շրջան-
ների տնտեսություններին։
Կոլտնտեսությունների և սովխոզների երկար տարիների աշխատանքային
փորձը ցույց է տվել, որ ռեսպուբլիկայի պայմաններում ոչխարաբուծության
ամենաշահավետ ուղղությունը կիսանրբագեղմն է, որովհետև տրամախաչու-
մից ստացված կիսանրբագեղմ խառնացեղ ոչխարները լրիվ չափով զուգակ-
ցում են նրբագեղմ և կոպտաբուրդ ցեղերի տնտեսական ու բիոլոգիական օգ-
տակար հատկությունները։
Վերոհիշյալի հիման վրա ռեսպուբլիկայի ոչխարաբուծությունը, մեր կար-
ծիքով, պետք է զարգանա հետևյալ ուղղությամբ՝
ա) Եղեգնաձորի, Ազիզբեկովի, Մարտունու և Վեդու շրջանների տնտեսու-
թյուններում մաս-բրդակաթնային (կոպտաբուրդ) ուղղությամբ, որտեղ մա-
քուր վիճակում պետք է բուծվի ռեսպուբլիկայում կոպտաբուրդ ոչխարներից
լավագույնը ճանաչված բալբաս ցեղը։
բ) Մյուս շրջաններում, որտեղ բուծվում են նրբագեղմ (կովկասյան, պրե-
կոս) և կոպտաբուրդ ոչխարների խառնացեղեր, մաս-բրդակաթնային (կիսա-
նրբագեղմ) ուղղությամբ։
Աշխատանքի կազմակերպման գործում ուսանելի է Ստավրոպոլի երկրա-
մասի, Բուրյաթական ԱՍՍՌ-ի և Ղազախական ՍՍՌ-ի սովխոզների և կոլտըն-
տեսությունների տնտհաշվարկային կոմպլեքսային մեքենայացված հովվական
բրիգադաների կազմակերպման առաջավոր փորձը։ Այդ բրիգադաները ոչխար-
ների արածեցումից ու խնամքից բացի, իրենց ուժերով խոտ և սիլոս են հայ-
թայթում։ Առաջներում հովիվը միայն արածեցնում, կերակրում և խնամում էր
ոչխարներին, իսկ ոչխարաբուծության մյուս աշխատանքները կատարում էին
ուրիշները։ Տնտհաշվարկային կոմպլեքսային մեքենայացված բրիգադաներին
ամրացվում են անհրաժեշտ խոտհարք և արոտամաս, խոտհնձող մեքենաներ,
քարշող ուժ, սայլեր և այլ ինվենտար։
Այդ բրիգադաների աշխատանքային փորձը հաստատեց նրանց կազմա-
կերպման տնտեսական արդյունավետությունը. աշխատանքի վարձատրու-
թյունն այնտեղ կատարվում է ըստ ոչխարաբուծության արտադրանքի և կու-
տակված կերի։
Կոմպլեքսային մեքենայացված հովվական բրիգադաների կազմակերպու-
մը հաջողությամբ կարող է իրականացվել նաև մեր ռեսպուբլիկայի ոչխարա-
բուծական և մյուս ֆերմաներում, որպես աշխատանքի կազմակերպման պրո-
գրեսիվ միջոց, որը կխթանի անասնաբուծության զարգացմանը և նրա մթե-
րատվության բարձրացմանը։

Լ. ԲՈՒԽԲԵԿՅԱՆ
ՀՍՍՌ վաստակավոր զոոտեխնիկ

---

# ՌԵՎՈԼՅՈՒՑԻԱՅԻ ՎԵՏԵՐԱՆՆԵՐԸ

ԱՇՈՏ ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ

*Հայկական ՍՍՌ ԳԱ ակադեմիկոս*

## ՀՈՒՇԵՐ ԵՎ ԽՈՀԵՐ ՍԱՐԳԻՍ ՍՐԱՊԻՈՆՅԱՆ-ԼՈՒԿԱՇԻՆԻ ՄԱՍԻՆ

*(Ծննդյան 80-ամյակի առթիվ)*

Պատմական այն բեռը, որ ժառանգություն էր մնացել Հայաստանի աշխատավորությանը հայ բուրժուափիայի քաղաքականությունից և նրա դաշնակցական սպասարկուների տիրապետությունից, վառվեց ու ոչնչացավ 1920 թվականի մայիսյան ու նոյեմբերյան ապստամբությունների և 1921 թվականի քաղաքացիական կռիվների բովում: Հայ ժողովրդին թանկ նստեց, մանավանդ, Սևրի դաշնագրի խոստումներից թեժացած հայ-թուրքական պատերազմը, որի հետևանքով թշնամու ավար դարձան Կարսի մարզը և Սուրմալուն: Եվ դեռ շարունակվում էին Զանգեզուրում որձացած Նժդեհի արյունոտ խեղկատակությունները, երբ Երևան հասան Լենինի պատգամաբերները՝ Ալեքսանդր Մյասնիկյանը և Սարգիս Սրապիոնյան-Լուկաշինը:

Դժվար է պատկերացնել գործիչների, որոնք այնքան շատ ընդհանուր բան ունենային և, միաժամանակ, այնքան տարբեր լինեին իրենց խառնվածքով ու բնավորությամբ, որքան այդ երկուսը: Համերկրացիներ էին, մանկության ու պատանեկության ընկերներ, հզոր կամքի ու եռանդի տեր, անվերապահորեն նվիրված կոմունիզմի գործին ու գաղափարին: Սակայն ակընբախ է նաև աշխատելու և մտածելու, գործելու և ղեկավարելու նրանց տարբերանշող ոճը:

Խոշոր պարտիական ու պետական գործիչ էր Մյասնիկյանը, կորահրամանատար ու դիպլոմատ միաժամանակ: Հանգիստ ու կուսպ էր նա, ծանրախոհ ու դանդաղաշարժ: Մտաբերում եմ բանավարության նրա եղանակը: «Այդպես կարծո՞ւմ եք, թերևս արդարացի եք», կասեր անուշ ժպիտով և կթվար, թե կարողացել եք վերանամոլել նրան: Բայց դա սոսկ Մյասնիկյան քաղաքագետի հարուցած պատրանքն էր: Հաճախ նա շարունակում էր մտածել ու վարվել այնպես, ինչպես ինքն էր ուղիղ համարել նախապես:

Հիշում եմ նրա մտքի անդորրությունը, երբ հատու և վճռական կարգադրություններով վերջ էր դնում Նժդեհի խելառ փորձին՝ խուժել իր հրոսախմբերով Երևան՝ «Հայաստանի փրկության» օրապակաս կառավարությունը վերականգնելու համար: Նրա հոգու բացառիկ անխռովությունն էր վերապատկերում Սերգեյ Կիրովը Բաքվի սովետի ագո նիստում, երբ ասաց. եթե հարցնեիր, թե ի՞նչ երգ կկամենար լսել վառվող ինքնաթիռի հետ գահավիժող ընկեր Մյասնիկյանը, նա կպատասխաներ՝ «Ինտերնացիոնալ»:

Այլ էր Լուկաշինը: Գյուղացու պավակը ամրակազմ էր ու ջլապինդ, արտաքուստ փոքր-ինչ կոշտ, բայց անմիջական ու սրտաբաց, իմպուլսիվ ու արագաշարժ: Բացահայտորեն պաշտպանում էր իր համոզումները, բայց և կարող էր վերահամոզվել, երբ լսում էր հիմնավոր պատճառաբանություն:

Տարբեր եղավ նաև երկուսի հետմահու գնահատականը: Մյասնիկյանը սոսկ պետական մարդ չէր, այլև գրչի մարդ՝ ժուռնալիստ և քննադատ, հռետոր ու տեսաբան: Դժվար չէ կարդալ նրա բազմաթիվ ճառերն ու գրվածքները, խնամքով դասավորված թղթերն ու նամակները՝ նրա պարզ ու հստակ մտածումների ու խոհերի ընթացքը վերապատկերելու համար:

Այդպես չէր Լուկաշինը: Գրական գործեր ու հիշատակներ նա չի թողել և գրող ու հեղինակ

լինելու պատրանք չի ունեցել երբեք: Նրա հայացքները մեկ են հասել գլխավորապես նրա հակիրճ առաջարկների ու բանաձևերի միջոցով, որոնք արձանագրվում էին Հայաստանի ու Անդրկովկասի պետական ու կուսակցական օրգանների նիստերին: Ուստի և դժվար է նրան նշմարել այդ օրգանների գործունեության սահմանագծերից դուրս: Ամբողջ նրա գործունեությունն ամփոփված է հասարակական-քաղաքական պարփակ պրակտիկայի շրջանակներում:

Սովորաբար ելույթներ էր ունենում նա նիստերի վերջում: Ի մի բերելով եղած առաջարկները, գործնական և սուր դիտողություններով երբեմն անակնկալ ընթացք էր տալիս տեղի ունեցած մտափոխանակումներին և լիցք ու հեռանկար՝ ընդունվելիք որոշումներին: 1921 թվականին Հայաստանի ժողկոմխորհի նիստերին նախագահող Մյասնիկյանին հաճախ մնում էր միայն կառավարական վճիռների ձև տալ նրա բանաձևումներին:

Մեծ էր Լուկաշինի գործիմացության ու փաստարկումների կշիռը նաև պարտիայի անդրկովկասյան կոմիտեի նախագահության մեջ: Սերգո Օրջոնիկիձեն, ,որ բացառիկ վստահություն ուներ նրա նկատմամբ և բարձր արժեք էր ընծայում նրա գործիմացությանը, վերջ տալով տաք վեճերին, հաճախ դիմում էր Լուկաշինին՝ թելադրելու իր առաջարկները նիստերն արձանագրող քարտուղարին. թելադրվածը քվեարկության էր դրվում և գրեթե միշտ ընդունվում առանց էական լրացումների: Այս կարող եմ վկայել, վերհիշելով Հայաստանի ժողկոմխորհի և Անդրկովկասյան երկրկոմի նախագահության այն նիստերը, որոնց ինքս եմ մասնակցել:

Այս առանձնահատկությունների բերումով հասկանալի է, գուցե, թե ինչու Լուկաշինը չունի տակավին իր արժանի կենսագրությունը և իր կշռույթին ու կատարած դերին արժանի՝ տպագիր լիարժեք գնահատականը:

Սակայն անցնեմ հուշերիս այն էջերին, որոնք վերաբերում են Լուկաշինի գործունեության այն շրջանին, որի գլխավոր դերակատարներից մեկն էր նա, որպես Հայաստանի կոմկուսի քարտուղար կամ ժողկոմխորհի նախագահ:



Առաջին իսկ ակտիվի ժողովում, որ տեղի ունեցավ Մյասնիկյանի և Լուկաշինի ժամանումից անմիջապես հետո նրանք կանգ առան Կովկասի կոմունիստներին Լենինի հղած նշանավոր նամակի և հատկապես պարտիայի նոր տնտեսական քաղաքականության սկզբունքների պարզաբանության վրա: Ղամարլուի և Ելենովկայի համառ կռիվներից հետո լարված ուշադրությամբ հետևում էինք մեծ առաջնորդի նոր մտքերին և լսում նրա պատգամաբերների, անդրանիկ խորհրդածությունները ավերված Հայաստանի վերականգնման հեռանկարների մասին:

Մյասնիկյանի ու Լուկաշինի անդրանիկ հոգսը եղավ Ռուսաստանից ստացված 1,5 միլիոն ոսկու ֆոնդի և մոտ 5 միլիոն ոսկի ռուբլու արժողության ապրանքների հաշվին ամոքել փետըրվարյան ավանտյուրայի հետևանքով երկրում սաստկացած փլուզումն ու սովը: Միջոցներ հայթայթվեցին գյուղական կործանված բնակատեղիներն ու քայքայված տնտեսությունները վերականգնելու և բնակչության տարրական պետքերը հոգալու համար: Սովատանջ աշխատավորությանը մատակարարվում էր կենսամթերք, նավթ, մանուֆակտուրա, բաշխվում Պարսկաստանում գնված անասուններն ու սերմացուն:

Սակայն Սովետական Հայաստանը չէր կարող ոտքի կանգնել, հույս դնելով սոսկ ստացվող նպաստների վրա: «Մենք չենք կարող գոհանալ սոսկ մեկ մատուցվող արտաքին օգնությամբ,— ասաց Լուկաշինը Հայաստանի սովետների երկրորդ համագումարում,— մենք կարող ենք շահ ստանալ միայն մեր շինարարություններից»:

Երկաթուղային հաղորդակցության և ապրանքափոխադրումների վերականգնումը Անդրկովկասյան հանրապետությունների և Ռուսաստանի հետ, թուրքական օկուպացիոն ռեժիմի վերացումը Շիրակում, Անդրկովկասի ֆեդերացման առաջին քայլերը և, վերջապես, նոր տնտեսական քաղաքականության սկզբունքների հետևողական կիրառումը կենդանություն էին ներարկում Հայաստանի տնտեսության ընդարմացած երակներին: Ամրանում էր գյուղի և քաղաքի տնտեսական կողումը և նյութական պայմաններ էին ստեղծվում սոցիալիստական արդյունաբերության նախադրյալների առաջացման համար:

Գյուղատնտեսության վերհառնման պայմաններից առաջինը հանդիսացավ հողաշինարարությունը, որը վերջ դրեց կոռբաների հողային գերիշխանությանը: «Ընդարձակի՛ր հողատարածությունդ», ջարդարարական ու հափշտակողական նշանաբանը փոխարինվեց «Բարձրացրո՛ւ հողամշակմանդ կուլտուրան» խաղաղարար ու կենսաբեր նշանաբանով: Հայաստանի կոնկրետ պայմաններում նշանաբանների այս հերթափոխությամբ էր սկսվում գյուղի սոցիալ-տնտեսական մեծ տեղաշարժը՝ հանգելով Վ. Ի. Լենինի պատգամած ոռոգման ցանցի ընդլայնմանը: Երևանի, Էջմիածնի, Էվջիլարի, Շիրակի ջրանցքների շինարարությունը և Կարճևանի, Արապդայանի, Փոքր Սարդարապատի և Այղր լճի հետագա կառուցումները հանդիսանում էին հողերի



ոռոգման այն նշանաձողերը, որոնցով հնարավորություն էր ստեղծվում տասնյակ հազարավոր հեկտարներով ընդլայնելու աշխատավոր գյուղացիության մշակելի հողատարածությունը և կյանքի կոչելու խամրած բամբակագործությունը և տեխնիկական այլ կուլտուրաների մշակումը:

Այս նախաձեռնումները Լենինի ուղենշող նամակի արձագանքն էին: Սակայն Լենինի հրահանգումները կոնկրետացնելու ու կենսագործելու և դրանց շուրջը Հայաստանի կոմունիստներին ու աշխատավորությանը համախմբելու և ոգեշնչելու գործում վճռական էր Լուկաշինի դերը: Ռուսաստանում կուտակած նրա փորձն ու գործիմացությունը, տնտեսագիտական մտահորիզոնը և տեխնոլոգիական իրազեկությունը բացառիկ նշանակություն ունեցան երկրում ծավալված եռուկեռին արգասավոր ընթացք տալու համար:

Գլխավորելով Հայաստանի կոմպարտիան, կամ վարելով սովետական կառավարության ղեկը՝ նա սովորեցնում էր կադրերին, լիցք ու ուղղություն տալիս նրանց: Հայաստանի աշխատավորությունը թևակոխում էր կառուցողական ռոմանտիկայի այն շրջանը, երբ, ինչպես ասում էր Լուկաշինը, «Փոքր, գործերն ու ջանքերը չէին փարագուրում հեղափոխության հիմնական նպատակները և, ընդհակառակը՝ մեծ նպատակները ոչ թե թուլացնում, այլ ուժեղացնում ու ոգեշընչում էին միլիոնավոր պանգվածների եռանդը «փոքր» գործերի բնագավառում»:

Ի տարբերություն որոշ ընկերների, որոնք բութ համառությամբ կառչում էին այն նախապաշարումին, թե Հայաստանը է և պիտի լինի ագրարային երկիր, Լուկաշինը ուներ այն համոզումը, թե մեր երկրի զարգացումը կարող է և պիտի առաջ սլանա ինդուստրացման ուղիով: Գյուղատնտեսության հետագա զարգացումն իսկ, ասում էր նա, անհնարին պիտի լինի առանց սոցիալիստական արդյունաբերության, որն, իր հերթին, առաջատար գործոն պիտի դառնա կոոպերացման ուղիով ընթացող գյուղատնտեսության նկատմամբ: Նրա ձգտումն էր, որ մեր երկրի արդյունաբերության պլանավորումն առաջ գնա այն ուղղությամբ, որպեսզի հումույթների մշակումը ըստ կարելույն կատարվի նրանց արդյունահանման մոտ վայրերում: Այս ուղեգիծը «փակ տնտեսություն» չէր, ինչպես բամբասում էին ազգատիմաց դեմագոգներից ոմանք, այլ պարտիական իմաստուն վարքագիծ, որ համընկնում էր Լենինի տնտեսական և ազգային քաղաքականության հետ:

Ի՞նչ խոսք կարող էր լինել «փակ տնտեսության» մասին, երբ ինդուստրացման շնորհիվ է միայն, որ Սովետական Հայաստանը կարողացավ ոչ միայն տնտեսապես լծորդվել Կովկասյան հանրապետությունների և Սովետական Միության տարբեր շրջանների, այլև հետզհետե առևտրական հաղորդակցության մեջ մտնել աշխարհի տասնյակ պետությունների հետ: Ակներև չէ՞, որ «փակ տնտեսության» կշտամբանք մոգոնողներն արտահայտում էին փաստորեն այն տեսաբանների մտայնությունը, որոնք Հայաստանի ապագան տեսնում էին սոսկ գյուղատընտեսության մեջ:

Ցարիզմի գաղութային քաղաքականության հետքերը վերացնելու ուղիով էին կարգանալու ո՛չ միայն Ղափանի և Ալավերդու պղնձարդյունաբերությունը, այլև Լենինականի մանածագործարանը և արդյունաբերական բազմաթիվ այն նորակառույցները, որոնք ծնունդ առան մեկ մոտ հետագայում, խթաններ ստեղծելով նաև գյուղատնտեսության զարգացման լենինյան կոոպերատիվ պլանի կենսագործման համար:

Հին սերնդի մարդիկ լավ են հիշում նորաշինությունների աննախընթաց այն պաֆոսը, որով թևավորված էին այս պահին Հայաստանի պարտիական ու կոմերիտական կազմակերպությունները և անպարտիական լայն պանգվածները: Մերթընդմերթ կազմակերպվող շաբաթօրյակներին մասնակցում էին նույնիսկ պիոներական մասերը, պատանի դպրոցականներն ու պատկոմականները: Պետության հատկացրած միջոցներից զատ ջրանցքների շինարարության կամ գործարանների կառուցման համար դրամական կամ աշխատանքային կամավոր ներդրումներ էին անում բանվորներն ու գյուղացիները: Անցյալի գիրկն էր սուզվում որբերի և գաղթականների, սովի և համաճարակի, մահտարաժամի և ցնցոտիների Հայաստանը, ասպարեզ բացելով բերրի դաշտերի և բանուկ մեքենաների առաջ: Ոռոգվում ու վերակենդանանում էին Շիրակի ու Արարատյան դաշտի կորդացած տափաստանները, ծավալվում փոքր ու մեծ էլեկտրակայանների կառույցները, լույս ու եռանդ առնում Ղափանի և Ալավերդու, Երևանի և Ալեքսանդրապոլի հին ու նոր ձեռնարկությունները: Գավառական կենտրոններն սկսում են միանալ իրար հետ խճուղիների ցանցով:

Հետզհետե պայմաններ էին առաջանում մասնակի նախաձեռնումներից պլանային տնտեսության անցնելու համար: Պլանավորվում էր ո՛չ միայն արդյունաբերությունը, այլև քաղաքաշինությունն ու գյուղաշինարարությունը: Լուկաշինի պլանային նախագծումների շարքը մտան Ձորագէսի շինարարությունը և, հատկապես, նրա էլեկտրակայանի ուժով Կամենկա գետակի վրա ապոտային պարարտանյութի գործարանի կառուցումը: Ի վերջո նա ընդհուպ մոտեցավ նաև Սևանգէսի ու Երևանի քիմգործարանի շինարարության հարցերին: Անգամ Թբիլիսի ու Մոսկվա

փոխադրվելուց հետո Հայաստանի ղեկավարները՝ Սաքո Համբարձումյանը և Սահակ Տեր-Գաբրիելյանը, անընդհատ խորհուրդներ ու աջակցություն էին խնդրում նրանից: Բերիական շկոլայի խանդոտ ու փոքրոգի գործիչներից ոմանք, իրապեկ դառնալով դրան, անհանգստանում էին: Եվ բացառված չէ, որ դա էլ հենց պատճառներից կամ մոտիվներից մեկը եղած լինի Լուկաշինի և Տեր-Գաբրիելյանի դեմ հետագայում հանված հալածանքների ու զրպարտանքների համար:

Գյուղատնտեսական և արդյունաբերական կառուցումներին համընթաց հարկ էր հոգալ նաև բանվորական ու տեխնիկական որակյալ կադրերի պատրաստման մասին:

Ոմանք տրտնջում էին, թե անգրագիտության վերացման և պարտադիր ուսուցման համար տարրական դպրոցների ցանցն ընդլայնելու փոխարեն տարվում ենք միջնակարգ դպրոցների, համալսարանի, գիտության և արվեստի ինստիտուտի, կենտրոնական գրադարանի, պետթատրոնի, թանգարանի և նման այլ հիմնարկների գործերով: Քննադատողներն անտեսում էին, որ դպրոցական ցանցի ընդլայնման համար հարկավոր են ուսուցչական կադրեր: Եվ հենց դրա համար էլ անհրաժեշտ էր ուշադրություն բևեռել միջին և բարձրագույն դպրոցների ու գիտհիմնարկների վրա: Իրեն հատուկ իրատեսությամբ մոտենալով այդ հարցերին, 1926 թ. Լուկաշինը գրում էր. «Եթե նախընթաց տարիներում չենք կարողացել հագեցնել մասսաների կուլտուրական սովը, ապա դա խորհրդային իշխանության մեղքը չէ, այլ նրա դժբախտությունը,— մեր երկրի, մեր մեծ Միության արտադրական ուժերը, չնայած նրանց զարգացման արագ թափին, դեռ այնքան չեն աճել, որ ի վիճակի լինեն բավարարել աշխատավորության առաջադրած կուլտուրական բոլոր պահանջները»:

Անընդհատ հաճախելով Հայաստանի տարբեր վայրերը, ուսումնասիրելով երկրի ու աշխատավորության վիճակը, Լուկաշինը գիտեր մեր կադրերին՝ նրանց ունակություններն ու կարողությունների սահմանները ստուգապես իմանալու չափ: Հայ ժողովրդին նա նմանեցնում էր ոսկե գահի վրա բազմած աղքատ մարդու: Սովետական իշխանությունը, ասում էր նա, աղքատ այդ մարդուն տեր է դարձրել երկրի ընդերքում փակված գանձերին, սակայն պետք է դեռ գտնել մարդկանց, որոնց ձեռքում է գտնվում այդ գանձերն արդյունահանելու բանալին: Պետք է սովորեցնել ու հասունացնել այն կադրերը, որոնց գիտելիքները Հայաստանի աշխատավորներին պիտի փաստական տեր դարձնեն իրենց հարստություններին, ցույց տան դրանք ի հայտ բերելու ու մշակելու հնարներն ու միջոցները:



Լուկաշինը ճանաչում ու բարձր էր գնահատում մեր հին մասնագետներին: Շարունակ շփվում էր և խորհրդակցում նրանց հետ: Հիշում եմ երկրաբան Հովհաննես Կարապետյանին, գյուղատնտես Ստեփան Կամսարականին, քիմիկոս Գրիգոր Գուրգենյանին, ինժեներներ Հովսեփ Մելիք-Հայկազյանին, Վախթանգ Զարապովին, Հմայակ Մելիք-Աղամիրյանին, Նիկոլայ Մելիք-Փաշայանին, Գրիգոր Շերմազանյանին և Մարկոսյանին: Հատուկ հիշատակման արժանի է, մանավանդ, ինժեներ Հովսեփ Տեր-Աստվածատրյանը, նա, որ նախագծեց Շիրջրանցքի կառուցումը և հետագայում հանդիսացավ Սևանգէսի նախագծողներից ու կառուցողներից մեկը:

Լուկաշինը նման չէր չոր ու կարճատես այն տնտեսավարներին, որոնք նկատում ու գնահատում են սոսկ նյութական արտադրության մասնագետներին: Նա գիտակցում էր նյութական ու հոգևոր մշակույթի մտերիմ կապերը, գնահատում և արժեքավորում այն մարդկանց, որոնք խորապես գիտակ ժողովրդի մտավոր արժեքներին՝ աշխատում էին հումանիտար գիտությունների կամ արվեստի ու գրականության մարզերում: Բարձրորակ բնագետներից ու ինժեներներից ոչ պակաս նա ճանաչում ու գնահատում էր հոգու գանձեր որոնող ու մշակող վարպետներին՝ Աբեղյանին ու Աճառյանին, Սարյանին ու Կոջոյանին, Թորամանյանին ու Թամանյանին, որոնք իմաստ էին հանում ժողովրդական հանճարի պեղված ընդերքից: Մասնավորապես Թամանյանի հետ ծանոթ ու մտերիմ էր Պետերբուրգից: Երևան քաղաքի նախագծումների վրա աշխատելիս մեծ ճարտարապետը Հայաստանի տնտեսական հեռանկարների մասին անհրաժեշտ առաջադրանքներ էր ստանում իր բարեկամից և մինչև իր կյանքի վերջը սերտ հաղորդակցության մեջ էր նրա հետ:

Լուկաշինը մտավախություն չունեցավ՝ գործի դնելու անգամ հինավուրց դաշնակցական ճարտարապետ Քաջազնունուն: Տակավին 1921 թվականին Հայաստանի կառավարությունը հատուկ թոշակ հատկացրեց գրականության վաստակավոր գործիչներին: Հների շարքին չէին անգիտացվում աճող նորերը: Հայաստանի ժողկոմխորհի բազմազբաղ նախագահը ժամանակ էր գտնում հետաքրքրվելու Չարենցի մրրկահույզ տաղանդով և առաջիններից մեկն է, որ նշմարեց Ակսել Բակունցին, արդեն իսկ «Заря Востока» լրագրի էջերում նրա զետեղած ակնարկը կարդալով: Խոսքը հարկավ այն մասին չէ, թե ժողկոմխորհի նախագահը գրական նուրբ ճաշակի տեր էր կամ գիտեր սրատեսորեն տարբերանշել տաղանդավոր գրողներին անտաղանդներից, այլ որ հասուն ու ճիշտ պատկերացում ուներ գրականության հասարակական տեղի ու դերի մասին: Բնորոշ է այդ տեսակետից նրա հոգատարությունը, մանավանդ, ակնարկային և երգիծական ժանրի գրականության նկատմամբ: Հիշում եմ, թե ինչպիսի հրճվանքով էր կարդում ընկերներին սկսնակ ու անհայտ երգիծաբան Էդվարդ Խոջիկի՝ իրեն ուղղած սրամիտ նամակը, ուր նա ծաղրում էր իր բնակարանային չարակրությունների հերոսներին: Հայտնի է, որ Լուկաշինի հանձնարարությամբ տպագրվեց գրողների և քննադատների կողմից մոռացության մատնված Լեռ Կամսարի գրքերից երկուսը: Նրա աչքում երգիծանքը բյուրոկրատական անհասկացողության ու քաշքշուկների դեմ պայքարելու հատու զենք է, որ պետք է պահվի բանուկ վիճակում:

Ճիշտ չէր լինի մտածել, թե Լուկաշինին հետաքրքրում էին միայն գործիմաց մասնագետները կամ ստեղծագործող գիտնականները, գրողներն ու արվեստագետները: Նա ուշադիր ու հոգատար էր կառուցումների պաթոսով համակված բոլոր աշխատավորների, գյուղի ու քաղաքի, գործարանի և սովխոզի, հողի ու ջրի հետ կապված, փորձ ու նախաձեռնություն դրսևորող բանվորների ու գյուղացիների նկատմամբ: Նրան հետաքրքրում էին բոլոր նրանք, ովքեր կարող էին օգնել մեզ՝ ստույգ պատկերացում ստանալու ժողովրդի կարիքների ու պահանջմունքների, նրանց հույսերի ու ձգտումների, կարելիությունների ու հնարավորությունների մասին:

Կարելի էր խորհել, թե բազմազբաղ այդ մարդը բնավորությամբ անմատչելի մեկը պիտի եղած լիներ: Փաստորեն դժվար է պատկերացնել ղեկավար մեկին, որ այնքան մարդամոտ լիներ ու դյուրահաղորդ, պարզ ու ընկերական, որքան նա: Նրանից ակնածում էին, բայց և խորապես հարգում ու հավատում նրան և համակվում գործի նկատմամբ նրա ունեցած բացառիկ նվիրվածությամբ: Ամենքին նա նվաճում ու հմայում էր դեպի գործն ունեցած այն սիրով ու ջերմությամբ, առանց որի չի կարող ճշմարիտ հեղինակություն վաստակել աշխատավոր զանգվածների կոմունիստ ղեկավարը և արգասավոր դարձնել իր ժողովրդանվեր գործունեությունը:

Հիշում եմ բոլորիս համակած հետաքրքրությունը, երբ լսում էինք իր պատմությունները Գերմանիայում կատարած ուղևորության մասին, որ ձեռնարկել էր շինանյութերի ու, հատկապես, բազալտի ձուլման տեխնոլոգիան ուսումնասիրելու նպատակով: Կամ երբ զրուցում էր Ղափանի մասին, ուր մեկնել էր պղնձահանքը տեղում հարստացնելու հեռանկարը պարզելու: Չեմ մոռացել նաև նրա հիացմունքը Ջերմուկի մասին, որի առաջին այցելուն հանդիսացավ և որին գուշակում էր մեծ կուրորտ դառնալու ապագա: Ի դեպ հիշատակենք, որ նրա խրախուսանքով էին հենց կառուցվել Դիլիջանի և Արզնիի բուժարանները:

***

1937 թվականի դեկտեմբերի 4-ին Լուկաշինը դեռ չէր բոլորել իր օգտաշատ գործունեության շրջանը, երբ զոհ դարձավ անհատի պաշտամունքի ժամանակ սանձազերծված կամայականության:

Կարմիրբանակայինի զորշ շինել հագած, ասես բրոնզից կոփված եռանդ ու կամք. այդպիսին էր նա տակավին օրհասական այն տարում, երբ գործի էր գնում հաստատ ու արագ քայլվածքով կամ երբ մտազբաղ էր՝ անհետաձգելի հարցերով: Սակայն շուրջը կատարվող վայրագ իրադարձություններին ի տես ապրում էր նկատելի տագնապ ու խռովք: Նրա դեմքի մկաններն անհանգիստ էին, և մտերմիկ հանդիպումների պահերին երևացող բարի ժպիտն ու աչքերի մեղմ արտահայտությունը՝ խամրած:

Նրա ընկերներից քչերն են վերապրում: Սակայն մեր երկրի տարբեր անկյուններում դեռ կան մարդիկ, որոնք տեսել և լսել են նրան ու չեն մոռացել տակավին նոր-նախիջևանցու բարբառին հատուկ նրա շեշտադրությունը, բաղաձայնների արևմտահայ առոգանությունը և նախադասությունների փոքր-ինչ օտարոտի շարադասությունը:

Այսօրվա սերունդը նրան տեսած կամ լսած լինել անկարող է, իհարկե: Սակայն ամեն մեկը, ով գիտե ու սիրում է սոցիալիստական մեր այսօրը, պիտի իմանա, անշուշտ, որ երբ հիշատակվում է Լուկաշինի անունը, մտաբերում են այն մարդուն, որի ամուր ձեռքերով գրանիտե առաջին վեմն է դրվել մեր հայրենիքի այսօրվա հոյաշեն կառույցների ու մեծ կատարումների հիմքում:



# ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՅԻ ԳԻՏՈՒԹՅԱՆ ՕՋԱԽՆԵՐԸ

Ա. ԲԱԲԱՅԱՆ

*Քիմիական գիտությունների դոկտոր*

## ԿՅԱՆՔԻՆ ՀԱՄԸՆԹԱՑ

Օրգանական քիմիան ունի մեկ և կես դարի պատմություն: Նրա առաջին կարևորագույն գիտական հայտնագործության՝ Ալեքսանդր Բուտլերովի քիմիական կառուցվածքային տեսության 100-ամյա հոբելյանը տոնվեց Լենինգրադում, ընդամենը երեք տարի առաջ:

Չնայած դրան, քիմիան մեծ հաջողությունների է հասել ինչպես օրգանական վանական միացությունների ստացման ընդհանուր մեթոդների մշակման, այնպես էլ այդ միացությունների բնորոշ խմբերի հատկությունների ուսումնասիրման բնագավառում: Բավականին պարզություն է մտցված քիմիական կարևորագույն ռեակցիաների մեխանիզմների պատկերացման ասպարեզում: Զգալի քայլեր են արված մոլեկուլի ներսում ատոմների փոխադարձ ազդեցությունների ուսումնասիրման ուղղությամբ:

Օրգանական քիմիայի զարգացման առաջին իսկ քայլերը հնարավոր դարձրին սինթետիկ նյութերի արդյունաբերության ստեղծումն ու արագ զարգացումը:

Սկզբնական շրջանում, նույնիսկ այժմ էլ, նոր արժեքներ ստեղծելիս քիմիկոսն ընդօրինակում էր բնությանը: Ընդօրինակման սկզբունքը մեծ ծառայություն է մատուցել և մատուցում է մարդկությանը: Այսպես, սինթետիկ կաուչուկների արտադրությունն ստեղծվեց ու զարգացավ, իր հիմքում ունենալով բնական կաուչուկի օրինակը: Կապրոնի, նեյլոնի և նման այլ նյութերի արտադրության համար հիմք են ծառայել բուրդը, սպիտակուցները: Սինթետիկ շատ ներկեր, դեղորայք, հոտավետ նյութեր նույնպես ընդօրինակված են բնական միացություններից:

Քիմիական երևույթների ու վերափոխումների բնագավառում ունեցած մեր գիտելիքների խորացմանն ու ճշգրտմանը զուգընթաց հնարավոր դարձավ ո՛չ միայն սինթեզել այնպիսի նյութեր, որոնց նմանը կա բնության մեջ, այլև ստեղծել այնպիսիք, որոնց նմանը չկա, և որոնք իրենց հատկություններով գերազանցում են բնական բոլոր հայտնի նյութերին:

Այս առիթով հաճախ ասում են, որ քիմիան գերազանցում է բնությանը: Սա, իհարկե, սոսկ գեղեցիկ արտահայտություն է, որովհետև բնության օրենքներին ենթարկվելով է միայն, որ քիմիկոսն ստեղծում է թեկուզ և ամենահրաշալի հատկություններով օժտված նյութը:

Չնայած այն մեծ հաջողություններին, որոնց հասել են քիմիան ու քիմիական արդյունաբերությունը, պետք է խոստովանել, որ օրգանական քիմիան դեռևս ապրում է իր պատանեկան հասակը՝ փորձի կուտակման, մասնակի օրինաչափությունների հայտնաբերման շրջանը: «Ոչ թե նոր նյութեր ստեղծելու նպատակով, այլ բնության մշտնջենական օրենքների բացահայտման համար մենք պարտավոր ենք և հարկադրված ենք ավելացնել գոյություն ունեցող միացությունների թիվը»: Ֆիտտիգի՝ XIX դարի վերջերին արտասանած այս խոսքերն այսօր էլ չեն կորցրել իրենց իմաստը, թեև անցած ժամանակամիջոցում քիմիկոսները սինթեզել և ուսումնասիրել են միլիոնավոր նոր միացություններ:

Ինչպես ամեն մի գիտություն, այնպես էլ օրգանական քիմիան, կոչված է հագեցնելու մարդու իմաստասիրական ծարավը և հագուրդ տալու ձեռք բերած գիտելիքները մարդկության բարօրությանն ի սպաս դնելու ձգտմանը: Այդ խնդրի իրականացմանն է ծառայում նաև Հայաստանի գիտությունների ակադեմիայի օրգանական քիմիայի ինստիտուտը, որի նպատակն է՝ բացահայտել այն օրինաչափությունները,



որոնցով պայմանավորված է նյութերի քիմիական կառույցի ու հատկությունների մեջ եղած կապը:

Ինչպես բոլոր աշխատանքները, այնպես էլ գիտական հետազոտությունները անհրաժեշտ է պլանավորել: Տարբեր սկզբունքներ կարող են դրված լինել գիտահետազոտական աշխատանքների հիմքում: Կարելի է, օրինակ, վերցնել մի կարևոր գործնական պրոբլեմ և գիտահետազոտական աշխատանքները ծառայեցնել դրա լուծմանը և, հակառակը, կարելի է նպատակ դնել տեսական խնդիրների լուսաբանումը: Քիմիան այնպիսի գիտություններից է, որ նրա ամեն մի նոր խոսք վաղ թե ուշ օգնելու է մեկ կամ մի շարք, և այն էլ ժողովրդական տնտեսության ամենատարբեր բնագավառներում ծագած, գործնական հարցերի լուծմանը:

Օրգանական քիմիայի ինստիտուտի կազմում կան թե՛ մեկ, թե՛ մյուս սկզբունքներով իրենց աշխատանքները պլանավորող լաբորատորիաներ:

Ամինոմիացությունների լաբորատորիան իր առջև խնդիր է դրել ուսումնասիրել, այսպես կոչված, «օնիումային» միացությունների քիմիան: Սակայն հայտնաբերված առաջին իսկ օրինաչափությունների հիման վրա լաբորատորիայում մշակվեց զուգորդված, չհագեցած քիմիական կապեր պարունակող բազմապիսի մոնոմերների[1] սինթեզման նոր եղանակ, որի շնորհիվ լուծվեց սինթետիկ կաուչուկի արտադրության համար կարևոր մի գործնական խնդիր:

Բանն այն է, որ քլորոպրենի ստացման ժամանակ առաջանում է նաև բազմատոննաժ կողմնակի մի նյութ՝ դիքլորիդ, որը տարիներ շարունակ կիրառում չունենալու պատճառով ոչնչացվում էր: Մշակված նոր եղանակը հնարավորություն տվեց դիքլորիդը նորից վերածելու քլորոպրենի, այսինքն՝ այն մոնոմերի, որի պոլիմերացմամբ ստացվում է նաիրիտ կոչվող սինթետիկ կաուչուկը:

Կատարված հետազոտություններից ստացված տվյալները խորացրին ու ճշտեցին ներմոլեկուլյար փոխազդեցությունների վերաբերյալ ներկայումս գոյություն ունեցող պատկերացումները և հնարավորություն տվին ի հայտ բերելու նախկինում մի շարք հեղինակների էքսպերիմենտալ աշխատանքներում տեղ գտած սխալները:

Վերջին տարիներս, լաբորատորիայում հայտնաբերված վերախմբավորման-ճեղքման ռեակցիայի շուրջը, գիտահետազոտական ծավալուն աշխատանքներ են տարվում: Այդ ռեակցիայի տարածումը ամոնիումական նորանոր սիստեմների վրա տեսական մեծ նշանակությունից բացի կունենա նաև գործնական արժեք, քիմիական բարդ կառուցվածք ունեցող նյութերի ստացման արդյունաբերական եղանակների մշակման ասպարեզում (դեղանյութերի, վիտամինների, հոտավետ և այլ նյութերի):

Սինթետիկ կաուչուկի և պոլիվինիլացետատի գործարանների հիմնական հումքը ացետիլենն է: Այդ մի գազ է, որի յուրաքանչյուր մոլեկուլը բաղկացած է երկու ածխածնային և երկու ջրածնային ատոմներից: Որպես քիմիական նյութ այն խիստ «չհագեցած» է: Այդ հանգամանքը նրա կառուցվածքային ֆորմուլայում արտահայտվում է ածխածնի ատոմները երեք գծիկով միմյանց հետ միացնելու միջոցով: Լինելով քիմիապես չհագեցած, ացետիլենի մոլեկուլները դյուրությամբ են միացման ռեակցիաների մեջ մտնում թե՛ միմյանց և թե՛ բազմաթիվ այլ և այլ միացությունների մոլեկուլների հետ:

Սինթետիկ կաուչուկի արտադրության հիմքում դրված է ացետիլենի մոլեկուլների միմյանց հետ միանալու, այսպես կոչված՝ դիմերիզացիայի ենթարկվելու և վինիլացետիլեն առաջացնելու կարողությունը, իսկ պոլիվինիլացետատի արտադրության հիմքում՝ ացետիլենի մոլեկուլները քացախաթթվի հետ միանալու ունակությունը, որի հետևանքով առաջանում է վինիլացետատ կոչվող միացությունը:

Հանրահայտ պոլիվինիլքլորիդի արտադրության հիմքում ընկած է քլորաջրածնի միացումը ացետիլենին, որից առաջանում է վինիլքլորիդ: Կարելի է նշել քիմիական բազմաթիվ այլ կարևոր նյութեր, որոնց արտադրության հիմքում ընկած է ացետիլենի այդ հատկությունը:

Ինստիտուտի ացետիլենային միացությունների լաբորատորիայի նպատակն է՝ մշակել քիմիական օգտագործման անսպառ հնարավորություններով օժտված այդ միացությունների ստացման նոր եղանակներ, որոնց հիման վրա էլ հայտնաբերել քիմիական նորանոր վերափոխությունների օրինաչափությունները:

Լաբորատորիայում հայտնաբերվել է շատ հետաքրքիր ներմոլեկուլյար վերախմբավորում, որը հնարավորություն է տալիս սինթեզել նախկինում անմատչելի տարբեր կառուցվածքի խիստ չհագեցած, այսպես կոչված՝ ամինոկումուլենային միացություններ: Մշակված են բազմապիսի միացությունների ստացման նոր և մատչելի եղանակներ: Սինթեզված միացությունների մեջ կան այնպիսիք, որոնք կարող են ծառայել որպես պլաստիֆիկատորներ և լվացող միջոցներ:

Կիրովի անվան գործարանի կենտրոնական

1 *Մոնոմեր են կոչվում այն միացությունները, որոնց մոլեկուլներն ընդունակ են միմյանց հետ միանալով, այսինքն՝ պոլիմերացման ենթարկվելով, առաջացնել բարձրամոլեկուլյար միացություն-պոլիմեր:*

լաբորատորիայի գործակցությամբ սինթեզվել է դիքլորկրոտիլադիպինատ կոչվող միացությունը, որն ունի ավելի բարձր հատկություններ և էժան է, քան մինչ այդ գոյություն ունեցող պլաստիֆիկատորները: Լաբորատորիայում մշակվել է ացետիլենին ջուր միացնելու (հիդրատացիա) շատ հարմար եղանակ, որի շնորհիվ թանկարժեք և վտանգավոր սնդիկի աղերը փոխարինված են պղնձի աղերով:

Բարձր մոլեկուլյար միացությունների լաբորատորիան զբաղվում է Կիրովի անվան գործարանում գոյացող մեկ ուրիշ բազմատոննաժ կողմնակի նյութի՝ դիվինիլացետիլենի որակյալ օգտագործման պրոբլեմով: Այդ ուղղությամբ տարվող գիտահետազոտական աշխատանքները հանգեցրին մեծ արժեք ներկայացնող մի նոր մոնոմերի՝ տրիենի հայտնաբերմանը: Հաջողվեց մշակել այդ նոր մոնոմերի պոլիմերացման եղանակը: Այսպիսով, ստացվեց մի նոր պոլիմեր՝ պոլիտրիեն: Ստացված պոլիմերը փորձարկվեց Լենինգրադի նավաշինական գիտահետազոտական ինստիտուտում: Պարզվեց, որ պոլիտրիենից կարելի է ստանալ չայրվող և ջրամթնոլորտակայուն հրաշալի թաղանթ, որով նավերի ստորջրյա մասերը ծածկելիս կարելի է խուսափել մամռակալումից, մի հանգամանք, որը շատ կարևոր է նավագնացության համար:

Ճառունակելով հետազոտությունները և լրացուցիչ քլորացման ենթարկելով պոլիտրիենը, լաբորատորիայի աշխատակիցներն ստացան, այսպես կոչված, քլորացված պոլիտրիեն: Նոր պոլիմերի ուսումնասիրությունները ցույց տվին, որ այն ևս, պոլիտրիենի նման կարող է կիրառվել որպես անտիկոռոզիոն միջոց: Բացի այդ, ինչպես ցույց տվեցին Մոսկվայի Լոմոնոսովի անվան նուրբ օրգանական տեխնոլոգիայի ինստիտուտում կատարված փորձարկումները, քլորացված պոլիտրիենը մի չգերազանցված միջոց է ռետինը մետաղներին միացնելու համար: Այդ նպատակներով օգտագործվող այլ հայտնի նյութերի հանդեպ այն ունի որոշ առավելություններ. նախ ունիվերսալ է, կաուչուկի բոլոր տեսակներն էլ կարելի է դրանով ամրացնել մետաղներին, և ապա միացման ամրությունը երեք անգամ ավելի է: Քլորացված պոլիտրիենը ջերմադիմացկուն է: Տեխնիկայի պանապան բնագավառներում աշխատողներից ինստիտուտն այժմ ստանում է բազմաթիվ նամակներ, որոնցով խնդրում են իրենց բաժին հանել այդ նյութից: Միութենական պետպլանին կից նավթաքիմիական արդյունաբերության պետական կոմիտեն որոշում է կայացրել տրիենի, պոլիտրիենի և քլորացրած պոլիտրիենի արդյունաբերություն ստեղծելու նպատակով Կիրովի անվան գործարանին կից կառուցել կիսաարդյունաբերական կայան, որտեղ .պիտի արտադրվեն այդ նյութերը լայն փորձարկումներ կատարելու համար:

Տրիենի հետագա ուսումնասիրությունները ցույց տվեցին, որ տրիենը Կիրովի գործարանի հիմնական մոնոմեր քլորոպրենի հետ պոլիմերացնելիս ստացվում է նաիրիտ կաուչուկի նոր տեսակը, որն, ի տարբերություն արդյունաբերվող կաուչուկից, դանդաղ է կարծրանում: Այս հանգամանքը շատ կարևոր է ռետինի արդյունաբերության տեխնիկայում:

Արժեքավոր են լաբորատորիայում տարվող աշխատանքները նաև օրգանական միացությունների քլորացման բնագավառում: Կան օրգանական նյութեր, որոնց մեծ դժվարությամբ է միանում քլոր, այն էլ միայն ուժեղ լուսավորության ազդեցության տակ: Ցույց է տրվել, որ այդպիսի միացություններին փոքր քանակությամբ (1—2 տոկոս) որոշ տիպի նյութեր (հարուցիչներ) ավելացնելիս քլորացումը կարելի է կատարել նաև մթության մեջ: Այս աշխատանքները կունենան ինչպես տեսական, այնպես էլ գործնական մեծ նշանակություն:

Համեմատաբար ավելի երիտասարդ է ինստիտուտի պոլիմերացման և պոլիկոնդենսացման մեթոդների ուսումնասիրման լաբորատորիան, որի խնդիրն է, տեխնիկական արժեքավոր հատկություններով օժտված բարձրամոլեկուլյար նոր միացությունների, ինչպես և դրանց ստացման նոր ուղիների որոնումը և այդ նյութերի գոյացման մեխանիզմի ուսումնասիրությունը:

Այդ տեսակետից խոստումնալի է այնպիսի բարձրամոլեկուլյար միացությունների սինթեզը, որոնց կառուցվածքում առկա են ցիկլիկ միավորումներ: Բանն այն է, որ ցիկլիկ պոլիմերացման ռեակցիայի ընթացքում մոնոմերից առաջանում է բարձրամոլեկուլյար միացություն, մոլեկուլի գլխավոր շղթայում ունենալով (նայած մոնոմերի կառուցվածքին) տարբեր տեսակի ցիկլիկ խմբավորումներ:

Բերենք մեր ինստիտուտի պոլիմերացման լաբորատորիայում ստացված հետաքրքիր արդյունքներից մի քանիսը:

Առաջարկվել է տեխնիկապես շատ արժեքավոր պլաստիկների (պոլիվինիլացետալների) ստացման սկզբունքորեն նոր եղանակ:

Ցույց է տրված, որ դիվինիլկետալների ցիկլիկ պոլիմերացման միջոցով կարելի է ստանալ պոլիվինիլ սպիրտի նոր ածանցյալներ՝ պոլիվինիլկետալներ:

Ստացվել են մի շարք նոր ջերմակայուն նյութեր: Հետաքրքրական է, հատկապես, տեխնիկապես մատչելի դիալլիլցիանամիդից ստացված ցիկլիկ պոլիմերը, որը քայքայվում է 600° ջերմությամբ:



Դիմեթիլվինիլէթինիլ կարբինոլի հիման վրա ստեղծված է կենսունակ (օգտագործման մեծ տևողություն ունեցող) ունիվերսալ լաք-սոսինձ (ПАК), որն արտադրական քանակներով պատրաստվել է լայն փորձարկման:

Մոտ ապագայում լաբորատորիան կձեռնարկի էլեմենտաօրգանական ցիկլեր ունեցող, բարձր ջերմակայունությամբ օժտված սիլիցիում, ֆոսֆոր, ֆտոր, ինչպես նաև գլխավոր շղթայում արոմատիկ ցիկլեր պարունակող պոլիմերային նյութերի ստացմանը:

Լաբորատորիայում սինթեզվում են նաև բարձրամոլեկուլյար ստաբիլիզատորներ:

Գյուղատնտեսական թունանյութերի լաբորատորիան զբաղված է բույսերի պաշտպանության քիմիական նոր միջոցների հայտնաբերմամբ: Վնասատուները, հիվանդությունները, մոլախոտերը իսկայական վնաս են հասցնում գյուղատնտեսությանը: Բույսերի պաշտպանության համամիութենական գիտահետազոտական ինստիտուտի տվյալների համաձայն միայն վնասատուների և հիվանդությունների՝ գյուղատնտեսությանը պատճառած վնասը հասնում է տարեկան մի քանի միլիարդ ռուբլու:

Քանի որ նախօրոք չի կարելի ասել, թե ինչ բաղադրություն և ինչպիսի քիմիական կառուցվածք ունեցող նյութերով է հնարավոր հաջողությամբ պայքարել այս կամ այն վնասատուի, հիվանդության կամ մոլախոտի դեմ, ապա որոշողը նյութի փորձարկումն է: Լաբորատորիայում սինթեզված և բույսերի պաշտպանության ինստիտուտի կողմից փորձարկված բազմաթիվ պրեպարատների շարքում հայտնաբերված են միացություններ, որոնք կարող են պրակտիկ նշանակություն ունենալ:

Թվենք դրանցից մի քանիսը:

Ինչպես գիտենք, «գայլուկը» մեծ վնաս է պատճառում առվույտին, խաղողի վազին և գյուղատնտեսական այլ կուլտուրաների: Լաբորատորիայում սինթեզված ХМН պրեպարատը ոչընչացնում է գայլուկը առվույտի դաշտերում, կգալիորեն բարձրացնելով վերջինիս բերքը:

Ցույց է տրված, որ թիոդիկարբոնաթթուները և նրանց ածանցյալները մոլախոտերի դեմ պայքարի միջոց (հերբիցիդ) լինելուց բացի, փոքր քանակներով օգտագործելիս նպաստում են բույսի աճմանը:

Գտնված են նոր ինսեկտիցիդներ (միջատասպաններ) և ակարիցիդներ (տիզասպաններ): Աշխատանքներ են տարվում այդ միացությունների ստացման մեթոդների մշակման ուղղությամբ:

Բույսերի պաշտպանության գործում մեծ նշանակություն ունեն նաև միջատներին գրավող՝ «ատրակտանտներ» կոչվող նյութերը, որոնց միջոցով հնարավոր է ընդարձակ տարածություններից միջատների որոշ տեսակները հավաքել թակարդներում և ոչնչացնել: Դրանց շարքում կարելի է դասել լաբորատորիայում սինթեզված ացետիլենային գլիկոլները և նրանց ացետատները:

Մեր ինստիտուտի տեխնոլոգիական լաբորատորիան զբաղված է արտադրական այնպիսի պրոցեսների տեսական ուսումնասիրությամբ, որոնք տարվում են երկֆազ անընդհատ հոսանքում:

Պարզության համար բերենք այսպիսի օրինակ:

Կավահողը, որից արտադրվում է ալյումինը, ստացվում է հետևյալ ձևով. մանր աղացված բոքսիդը խառնում են կծու նատրիումի լուծույթին և ստացված խառնուրդը (պուլպա) անընդհատ հոսանքով անց են կացնում ավտոկլավների մարտկոցի միջով, մոտ 230° և 30 մթնոլորտ ճնշման տակ: Այդ պայմաններում բոքսիդի մեջ գտնվող կավահողը լուծահանվում է բոքսիդի հատիկներից ու ստացված լուծույթի հետագա մշակմամբ անջատվում որպես մաքուր նյութ: Ավտոկլավը 2 մետր տրամագծով և մոտ 15 մետր բարձրությամբ գլանաձև մի ապարատ է. մարտկոցում կա 10 ավտոկլավ: Հոսուն խառնուրդը պոմպերի օգնությամբ մղվում է առաջին ավտոկլավի մեջ վերևից, արտահոսում ներքևից և անցնում երկրորդ ավտոկլավի մեջ: Այլ կերպ ասած, «պուլպան» ավտոկլավների մեջ հոսում է վերևից ներքև: Այստեղ հոսող մասսան կազմված է երկու ֆազերից՝ հեղուկից և պինդ նյութի հատիկներից: Նման հոսանքի տեսական հետազոտումը ցույց տվեց, որ եթե բոքսիդի մանրացման աստիճանը, ֆազերի հարաբերությունը, ջերմաստիճանը, ճնշումը և այլն թողնելով նույնը և փոխվի միայն պուլպայի շարժման ուղղությունը ավտոկլավներում, ապա նույն արդյունքին հասնելու համար ավտոկլավների թիվը մարտկոցում կարելի է կիսով չափ կրճատել: Իսկ եթե դրա հետ մեկտեղ ավտոկլավին տանք դեպի վեր լայնացող կոնուսի ձև, ապա 10 ավտոկլավը կարելի է փոխարինել մեկով: Մշակված այս եղանակն ընդունված է արտադրական փորձարկման:

Երկֆազ հոսանքի տեսական ուսումնասիրման այս արդյունքները կարելի է կիրառել արդյունաբերական բազմաթիվ այլ պրոցեսներում (լուծում, բյուրեղացում և այլն):

Երկֆազ հոսանքը լայնորեն կիրառվում է նաև պնևմատիկ տրանսպորտում, որը մեծ առավելություններ ունի տրանսպորտի մյուս ձևերի համեմատությամբ: Սակայն նրա օգտագործման ներկա եղանակը զերծ չէ մի շարք թերություններից: Շատ մեծ էներգիա է ծախսվում

(օդը նախօրոք խտացնելու համար), տեղափոխման մեծ արագության հետևանքով խողովակներն արագ մաշվում են, տեղափոխվող հատիկները վնասվում են:

Մեր ինստիտուտի լաբորատորիայում երկֆազ հոսանքի օրինաչափությունների ուսումնասիրությունը ցույց տվեց, որ պնևմատիկ տրանսպորտը հնարավոր է արմատապես կատարելագործել: Լաբորատորիան մշակեց, փորձարկեց և առաջարկեց պնևմատիկ տրանսպորտի այնպիսի տարբերակ, որը հնարավորություն է տալիս օդի ծախսը կրճատել ավելի քան 15 անգամ, էներգիայինը՝ 10 անգամ: Շնորհիվ փոխադրման համեմատաբար փոքր արագությունների՝ խողովակաշարերն ավելի դանդաղ են մաշվում, տեղափոխվող մասնիկներն ավելի քիչ են վնասվում և այլն:

Ինստիտուտի տեխնոլոգիական լաբորատորիան աճող տեմպով շարունակում է իր հետազոտությունները երկֆազ հոսանքի նոր օրինաչափությունների բացահայտման ուղղությամբ:

Ինչպես տեսանք, Հայաստանի գիտությունների ակադեմիայի օրգանական քիմիայի ինստիտուտում ներկայացված են ու ներդաշնակ զարգանում են քիմիայի այն կարևորագույն ուղղությունները, որոնցով պայմանավորված է մեր ժողովրդական տնտեսության ու տեխնիկայի առաջադրած խնդիրների հաջող լուծումը:

Ի վերջո անհրաժեշտ է կանգ առնել նաև մի հարցի վրա, որը գնալով ավելի ու ավելի է մտահոգում մեկնից շատերին:

Քիմիան մեկն է այն գիտություններից, որի կիրառական նշանակությունը դժվար է գերագնահատել: Այդ է պատճառը, որ օրգանական միացությունների սինթեզման բնագավառում ձեռք բերված առաջին իսկ հաջողություններից սկիզբ առավ և հուժկու թափով զարգացավ սինթետիկ ու քիմիական մյուս նյութերի արտադրությունը:

Այս հանգամանքն, ըստ երևույթին, հակում առաջ բերեց նախապատվություն տալու այնպիսի գիտահետազոտական խնդիրների, որոնց լուծումն այսօր իսկ խոստանում է պրակտիկ կիրառում և անմիջական տնտեսական էֆեկտ և, ընդհակառակը, նվազեց հետաքրքրասիրությունը դեպի կուտ գիտական տիպի այն հարցերը, որոնք անմիջականորեն չեն բխում այսօրվա «շահերից»:

Գտնել բնության լուսաբանված օրինաչափությունների կիրառման, օգտագործման ուղիները և այդպիսով գիտության նվաճումներն ի սպաս դնել մարդկային կյանքի բարօրությանը, շատ մեծ ու պատվավոր գործ է: Սակայն գործնական քիմիայի ձեռք բերած հաջողությունների հետևանքով առաջացած անարդարացի անտարբերությունը դեպի օրգանական քիմիայի կուտ տեսական հարցերը պետք է համարել վտանգավոր: Գիտության պատմությունը հաստատում է, որ գիտական այն բոլոր հայտնագործությունները, որոնց շնորհիվ վերափոխվել է հասարակական կյանքը, համարյա առանց բացառության արդյունք են եղել արտաքինից բոլորովին անօգուտ թվացող այն փորձերի ու որոնումների, որոնք կատարել են լաբորատորիաներում, կուտ գիտական հարցերով տարված մարդկանց կողմից:

Դժվարին ու խոչընդոտներով լի է բնության օրինաչափությունների հայտնագործման ուղին: Անսահման սեր, նվիրվածություն ու համառություն է պահանջվում, որպեսզի մանրակրկիտ ուսումնասիրությունների, սրամիտ ու հնարագետ փորձերի միջոցով, մեկը մյուսի հետևից համբերատարությամբ լուսաբանվեն, պարզվեն ու օգտագործվեն բնության գաղտնիքները: Սրա վրա պետք է կենտրոնացնել քիմիայի բնագավառում աշխատող գիտական կադրերի ուշադրությունը:



# ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԿՅԱՆՔ

Ի. ԿՈՒԶՄԻՆՈՎ

## ԿԱՊԻՏԱԼԻՍՏԱԿԱՆ ԵՐԿՐՆԵՐԻ ՏՆՏԵՍԱԿԱՆ ԴՐՈՒԹՅՈՒՆԸ

МЕЖДУНАРОДНАЯ ЖИЗНЬ
ЕЖЕМЕСЯЧНЫЙ НАУЧНО-ПОЛИТИЧЕСКИЙ ЖУРНАЛ

### ԿԱՊԻՏԱԼԻՍՏԱԿԱՆ ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ ԴԻՆԱՄԻԿԱՆ

*Էկոնոմիկայի վիճակի և մոտակա հեռանկարների հարցը գտնվում է կապիտալիստական երկրների բանվոր դասակարգի, գործարար շրջանների և քաղաքագետների ուշադրության կենտրոնում: Էկոնոմիկայի նկատմամբ լայն մասսաների ցուցաբերած հետաքրքրասիրությունը բացատրվում է նրանով, որ նրանց նյութական դրությունը կախված է կապիտալիստական կոնյունկտուրայի տատանումներից. արտադրության վերելքը ավելի նպաստավոր պայմաններ է ստեղծում բանվոր դասակարգի՝ հանուն իր կենսամակարդակի մղած պայքարի համար, ճգնաժամն անխուսափելիորեն ուղեկցվում է գործազրկության աճմամբ, ռեալ աշխատավարձի իջեցմամբ և այլ զրկանքներով:*

*Կապիտալիստական երկրների իշխող դասակարգերը արդի ժամանակաշրջանում ավելի, քան երբևիցե, վախենում են ճգնաժամից: «Ամերիկան չի կարող իրեն տնտեսական նոր անկում թույլ տալ»,— հայտարարել է պրեզիդենտ Ջոնսոնը ԱՄՆ-ի պողպատաձուլական արդյունաբերության բանվորների արհմիության 1964 թվականի սեպտեմբերին կայացած համագումարում:*

*Կապիտալիստական պետությունների ինչպես ներքին, այնպես էլ արտաքին քաղաքականությունը մեծ չափով կախված է տնտեսական դրությունից. տնտեսության մեջ ամեն մի արգելք առաջ է բերում աշխատանքի և կապիտալի պայքարի սրում, հակասությունների սրում համաշխարհային շուկայում, միջազգային լարվածության և սպառազինությունների մրցավազք: Երկրի քաղաքականության ու տնտեսական դրության միջև եղած կապը ցայտուն ցուցադրվեց 1964 թվականին ԱՄՆ-ում և Անգլիայում տեղի ունեցած ընտրությունների ժամանակ: Արտադրության և զբաղվածության աճը, ինչպես նաև «հակաճգնաժամային» նոր միջոցառումների ու «աղքատության դեմ պատերազմելու» վերաբերյալ Ջոնսոնի ադմինիստրացիայի արած խոստումները, անտարակույս, հեշտացրին ԱՄՆ-ի դեմոկրատական պարտիայի հաղթանակը: Անգլիայի տնտեսական դժվարությունները, որ առաջացել էին նրա վճարային բալանսի դեֆիցիտի կապակցությամբ, ինչպես նաև երկրի տնտեսությունը բարելավելու վերաբերյալ լեյբորիստների խոստումներն իրենց դերը խաղացին լեյբորիստական պարտիայի տարած հաղթանակում:*

Իսկ ինչպիսի՞ն է կապիտալիստական տնտեսության վիճակը ներկայումս։ Այդ հարցին պատասխանելու համար, ամենից առաջ, քննության առնենք հիմնական կապիտալիստական պետությունների արդյունաբերության արտադրության դինամիկան[1]։

| Տարիներ | ԱՄՆ | Կանադա | Անգլիա | ԳՖՌ | Ֆրանսիա | Բելգիա | Իտալիա | Ավստրիա | Հոլանդիա | Նորվեգիա | Շվեդիա | Ճապոնիա | Հնդկաստան |
|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|
| 1957 | 107 | 101 | 101 | 97 | 96 | 106 | 96 | 98 | 100 | 100 | 98 | 99 | 96 |
| 1958 | 100 | 100 | 100 | 100 | 100 | 100 | 100 | 100 | 100 | 100 | 100 | 100 | 100 |
| 1959 | 113 | 108 | 105 | 107 | 101 | 104 | 111 | 106 | 109 | 105 | 106 | 124 | 108 |
| 1960 | 116 | 108 | 112 | 119 | 110 | 111 | 128 | 117 | 121 | 114 | 117 | 156 | 120 |
| 1961 | 117 | 112 | 114 | 126 | 116 | 116 | 142 | 123 | 126 | 120 | 124 | 186 | 129 |
| 1962 | 126 | 120 | 115 | 132 | 123 | 123 | 156 | 125 | 133 | 125 | 126 | 201 | 138 |
| 1963 | 133 | 127 | 119 | 136 | 129 | 130 | 170 | 131 | 139 | 133 | 128 | 222 | 152 |
| 1964 | 139 | 136 | 127 | 145 | 140 | 141 | 172 | 137 | 145 | 141 | 137 | 254 | 156 |

Աղյուսակում պարունակվող տվյալները ցույց են տալիս, որ 1957—1958 թվականների համաշխարհային տնտեսական ճգնաժամից հետո, որն այսպես թե այնպես ազդել էր արդյունաբերությամբ զարգացած բոլոր կապիտալիստական երկրների էկոնոմիկայի վրա, արդյունաբերական արտադրությունը այդ երկրներում աճում է։ Բայց այդ աճը տեղի է ունենում խիստ անհավասարաչափ. որոշ երկրներում արտադրությունն ավելանում է դանդաղ, մյուսներում՝ համեմատաբար բարձր տեմպերով։ Քննարկվող ժամանակաշրջանում, արտադրության զարգացման տեմպերի տեսակետից, առաջին տեղում են կանգնած Ճապոնիան ու Իտալիան, երկրորդում՝ ԳՖՌ-ն, Ֆրանսիան, Հոլանդիան և երրորդում՝ ԱՄՆ-ը, Կանադան, Անգլիան։ 1957 թվականի համեմատությամբ, 1963 թվականին ԱՄՆ-ում արտադրությունն ավելացել է միայն 24, Կանադայում՝ 26 և Անգլիայում՝ 18 տոկոսով, մինչդեռ Ճապոնիայում՝ ավելի քան երկու անգամ, Իտալիայում՝ 77 տոկոսով։

Կապիտալիստական երկրների մեծ մասում արտադրության աճը, 1957—1958 թվականների ճգնաժամից հետո, որևէ նկատելի հետադարձ շարժմամբ չի ընդհատվել։ Բացառություն են կազմում ԱՄՆ-ը, որտեղ 1960—1961 թվականների միջակա ճգնաժամը այն ժամանակ էական չափով արգելակեց արդյունաբերության զարգացումը։ Լինելով լոկալ ամերիկյան ճգնաժամ, այն որոշ արգելակող ներգործություն ունեցավ նաև Անգլիայի և մասամբ էլ Կանադայի էկոնոմիկայի վրա։

Բարձր տեմպերով է զարգանում գաղութային ստրկությունից ազատագրված տնտեսապես թույլ զարգացած երկրների արդյունաբերական արտադրությունը։ 1956-ից մինչև 1963 թվականը զարգացած կապիտալիստական երկրների արդյունաբերական արտադրությունն ամբողջությամբ առած աճել է 36, իսկ թույլ զարգացած երկրներինը՝ 66 տոկոսով[2]։ Մինչդեռ արդյունաբերությամբ զարգացած կապիտալիստական պետությունների արտադրությունը, ճգնաժամի ազդեցության տակ, 1958 թվականին ընկավ 3 տո-

[1] Տե՛ս «Monthly Bulletin of Statistics», October 1964, pp. 16—23։ 1964 թվականի համար բերված են վեց—ութ ամիսների միջին տվյալները։

[2] Տե՛ս «Monthly Bulletin of Statistics», May 1964, p. X.



կոսով, տնտեսապես թույլ զարգացած երկրների արտադրությունն աճեց 6 տոկոսով, թեև նրանցից առանձին երկրներ խիստ տուժել էին ճգնաժամի հետևանքներից։

Տնտեսապես թույլ զարգացած երկրների տեսակարար կշիռը կապիտալիստական աշխարհի արդյունաբերական արտադրության մեջ դեռևս մեծ չէ (մոտ 10—12 տոկոս)։ Սակայն չի կարելի թերագնահատել այդ երկրների նշանակությունը կապիտալիստական ամբողջ արտադրության դինամիկայի համար։ Ստեղծելով իրենց սեփական արդյունաբերությունը, թույլ զարգացած երկրները կապիտալ սարքավորման մեծ պահանջարկ են ներկայացնում և դրանով իսկ նպաստում համաշխարհային կապիտալիստական շուկայի զգալի ընդլայնմանը։

Ուշադրության է արժանի կապիտալիստական արտադրության ճյուղային ասպեկտը (տե՛ս ստորև բերված աղյուսակը)։

**Կապիտալիստական աշխարհի արդյունաբերական արտադրության դինամիկան ըստ ճյուղերի**[3]

| | 1956 թ. | 1957 թ. | 1958 թ. | 1959 թ. | 1960 թ. | 1961 թ. | 1962 թ. | 1963 թ. |
|---|---|---|---|---|---|---|---|---|
| Ամբողջ արդյունաբերությունը | 99 | 102 | 100 | 110 | 118 | 122 | 130 | 137 |
| Էլեկտրաէներգիա | 89 | 95 | 100 | 108 | 119 | 127 | 137 | 148 |
| Լեռնահանույթային | 100 | 103 | 100 | 104 | 111 | 117 | 123 | 127 |
| Այդ թվում՝ | | | | | | | | |
| ածխի հանույթը | 106 | 106 | 100 | 97 | 97 | 96 | 98 | 100 |
| նավթի և բնական գազի հանույթը | 98 | 100 | 100 | 107 | 118 | 128 | 139 | 146 |
| Մշակող | 100 | 103 | 100 | 111 | 118 | 122 | 130 | 137 |
| Այդ թվում՝ | | | | | | | | |
| թեթև | 97 | 100 | 100 | 108 | 113 | 116 | 121 | 126 |
| ծանր | 101 | 105 | 100 | 113 | 122 | 126 | 136 | 144 |
| Մշակող արդյունաբերության առանձին ճյուղեր | | | | | | | | |
| քիմիական | 91 | 96 | 100 | 112 | 122 | 130 | 143 | 156 |
| մեքենաշինություն և մետաղամշակություն | 102 | 106 | 100 | 113 | 123 | 127 | 138 | 145 |
| մետալուրգիա | 115 | 115 | 100 | 112 | 122 | 123 | 127 | 135 |
| կոշիկ և կարի | 99 | 102 | 100 | 109 | 114 | 117 | 121 | 126 |
| տեքստիլ | 101 | 103 | 100 | 108 | 113 | 115 | 120 | 125 |
| սննդի | 94 | 96 | 100 | 104 | 108 | 113 | 116 | 120 |

Այդ տվյալները վկայում են արտադրության միջոցներ արտադրող ճյուղերի, այն է՝ մշակող ծանր արդյունաբերության և ամենից առաջ՝ մեքենաշինության ու մետաղամշակման, մետալուրգիայի, քիմիական արդյունաբերության, ինչպես նաև էլեկտրաէներգիայի արտադրության և նավթի ու գազի հանույթի ավելի արագ աճի մասին։ Դրանում արտահայտվում է արտադրության միջոցների արտադրության առավել աճման ընդհանուր օրենքի գործողությունը։ Տարերային կապիտալիստական տնտեսության պայմաններում այդ օրենքի գործողությունը անխուսափելիորեն առաջ է բերում կապիտալիզմին

[3] «Monthly Bulletin of Statistics», May 1964, pp. VIII—IX.

հատուկ հակասության խիստ սրում արտադրության և սպառման միջև։ Արդի պայմաններում այդ օրենքի կործանարար ազդեցությունը սրվում է արտադրության ճյուղային կառուցվածքում կատարվող տեղաշարժերի, այսինքն՝ այնպիսի ճյուղերի առավել արագ զարգացման հետևանքով, ինչպիսիք են՝ քիմիական, նավթի, գազի, ատոմային և այլ ճյուղերը։

Արտադրության նոր ճյուղերի զարգացումը հակասական ազդեցություն է գործում կապիտալիստական շուկայի վրա, քանի որ այդ տեղի է ունենում մրցակցության և կապիտալի կողմից աշխատանքի շահագործման օրենքների հիման վրա։ Նոր ճյուղերի արագ աճը նպաստում է այդ ճյուղերին անհրաժեշտ կապիտալ սարքավորումների շուկայի զգալի ընդլայնմանը, բայց, միևնույն ժամանակ, առաջ է բերում հիմնական կապիտալի մասսայական խրոնիկական թերբեռնվածություն այն ճյուղերում, որոնց արտադրանքը փոխարինվում է նոր ճյուղերի արտադրանքով։

Նոր ճյուղերի զարգացումը հակասական կերպով է ազդում նաև սպառողական ապրանքների շուկայի վրա։ Մի կողմից, այդ զարգացումը նպաստում է արտադրության մեջ բանվոր դասակարգի նոր ջոկատների ներգրավմանը, հետևաբար և զբաղվածության աճին, իսկ մյուս կողմից՝ խրոնիկական մասսայական գործազրկություն է ստեղծում մրցակցող հին ճյուղերում։ Նոր ճյուղերի զարգացման առաջին շրջանում գերակշռում է շուկայի ընդլայնման տենդենցը, որը և ապահովում է արտադրության աճը։ Բայց այնուհետև աստիճանաբար սկսում է ավելի ու ավելի ուժգին արտահայտվել երկրորդ տենդենցը՝ արտադրությանը սեղմելու տենդենցը, որը որոշակի պահում կարող է գերակշռություն ստանալ։ Ամերիկյան որոշ տնտեսագետների կարծիքով, ԱՄՆ-ի էկոնոմիկան այժմ սկսում է մոտենալ այդ մոմենտին։

## ԲԱՆՎՈՐ ԴԱՍԱԿԱՐԳԻ ԴՐՈՒԹՅՈՒՆԸ

Արտադրության ընդլայնումը նպաստավոր պայմաններ է ստեղծում բանվոր դասակարգի՝ հանուն իր կենսամակարդակի մղած պայքարի համար։ Սակայն դրանից չի կարելի հետևություն անել, թե իբր արտադրության աճման պայմաններում միշտ և ամենուրեք տեղի է ունենում բանվորների դրության բարելավում և բացառված է այդ դրության վատացման ամեն մի հնարավորություն։ Կապիտալիստական արտադրության աճման պրոցեսը հակասական է, հակասական են նաև նրա սոցիալական հետևանքները։ Ուստի, սխալ կլիներ տեսնել մեդալի միայն մի կողմը։

Վերջին տարիներս նկատվող արտադրության աճը առաջ բերեց զբաղվածության աճ, որը բարելավեց բանվորների դրությունը աշխատանքի շուկայում և նպաստեց ներքին շուկայի ընդլայնմանը (տե՛ս 83-րդ էջի աղյուսակը)։

Աղյուսակը ցույց է տալիս զբաղվածության խիստ էական ավելացումը ԳՖՌ-ում, Իտալիայում ու Ճապոնիայում և նրա բավական չափավոր աճը ԱՄՆ-ում, Կանադայում ու Անգլիայում։ Վերջին երեք երկրներում 1964 թվականին արդյունաբերության մեջ զբաղվածության մակարդակը, ճգնաժամային 1958 թվականի համեմատությամբ, ավելացել է 4—8 տոկոսով, բայց հասել է սոսկ 1957 թվականի մակարդակին կամ փոքր-ինչ գերազանցել այն։ Ավելացնենք, որ ԱՄՆ-ի մշակող արդյունաբերության մեջ զբաղված աշխատողների թիվը 1963 թվականին ավելի ցածր էր իր այն առավելագույն մակարդակից, որին հասել էր 1943 և 1953 թվականներին։



Զբաղվածության աճը ոչ-գյուղատնտեսական ճյուղերում և մշակող արդյունաբերության մեջ[4]

(1958=100)

| Տարիներ | ԱՄՆ | | Անգլիա | | Կանադա | | ԳՖՌ | | Իտալիա | | Ճապոնիա | |
|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|
| | 1 | 2 | 1 | 2 | 1 | 2 | 1 | 2 | 1 | 2 | 1 | 2 |
| 1957 | 103 | 108 | 101 | 101 | 100 | 105 | 99 | 98 | 94 | 102 | 95 | 95 |
| 1959 | 104 | 105 | 101 | 100 | 104 | 101 | 104 | 102 | 100 | 100 | 105 | 102 |
| 1960 | 106 | 105 | 103 | 104 | 106 | 100 | 106 | 107 | 102 | 107 | 110 | 110 |
| 1961 | 105 | 102 | 104 | 105 | 108 | 99 | 109 | 110 | 105 | 114 | 116 | 118 |
| 1962 | 109 | 106 | 105 | 105 | 112 | 103 | 112 | 113 | 106 | 120 | 122 | 126 |
| 1963 | 111 | 107 | 105 | 104 | 115 | 106 | 114 | 115 | 108 | 123 | 127 | 131 |
| 1964 | 112 | 108 | 105 | 104 | 117 | 108 | — | — | — | — | 130 | 132 |

Դրանում արտահայտվում է այն զորեղ միջոցի ազդեցությունը, որը մոնոպոլիաներն օգտագործում են բանվորների դեմ, այն է՝ աշխատանքի կապիտալիստական ռացիոնալացման ու ինտենսիվացման և տեխնիկական կատարելագործումների արմատավորման ազդեցությունը։ Բավական է զուգադրել երկու թիվ. ԱՄՆ-ի մշակող արդյունաբերության արտադրանքը 1963 թվականին, 1958 թվականի համեմատությամբ, աճել է 33 տոկոսով, իսկ զբաղվածությունը՝ միայն 8 տոկոսով։ Արտադրանքի հիմնական մասը, այսպիսով, ստացվել է թողարկումն ավելացնելու հաշվին։ Կապիտալիստական արտադրության աճը բանվոր դասակարգին բերեց աշխատանքի աննախընթաց ինտենսիվություն և ծանրություն։

Զբաղվածության աճը, իհարկե, բարելավում է դրությունը աշխատանքի շուկայում և դրանով իսկ նպաստում իրենց կենսամակարդակի, այդ թվում աշխատավարձի ավելացման համար բանվորների մղած առավել հաջող պայքարին։ Ծավալուն գործադուլային պայքարի հետևանքով բանվորներին հաջողվել է վերջին տարիներս որոշ զիջումներ ստանալ կապիտալից։ Զբաղված բանվորների անվանական աշխատավարձը տարբեր երկրներում, ըստ պաշտոնական տվյալների, 1958 թվականի համեմատությամբ, աճել է 15—20 տոկոսով։

Սակայն անվանական աշխատավարձի աճը լրիվ պատկերացում չի տալիս կենսամակարդակի մասին։ Բանն ամենից առաջ այն է, որ անվանական աշխատավարձի աճը շարունակ նվազում է թանկության աճման հետևանքով։ Անգլիայում, Միացյալ Նահանգներում և Կանադայում անվանական աշխատավարձը 1964 թվականին, 1958 թվականի համեմատությամբ, աճել է 17—20 տոկոսով, մինչդեռ սպառողական ապրանքների արժեքի ինդեքսը, ըստ պաշտոնական տվյալների, նույն ժամանակամիջոցում բարձրացել է. ԱՄՆ-ում՝ մոտավորապես 7—8, Կանադայում՝ 8—9 և Անգլիայում՝ 15—16 տոկոսով։

4 «Monthly Bulletin of Statistics», October, 1964, pp. 8—10. 1964 թվականի համար բերվում են վեց—ութ ամիսների միջին տվյալները։ Սյունակ 1—զբաղվածությունը ոչ-գյուղատնտեսական ճյուղերում, սյունակ 2—զբաղվածությունը մշակող արդյունաբերության մեջ։

Ուստի, ռեալ աշխատավարձը նույն ժամանակամիջոցում ավելացել է. Անգլիայում՝ մոտավորապես 4—5, Կանադայում՝ 9—10 և ԱՄՆ-ում՝ 8—9 տոկոսով[5]։

Ուշադրության առնենք, սակայն, որ 1958 թվականը եղել է արտադրության ու աշխատավարձի ճգնաժամային անկման տարի։ Ուստի, պատկերը լրիվ դարձնելու համար, անհրաժեշտ է աշխատավարձի ներկայիս մակարդակը համեմատել նախաճգնաժամային մակարդակի հետ։ Այդ դեպքում դուրս է գալիս, որ ռեալ աշխատավարձի մակարդակը Կանադայում և Անգլիայում 1964 թվականին հազիվ է հասել 1956 թվականի մակարդակին, իսկ ԱՄՆ-ում միայն աննշան չափով է գերազանցել այն։ Բայց աշխատավարձի այդ աննշան բարձրացումն իսկ ձեռք է բերվել արտաժամյա աշխատանքի, աշխատանքի ինտենսիվության աճման և գործադուլային լարված պայքարի թանկ գնով։

Կարելի էր սպասել, որ զբաղվածության աճը կհանգեցնի գործազրկության վերացմանը կամ, գոնե, նրա խիստ նվազմանը։ Մինչմոնոպոլիստական կապիտալիզմի ժամանակաշրջանում սովորաբար այդպես էլ լինում էր վերելքի փուլում։ Արդի ժամանակաշրջանում պատկերն էապես փոխվել է։

Լրիվ գործազուրկների թիվը[6]

(հազար մարդ)

| Տարիներ | ԱՄՆ | Կանադա | Անգլիա | Ճապոնիա | ԳՖՀ | Ֆրանսիա | Իտալիա |
|---|---|---|---|---|---|---|---|
| 1957 | 2936 | 278 | 347 | 590 | 662 | 81 | 1643 |
| 1958 | 4681 | 432 | 501 | 630 | 683 | 93 | 1322 |
| 1959 | 3813 | 373 | 512 | 650 | 480 | 140 | 1117 |
| 1960 | 3931 | 448 | 393 | 500 | 237 | 131 | 836 |
| 1961 | 4806 | 469 | 377 | 440 | 161 | 112 | 710 |
| 1962 | 4007 | 391 | 500 | 400 | 142 | 101 | 611 |
| 1963 | 4166 | 373 | 612 | 400 | 176 | 97 | 507 |
| 1964 | 4138 | 336 | 480 | 417 | 184 | 94 | — |

Բերված տվյալները ցույց են տալիս բավական խայտաբղետ մի պատկեր։ Այնպիսի երկրներում, ինչպիսիք են՝ ԱՄՆ-ը, Կանադան, Անգլիան, արտադրության վերելքը վերջին տարիներին չհանգեցրեց ո՛չ միայն գործազրկության վերացման, այլ նույնիսկ նրա քիչ թե շատ էական կրճատման։ Գործազրկության մակարդակը ԱՄՆ-ում վերջերս ավելի բարձր է, քան նախաճգնաժամային 1959 ու 1960 թվականներին և մեծ չափով գերազանցում է 1957 թվականի նախաճգնաժամային մակարդակը։ Գործազրկությունն Անգլիայում վերջին երեք տարում հասել է մի մակարդակի, որը հետպատերազմյան տարիներին աննախադեպ է այդ երկրի համար և խիստ գերազանցել է ճգնաժամային 1958 թվականի մակարդակը։ Այսպիսով, արտադրության վերելքը որոշակի պայմաններում կարող է հանգեցնել նաև գործազրկության վերելքի։

Բայց գործազրկության աճը նշանակում է ընչազուրկ մարդկանց թվի աճ։ Զուր չէ, որ վերջին տարիներս ԱՄՆ-ում նորից պաշտոնապես հայտարարված

[5] Տե՛ս «Monthly Bulletin of Statistics», October, 1964, pp. 120—121, 150—157.

[6] «Monthly Bulletin of Statistics», October 1964, pp. 12—14.



է «աղքատության դեմ պատերազմելու» անհրաժեշտության մասին, իսկ գրականությունը համալրվել է մի ամբողջ շարք հրատարակություններով, որոնք նվիրված են աղքատության ու թշվառության պրոբլեմի վերլուծմանը կապիտալիստական աշխարհի այդ ամենահարուստ երկրում։

Բերված տվյալները ցույց են տալիս նաև, որ այնպիսի մի երկրում, ինչպիսին Ճապոնիան է, արտադրության վերելքն առաջ է բերել գործազրկության համեմատաբար ոչ այնքան մեծ նվազում, իսկ այնպիսի երկրներում, ինչպիսիք են Իտալիան ու ԳՖՌ-ն, վերելքն առաջ է բերել գործազրկության էական կրճատում։ Բայց փորձը ցույց է տալիս, որ գործազրկության էական կրճատման հետևանքով մի շարք դեպքերում կարող են երևան գալ չափազանց ցածր աշխատավարձ և աշխատանքի ու կենցաղի վատ պայմաններ ունեցող ընչազուրկ բանվորների մեծ ջոկատներ։ Դրանք ամենից առաջ ներգաղթած բանվորներն են, օտարերկրյա բանվորները, որոնց դրությունը չի կարելի անջատել բանվորների հիմնական մասսայի դրությունից։

Ահա ինչ է հաղորդել վերջերս օտարերկրյա բանվորների դրության մասին ֆրանսիական «Անտրեպրիզ» ժուռնալը։ Այնտեղ նշվում է, որ արտադրության ընդլայնումը բանվորների համար նպաստավոր պայմաններ ստեղծեց աշխատանքի շուկայում։ Աշխատավարձի բարձրացում թույլ չտալու համար ձեռնարկատերերն սկսեցին ուժեղացնել օտարերկրյա բանվորների հավաքագրումը։ Հավաքագրողները շրջագայում են Իտալիայում, Պորտուգալիայում, Իսպանիայում, Հունաստանում, Թուրքիայում և աֆրիկյան որոշ երկրներում։

Ֆրանսիայում ներկայումս կա մեկ միլիոնից ավելի օտարերկրյա բանվոր, դրանցից իտալացիներ են 510 հազար մարդ, իսպանացիներ՝ 260, պորտուգալացիներ՝ 65, գերմանացիներ՝ 43, ալժիրցիներ՝ 213, աֆրիկացիներ՝ 50 հազար մարդ և այլն։ 1961 թվականին օտարերկրյա բանվորների ներհոսը դեպի Ֆրանսիա կազմեց 122 հազար մարդ, 1962 թվականին՝ 160, 1963 թվականին՝ 115 հազար։

Արևմտյան Գերմանիայում նույնպես օտարերկրյա բանվորների թիվը ներկայումս անցնում է մեկ միլիոնից, այդ թվում իտալացիներ են 350 հազար, իսպանացիներ՝ 150, թուրքեր՝ 150, հույներ՝ 130 հազար մարդ և այլն։ Միջերկրական ծովի երկրները վեր են ածվել յուրատեսակ ագրարային թիկունքի, արևմտաեվրոպական գյուղի, որը էժան աշխատուժ է մատակարարում կենտրոնական Եվրոպայի երկրների շուկային։ Եթե ելնենք բերված տվյալներից, ապա օտարերկրյա բանվորները Ֆրանսիայում և ԳՖՌ-ում այժմ կազմում են այդ երկրների արդյունաբերության մեջ զբաղված բոլոր բանվորների մոտ 14—15 տոկոսը։ Իսկ փաստորեն նրանց թիվն ավելի մեծ է։

Ժուռնալը նշում է օտարերկրյա բանվորների նյութական, մասնավորապես բնակարանային ծանր դրությունը։ «Ֆրանսիան ներկա պահին,— ասված է ժուռնալում,— ընդունակ չէ ներգաղթած բանվորների համար երաշխավորել բնակարանային բավարար պայմաններ։ Դեռևս մոռացված չեն հյուսիսային աֆրիկացիներով, իսպանացիներով և պորտուգալացիներով բնակեցված, այսպես կոչված, բիդոնվիլների հետ կապված հաճախակի սկանդալային պատմությունները։ Բավական է դիտել Փարիզի այն շրջանը, որտեղ դրությունն ամենակրիտիկականն է։ Գտնում են, որ բնակարանով շատ վատ ապահովված բնակչությունն այստեղ հասնում է 50 հազարի։ Օտարերկրյա բանվորների շարունակվող ներհոսի կապակցությամբ բիդոնվիլների բնակիչների թիվը վեր-

չին երեք տարում ավելացել է երեք անգամ»[7]։ Ժուենալը ֆրանսիական ձեռ-
նարկատերերին կոչ է անում բանվորների թիվն ավելացնելու փոխարեն ուժե-
ղացնել կապիտալիստական ռացիոնալիզացիան, նոր տեխնիկայի արմատա-
վորումը և խիստ բարձրացնել աշխատանքի ինտենսիվությունը։ Ընդսմին,
Ժուենալը նշում է, որ արևմտագերմանական մոնոպոլիաներն արդեն բռնել են
այդ ուղին։

Բայց այդ ուղին (իսկ մրցակցության ազդեցության տակ այդ ուղին են
բռնում նաև ֆրանսիական մոնոպոլիաները) որոշ ժամանակ անց առաջ կբերի
դրության արմատական փոփոխություն աշխատանքի շուկայում և գործազրր-
կության աճ։

Կապիտալիստական երկրների բանվորական մասսաներն իրենց հաշիվ
են տալիս, որ կապիտալից խլած զիջումները չափազանց համեստ են և հա-
րաբերական։ ԱՄՆ-ի մսի պահածոների արդյունաբերության արհմիության գի-
տահետազոտական բյուրոյի դիրեկտորը, մատնանշելով ամերիկյան կորպո-
րացիաների շահույթների աճը, գրել է. «...շուռ տվեք դրամը և դուք կտեսնեք
հակառակ կողմը՝ գրեթե յոթ միլիոն բանվոր ապարդյուն աշխատանք են
որոնում։ 33-ից մինչև 38 միլիոն ամերիկացիներ... ապրում էր թշվառության
մեջ։ Տասնյակ միլիոնավոր այլ ամերիկացիներ շատ քիչ են բարձրացել թշվա-
ռության մակարդակից»։

Պետք է ընդգծել, որ կապիտալիստական երկրների բանվոր դասակարգի
նվաճումները ձեռք են բերված ոչ թե «բարի» կապիտալիստների կամ աշխա-
տավորների որոշակի կենսամակարդակը պահպանելու մասին իբր թե հոգա-
ցող «համաքարերար» պետության շնորհիվ, այլ բացառապես մասսաների
մղած անձնազոհ պայքարով։ Այդ պայքարում իմպերիալիստական պետու-
թյունը միշտ էլ գտնվել է (ինչպես հատուկ է իրեն) մոնոպոլիաների և բնավ ոչ
բանվորների կողմը։

Մասսաների ճնշման տակ ձեռնարկվող որոշ միջոցառումների կիրառման
ժամանակ բուրժուական պետությունն ամենից առաջ հոգ է տանում մոնոպո-
լիաների շահույթները պահպանելու մասին։ Անգլիայի լեյբորիստական կա-
ռավարությունը վերջերս աննշան չափով բարձրացրել է կենսաթոշակների ու
գործազրկության նպաստների չափը... սոցիալական ապահովության համար
բանվորների կատարած պարտադիր մուծումների ավելացման հաշվին։ Անգ-
լիայի բանվորական մամուլը արդարացիորեն նշում է, որ այդ միջոցառումը
պետք է անցկացվեր ոչ թե բանվորների, այլ շահույթից վերցվող հարկի բարձ-
րացման և ռազմական ծախսերի իջեցման հաշվին։ Սակայն շահույթից տո-
կոսառման հարցի քննարկումը, ի հաճույս գործարար շրջանների, հետաձվել է։

## ԻՐԱԴՐՈՒԹՅՈՒՆԸ ՀԱՄԱՇԽԱՐՀԱՅԻՆ ԿԱՊԻՏԱԼԻՍՏԱԿԱՆ ՇՈՒԿԱՅՈՒՄ։ ԷԿՈՆՈՄԻԿԱՆ Ա ԱՐՏԱՔԻՆ ՔԱՂԱՔԱԿԱՆՈՒԹՅՈՒՆԸ

Կապիտալիստական արտադրության աճը ուղեկցվում էր համաշխարհա-
յին կապիտալիստական շուկայի ընդլայնմամբ։ Կապիտալիստական երկրների
էքսպորտի ֆիզիկական ծավալը 1957-ից մինչև 1963 թվականը ավելացավ 38
տոկոսով, մինչդեռ արդյունաբերական արտադրությունն աճեց 34 տոկոսով[8]։

7 «L'Entreprise», 10 October 1964.
8 Տե՛ս «Monthly Bulletin of Statistics», October 1964, p. XII, September 1964, p. VIII.



էքսպորտի աճը շարունակվեց նաև 1964 թվականին։ Սակայն ո՛չ միայն ներ-
քին, այլև արտաքին շուկան սկսում է զգալ արտադրության և վճարունակ պա-
հանջարկի աճող հակասությունների ազդեցությունը։ Առկա է մրցակցության
պայքարի ուժեղացումը ինչպես ներքին, այնպես էլ արտաքին շուկաներում։

Այդ պայքարը ծավալվում է արտադրության զարգացման անհավասարա-
չափության և կապիտալիստական պետությունների ուժերի փոփոխվող հարա-
բերակցության հետևանքով։ Ցամաքային Եվրոպայի կապիտալիստական եր-
կրներում տեղի ունեցած արտադրության ավելի արագ աճը որոշեց նրանց
տեսակարար կշռի բարձրացումը համաշխարհային արտադրության մեջ ԱՄՆ-ի
և Անգլիայի տեսակարար կշռի անկման պայմաններում։ Առանձնապես նկա-
տելիորեն աճում է Իտալիայի, իսկ ոչ-եվրոպական երկրներից՝ Ճապոնիայի
տեսակարար կշիռը։

Համաշխարհային արտադրության մեջ արևմտաեվրոպական երկրների և
Ճապոնիայի տեսակարար կշռի բարձրացումը որոշեց նրանց ակտիվության
աճը համաշխարհային շուկայում։ Բայց այստեղ նրանց վիճակվեց դեմ-հան-
դիման կանգնել մի այնպիսի ուժեղ մրցակցի հետ, ինչպիսին է ԱՄՆ-ը, որը
պատերազմից հետո զավթել էր համաշխարհային շուկայի առյուծի բաժինը։
Համաշխարհային շուկայում ծավալված ճակատամարտում արևմտաեվրոպա-
կան երկրները և Ճապոնիան հետզհետե նեղում են իրենց անդրօվկիանոսյան
հզոր մրցակցին և նվաճում նորանոր դիրքեր։ 1957-ից մինչև 1963 թվականը
Արևմտյան Եվրոպայի ցամաքային երկրները կարողացան արտադրությունն
ընդլայնել 33 տոկոսով և էքսպորտն ավելացնել 52 տոկոսով, մինչդեռ ԱՄՆ-ը,
որ արտադրությունն ընդլայնել է 24 տոկոսով, իր էքսպորտն ավելացրեց 10
տոկոսով[9]։ Այլ կերպ ասած՝ արևմտաեվրոպական երկրների արտաքին շու-
կայի ընդլայնումը գերազանցեց արտադրության աճը, իսկ Միացյալ Նահանգ-
ներում ետ մնաց նրանից։

Ի՞նչ չափով են Արևմտաեվրոպական երկրներն ու Ճապոնիան լուրջ մրցա-
կիցներ ԱՄՆ-ի համար։ Պատերազմից անմիջապես հետո Արևմտյան Եվրոպա-
յի երկրներն ու Ճապոնիան փաստորեն դուրս էին մնացել ո՛չ միայն ԱՄՆ-ի
մրցակիցների թվից, այլև ընդհանրապես արտածողների թվից։ Նրանց էքըս-
պորտն այն ժամանակ համարյա չքացել էր, իսկ Միացյալ Նահանգներն իշ-
խում էին համաշխարհային կապիտալիստական շուկայում։ Այժմ դրությունը
փոխվել է։ 1963 թվականի տվյալներով ԱՄՆ-ի բաժինը կապիտալիստական
երկրների էքսպորտում կազմում էր ավելի քան 17, իսկ Արևմտյան Եվրոպայի
կապիտալիստական երկրների բաժինը՝ մոտ 47 տոկոս[10]։ Այսպիսով, եվրո-
պական երկրներն արտահանում են երկուս ու կես անգամ ավելի շատ ապ-
րանք, քան ԱՄՆ-ը։ Բացի դրանից, ինքը՝ Արևմտյան Եվրոպան մինչև այժմ
էլ կլանում է ամերիկյան արտահանության զգալի մասը։

Ի դեմս Արևմտյան Եվրոպայի ցամաքային երկրների Միացյալ Նահանգ-
ները ձեռք են բերել խիստ վտանգավոր մի մրցակից, և նրանք այժմ այդ բանն
զգում են ինչպես տնտեսական, այնպես էլ քաղաքական բնագավառում։ ԱՄՆ-ի
և արևմտաեվրոպական երկրների միջև եղած տնտեսական վիճելի հարցերի
լուծումը գնալով դառնում է ավելի դժվարին։ Պատերազմին հաջորդող առաջին

9 Տե՛ս «Monthly Bulletin of Statistics», May, October 1964.
10 Տե՛ս «Monthly Bulletin of Statistics», May 1964, p. 89.

շրջանում Միացյալ Նահանգները հեշտությամբ արևմտաեվրոպական երկրների վզին էին փաթաթում իրենց բոլոր պայմանները։ Այժմ դրությունն այլ է։ Այդ մասին են վկայում թեկուզ և այն հսկայական դժվարությունները, որոնց հանդիպել են արդյունաբերական ապրանքների մաքսերը փոխադարձաբար իջեցնելու վերաբերյալ բանակցությունները, որ վարվում են ԳԱՏՏ-ի շրջանակներում։

Լուրջ տնտեսական հիմքեր ունեն ՆԱՏՕ-ի գծով ԱՄՆ-ի արևմտաեվրոպական պարտնյորների ըմբոստությունն ու անհնազանդությունը մի շարք հարցերում։ Բնորոշ է, որ ՆԱՏՕ-ի բազմակողմանի միջուկային ուժերի հարցում ԱՄՆ-ի կողմը բռնեց միայն ռևանշիստական Արևմտյան Գերմանիան և մեկ էլ մանևրող Անգլիան։ Ինչ վերաբերում է արևմտաեվրոպական մյուս պետություններին, ապա դրանց մի մասը տատանվում է, իսկ մյուս մասը կտրուկ կերպով հրաժարվում այդ նախագծից։ Դառը փորձի ազդեցության տակ արևմտաեվրոպական պետությունների գործիչներից շատերը հասկացել են Եվրոպայում ԱՄՆ-ի վարած քաղաքականության ոչ-խորամանկ գաղտնիքը, այն է՝ իր դիկտատին ենթարկել մյուս երկրները նրանց իր գլխավորությամբ բլոկների մեջ միավորելու միջոցով՝ իբր թե այդ երկրները կոմունիզմից պաշտպանելու համար։

Արդի մոմենտի համար հատկանշական կարելի է համարել Ֆրանսիայի պրեմիեր-մինիստր Պոմպիդուի հայտարարությունը բազմակողմանի միջուկային ուժերի նախագծի առթիվ։ «Այդպիսի նախագիծը, այդպիսի բազմակողմանի ուժերը,— ասել է նա,— արդյոք կործանարար չե՞ն Եվրոպայի համար, արդյոք պրովոկացիոն չե՞ն մի քանի ուրիշ երկրների համար և, վերջին հաշվով, դրանք այս կամ այն չափով ուղղված չե՞ն Ֆրանսիայի դեմ»։

Միևնույն ժամանակ ինքը՝ Արևմտյան Եվրոպան, բաժանված է մաքսային բարձր պատնեշներով անջրպետված և իրար թշնամի խմբավորումների, այսպես կոչված՝ Եվրոպական տնտեսական համագործակցության («Ընդհանուր շուկա»)՝ ԳՖՌ-ի ու Ֆրանսիայի գլխավորությամբ և Ազատ առևտրի եվրոպական ասոցիացիայի՝ Անգլիայի գլխավորությամբ։ Անգլիան «Ընդհանուր շուկայի» մեջ մտցնելու միջոցով այդ խմբավորումներին հաշտեցնելու փորձը, ինչպես հայտնի է, ձախողվեց։

Բայց դրությունը հանգիստ չէ նաև այդ խմբավորումներից յուրաքանչյուրի ներսում։ Եվրոպական տնտեսական համագործակցության շրջանակներում Ֆրանսիայի և ԳՖՌ-ի միջև լուրջ ընդհարումներ են տեղի ունենում ինչպես տնտեսական, այնպես էլ քաղաքական հարցերում։ Որպես օրինակ կարելի է մատնանշել սուր պրոբլեմներից մեկի՝ «Ընդհանուր շուկայի» շրջանակներում գյուղատնտեսական քաղաքականության հարցի շուրջը վարած բանակցությունները։ Ֆրանսիայի համար այդ հարցի կարևորությունն ու նրա նշանակությունը բնութագրվում են դը Գոլի հայտարարությամբ, որը հասկացնել է տվել, թե Ֆրանսիան համագործակցությունից դուրս կգա, եթե հարցը նրա համար ցանկալի ձևով չլուծվի։

Արևմտագերմանական պարտնյորը Ֆրանսիային մեղադրում է այն բանում, որ նա ամենից շատ է շահել «ինտեգրացիայից», սակայն շահելով, այժմ սեպարատ քաղաքականություն է վարում համաշխարհային շուկայում, արհամարհելով իր պարտնյորների շահերը, Ֆրանսիան, ընդհակառակը, Արևմտյան



Գերմանիային է մեղադրում այն բանում, որ նա «ինտեգրացիան» օգտագործել է իր շահերի համար՝ համագործակցության երկրների շուկաները թափանցելու համար, որտեղ նա ավելի շատ վաճառում է, քան գնում։ «Ընդհանուր շուկայի» գծով երկու գլխավոր պարտնյորների այդ մենամարտը վկայում է արևմտագերմանական ու ֆրանսիական մոնոպոլիաների միջև մղվող պայքարի սրման մասին, որի մեջ ԳՖՌ-ի ավելի հզոր մոնոպոլիաներն սկսել են խիստ նեղել ֆրանսիական կոլեգաներին։

Այդ պայքարի սրումը վկայում է համագործակցության ներքին շուկաների ռեզերվների սպառման մասին։ Համագործակցության մեջ մտնող երկրների ընդլայնված արտադրական կարողությունները չեն տեղավորվում այդ երկրների ներքին շուկայի շրջանակներում։ Այդ առաջ է բերում երկպառակությունների ուժեղացում մրցակիցների միջև, ինչպես նաև նոր շուկաների տենդագին որոնում՝ համագործակցության սահմաններից դուրս։ Բայց այդ որոնումները հղի են նոր բարդություններով համաշխարհային շուկայի արդեն ավելի լայն ասպարեզում։ Առկա է «Ընդհանուր շուկայի» բացահայտ ճգնաժամը, որն այժմ ընդունում է նույնիսկ ամերիկյան մամուլը։

Ուժեղանում են բախումները նաև Ազատ առևտրի եվրոպական ասոցիացիայի ներսում։ Այստեղ հակասությունների կրակին վերջերս յուղ ավելացրեց Անգլիան, որը 15 տոկոսով բարձրացրեց ներմուծվող ապրանքներից գանձվող մաքսը։ Այդ միջոցառումը խիստ ազդում է ասոցիացիայի մնացյալ մասնակիցների՝ Դանիայի, Շվեդիայի, Նորվեգիայի, Ավստրիայի, Շվեյցարիայի և Պորտուգալիայի էքսպորտային առևտրի վրա։ Դանիայի արտաքին գործերի մինիստրն այդ կապակցությամբ հայտարարել է, որ Ազատ առևտրի եվրոպական ասոցիացիան ներկայումս «ամենասուր ճգնաժամի» շրջան է ապրում։ Ասոցիացիայի մեջ մտնող երկրներից մի քանիսում նույնիսկ սկսել են խոսել այդ ասոցիացիայից դուրս գալու մասին։ Մամուլում հաղորդում է երևացել այն մասին, որ Ավստրիան պատրաստ է ասոցիացիայի լագերից անցնել «Ընդհանուր շուկայի» լագերը։

Կապիտալիստական երկրների միջև եղած հակասությունների սրումը վկայում է, որ իրացման դժվարություններն աճում են, որ համաշխարհային կապիտալիստական շուկայի հնարավորությունները տվյալ էտապում սպառվում են։

## ԿԱՊԻՏԱԼԻՍՏԱԿԱՆ ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ԶԱՐԳԱՑՄԱՆ ՀԵՌԱՆԿԱՐՆԵՐԻ ՄԱՍԻՆ

Կապիտալիստական էկոնոմիկայի զարգացման հեռանկարները որոշելու համար ամենից առաջ մենք պետք է գնահատենք նրա արդի վիճակը կապիտալիստական ցիկլի շարժման տեսակետից։ Բերված տվյալների հիման վրա մենք կարող ենք ցիկլի արդի փուլը մեծ հավաստիությամբ որոշել որպես վերելքի փուլ։ Կարևոր է նշել, որ այժմ վերելքը կրում է ընդհանուր բնույթ, այսինքն՝ վերելքի փուլը ժամանակի առումով հիմնականում զուգադիպել է բոլոր զարգացած կապիտալիստական երկրներում։ Բայց կապիտալիստական ցիկլում վերելքի փուլը անմիջականորեն նախորդում է ճգնաժամի փուլին, ընդ որում, որքան ավելի բարձր է արտադրության աճը վերելքի փուլում, այնքան ավելի խոր է նրա անկումը ճգնաժամի փուլում։ Եթե ելնենք այդ դրույթից,

*ապա համաշխարհային կապիտալիստական էկոնոմիկայի հեռանկարը տնտեսական ճգնաժամն է։*

*Մինչև այժմ տնտեսական ցնցումների էպիկենտրոնը եղել է ամենազարգացած կապիտալիստական երկիրը՝ ԱՄՆ-ը։ Նկատի ունենալով այն, որ այժմ էլ Միացյալ Նահանգները մնում են կապիտալիզմի գլխավոր երկիրը, որն արտադրում է կապիտալիստական աշխարհի արդյունաբերական արտադրանքի մոտ կեսը և որին, բացի դրանից, ամենից ավելի է հարվածում գերարտադրության հիվանդությունը, հիմք կա ենթադրելու, որ նոր ճգնաժամ կարող է սկսվել նաև ԱՄՆ-ում։*

*Բայց ինչպիսի՞ն կլինի ճգնաժամը։ Միացյալ Նահանգների հետպատերազմյան զարգացումը ցույց տվեց երկու տեսակ ճգնաժամ՝ համաշխարհային ցիկլային ճգնաժամ, ինչպիսին էր 1957—1958 թվականներինը, և տեղական միջակա ճգնաժամ, ինչպիսիք էին 1948—1949, 1953—1954 և 1960—1961 թվականների ճգնաժամերը, որոնք հարվածեցին միայն Միացյալ Նահանգներին (կամ ԱՄՆ-ին ու Կանադային)։ Առանձին երկրների համար տեղական նոր միջակա ճգնաժամի հնարավորությունը տվյալ ցիկլում լրիվին չի բացառված։ Եթե այդպիսին բռնկի, ապա այն, հավանորեն, առանձնապես խոր չի լինի։ Չնայած դրան, այդ ճգնաժամը էական չափով կիջեցնի արտադրության ու առևտրի վերելքի կորագիծը և ոչ թե կբացառի համաշխարհային տնտեսական ճգնաժամը, այլ կլինի նրա յուրատեսակ նախադուռը։*

*Դրա հետ մեկտեղ, նկատի ունենալով այն հանգամանքը, որ պատերազմի առաջացրած համաշխարհային ցիկլի փուլերի դեսինխրոնացման ազդեցությունը վերջանում է, որի մասին վկայում է ժամանակի առումով վերելքի ընթյունը վերջանում է, որի մասին վկայում է ժամանակի առումով վերելքի ընթացիկ փուլի զուգադիպումը, կարելի է ենթադրել, որ ԱՄՆ-ում տվյալ ցիկլում միջակա ճգնաժամ կարող է նաև չլինել և, հետևաբար, հերթական ճգնաժամ կարող է լինել հենց համաշխարհային տնտեսական ճգնաժամը։*

«Международная жизнь»
№ 1, 1965





# ԿՈՄՈՒՆԻԶՄԸ ԵՎ ԱՆՁՆԱԿԱՆ ՍԵՓԱԿԱՆՈՒԹՅՈՒՆԸ

Մեր զարգացման արդի ժամանակաշրջանում, երբ կոմունիստական հասարակարգի կառուցումը դարձել է սովետական ժողովրդի անմիջական գործնական խնդիրը, մարդկանց ապրելակերպի բազմաթիվ հարցեր զբաղեցնում են հասարակության, դառնում քննարկման ու բանավեճի նյութ։ Դրանց թվին է պատկանում նաև անձնական սեփականության հարցը։ Կպահպանվի՞ արդյոք անձնական սեփականությունը կոմունիզմի ժամանակ։ Այդ հարցին տալիս են բեր ու դեմ պատասխաններ։

Պարզենք նախ, թե ինչ բան է անձնական սեփականությունը և որն է նրա սոցիալ-տնտեսական բովանդակությունը։

## 1.

Սոցիալիստական ռևոլյուցիայի շնորհիվ պատմության մեջ առաջին անգամ ծնունդ առավ արտադրության միջոցների հանրային սեփականություն։ Այժմ արդեն մեր երկրում համարյա չկան մենատնտես գյուղացիական տնտեսություններ։ Մնացել են սակավաթիվ չկոոպերացված տնայնագործներ, որոնց տնտեսությունը զերծ է շահագործումից և հիմնված է նրանց անձնական աշխատանքի վրա։

Սովետական մարդիկ՝ բանվորները, կոլտնտեսականներն ու ինտելիգենցիան, ունեն անձնական սեփականություն, որն անխզելիորեն կապված է սոցիալիստական տնտեսաձևի հաղթանակի հետ։ Այս իմաստով սովետական մարդկանց անձնական սեփականությունը նոր ձևի սեփականություն է, պետական սոցիալիստական և կոոպերատիվ-կոլտնտեսային սեփականությունից ածանցված ձև (և ոչ թե սոցիալիստական սեփականության երրորդ ձևը, ինչպես կարծում են ոմանք)։

Պատահական չէ, որ «անձնական սեփականություն» տերմինը գործածության մեջ է մտել երեսնական թվականներին, ՍՍՌՄ-ի նոր կոնստիտուցիայի նախագծի քննարկման ու հաստատման ժամանակաշրջանում։ Մինչ այդ հազվադեպ էր օգտագործվում «անձնական սեփականություն» տերմինը։ Գործածական էր «անհատական սեփականություն» տերմինը, որը հավասարապես վերաբերում էր և՛ աշխատավորի սեփականության սպառման առարկաների նկատմամբ, և՛ արտադրամիջոցների մասնավոր կապիտալիստական ու մանր արտադրողների մասնավոր սեփականության։

Անձնական սեփականության հիմնական աղբյուրը սովետական մարդկանց աշխատանքն է սոցիալիստական տնտեսության մեջ։ Անձնական սեփականության մեջ իր արտացոլումն է գտնում «ով աշխատի, նա կուտի» պարզ ու մատչելի սոցիալիստական սկզբունքը։ Հասարակության զարգացման որոշակի ժամանակաշրջանում քաղաքացիների անձնական սեփականությունը լրացվում է հասարակական ֆոնդերից, ինչպես և բանվորների ու ծառայողների կոլեկտիվ ու անհատական բանջարանոցներից ու այգիներից և կոլտնտեսականների օժանդակ տնտեսություններից ստացված եկամուտներով։

Անձնական սեփականության օբյեկտը սպառման առարկաներն են, որոնք չեն կարող անաշխատ եկամտի աղբյուր կամ շահագործման միջոց լինել։

Մեր զարգացման ժամանակակից էտապում գոյություն ունի անձնական սեփականության երկու ձև՝ քաղաքացիների անձնական սեփականություն և կոլտնտեսային բնտանիքի անձնական սեփականություն։ Դրանք արտացոլում են սոցիալիստական սեփականության երկու ձևի և նրանց կրողների՝ մեր հասարակության երկու բարեկամական դասակարգերի՝ բանվոր դասակարգի և կոլտնտեսային գյուղացիական դասակարգի, առկայությունը։

Քաղաքացիների անձնական սեփականությունն են կազմում նրանց աշխատանքային եկամուտներն ու խնայողությունները, բնակելի շենքն ու

տնային տնտեսությունը, տնային տնտեսության ու առօրյա գործածության իրերը, անձնական սպառման ու հարմարության առարկաները, որոնք ձեռք են բերված անձնական աշխատանքով ու ժառանգման իրավունքով:

Յուրաքանչյուր կոլտնտեսային ընտանիքի անձնական սեփականությունն են կազմում (բացի կոլտնտեսային հանրային տնտեսությունից ստացած հիմնական եկամտից) նաև օժանդակ տընտեսությունը, մթերատու անասունները, թռչունները ու օժանդակ տնտեսությունը վարելու համար գյուղատնտեսական մանր ինվենտարը, ինչպես և բնակելի տունը:

Անձնական սեփականության այս երկու այլաձևությունների համար բնորոշ է ո՛չ միայն այն, որ նրանց աղբյուրը սոցիալիստական սեփականությունն է, որ նրանք ածանցված են սոցիալիստական սեփականությունից, այլև այն, որ նրանք ունեն սպառողական բնույթ, ծառայում են սովետական մարդկանց նյութական ու կուլտուրական հարաճուն պահանջմունքների բավարարմանը:

Արդյունաբերության ու գյուղատնտեսության զարգացման և քաղաքացիների ու կոլտնտեսային ընտանիքի իրական եկամուտների աճման շնորհիվ աճում են մարդկանց նյութական ու կուլտուրական պահանջմունքները, նրանք հնարավորություն են ստանում ձեռք բերելու անձնական սպառման ու առօրյա գործածության նորանոր առարկաներ: Ուստի և չի կարելի սահմանել անձնական սեփականության առարկաների սպառիչ ցանկ: Սակայն բանը միայն այդ չէ: Միևնույն առարկան կարող է ծառայել քաղաքացու և նրա ընտանիքի անդամների անձնական պահանջմունքների բավարարմանը, բայց և կարող է վերածվել անաշխատ եկամուտների աղբյուրի: Կարի մեքենան կարող է օգտագործվել ընտանիքի կարիքների համար, բայց կարող է և ծառայել պատվերով աշխատանք կատարելուն: Ավտոմեքենան կարող է օգտագործվել անձնական կարիքների համար, բայց դրանով կարելի է և վարձով ուղևոր փոխադրել: Բնակելի շենքը կարող է օգտագործվել իր համար, բայց կարող է և սիստեմատիկորեն վարձով տրվել ուրիշին, ընդ որում, բարձր վճարով:

Սովետական օրենքները արգելում են անձնական սեփականության օգտագործումը անաշխատ եկամուտներ ստանալու նպատակով՝ ուրիշի աշխատանքը շահագործելու, սպեկուլյատիվ նկատառումներով կամ օգուտ քաղելու համար սիստեմատիկորեն վարձով այլ անձանց տալու միջոցով: Անձնական սեփականության առարկաները կոչված են բավարարելու իրենց տերերի նյութական ու կուլտուրական կարիքները: Այս ամենից հետևում է, որ անձնական սեփականություն չեն կազմում այն ամենը, ինչ ձեռք է բերված անաշխատ եկամտով:

Վերն արդեն ասացինք, որ անձնական սեփականությունը տարածվում է անձնական սպառման ու հարմարության առարկաների վրա, որ անձնական սեփականությունն ունի սպառողական բնույթ: Սակայն դրանով չի սպառվում հարցը: Ինքը՝ սպառումը, հասարակական վերարտադրության մոմենտ է, արտադրության ավարտակետն առհասարակ:

Սոցիալիզմի պայմաններում անձնական սեփականությունը սերտորեն կապված է աշխատավորների անձնական նյութական շահագրգռվածության հետ և զգալիորեն ներգործում է սոցիալիստական արտադրության զարգացման վրա: Անձնական սեփականության տնտեսական կատեգորիան զուգակցում է անձնական ու հասարակական շահերը: Ազգային եկամտի աճը ապահովում է սովետական մարդկանց եկամուտների աճը:

Անձնական սեփականությունը պատկանում է սոցիալիստական հասարակության աշխատավորին, առանձին անձանց, առանձին անհատների: Սակայն չի կարելի անձնական սեփականությունը նույնացնել «անհատական սեփականություն» հասկացության հետ: Այդ հասկացությունը չի զանազանում սեփականության տարբեր տիպերն ու ձևերը՝ ստրկատիրական, ֆեոդալական ու կապիտալիստական սեփականության ձևերը, չի տարբերում կապիտալիստի անհատական մասնավոր սեփականությունը բանվորի անհատական սեփականությունից: «Անհատական սեփականություն» հասկացությունը ջնջում է տարբերությունը կապիտալիստ շահագործողի և վարձու բանվորի միջև: Արտաքնապես արտադրամիջոցները ու սպառման առարկաները յուրացվում են իբրև ապրանք:

Արտաքին ձևի այս միօրինակությունն ստեղծում է բովանդակության նույնության պատրանք: Իսկ բուրժուական իրավագիտությունը չի էլ ջանում դիֆերենցել «անհատական սեփականությունը» ըստ իր առաջացման աղբյուրի և այդ նրան պետք էլ չէ: Մասնավոր սեփականության սրբազանության ու անձեռնմխելիության հռչակումով վարագուրված բուրժուական գաղափարախոսները ջանք ու եռանդ չեն խնայում կապիտալիստական շահագործման հարաբերությունները ներկայացնելու իբրև մարդկային հարաբերություններ, կապիտալիզմը՝ իբրև «ժողովրդական կապիտալիզմ», բաներ, որոնք այնքան են մոտ ճշմարտությանը, որքան երկինքը՝ երկրին:

Մարքսը դեռ Կապիտալում համոզիչ կերպով ցույց է տվել, որ տարբեր բովանդակություն ունի սեփականության իրավունքը կապիտալիստի և բանվորի համար: «Սեփականությունը կապիտալիստի համար ուրիշի անվճար աշխատանքը կամ նրա արդյունքը յուրացնելու իրավունք է, բանվորի համար՝ իր սեփական արդյունքը յուրացնելու անհնարինություն» (Կապիտալ, հատոր 1, 1954 թ., էջ 612): Համարժեքային փոխանակության բովանդակությանը խորթ թվացող այս հետևանքը ստացվում է ոչ թե՝ ապրանքային արտադրությանը համապատասխանող սեփականության իրավունքի խախտման պատճառով, այլ հենց այդ օրենքների գործողության շնորհիվ. «Ապրանքային արտադրության և ապրանքային շրջանառության վրա հիմնված յուրացման օրենքը կամ մասնավոր սեփականության օրենքը սեփական, ներքին, անխուսափելի դիալեկտիկայի հետևանքով փոխարկվում է իր ուղղակի հակադրությանը» (նույն տեղում, էջ 611): Հասկանալի է, թե ինչու բուրժուական իրավագիտությունը չի զբաղվում «անհատական սեփականության» առաջացման աղբյուրների հարցով:

Բնականաբար հարց կարող է ծագել, գոյություն ունի՞ անձնական սեփականություն կապիտալիզմի ժամանակ ու նրան նախորդած հասարակարգերում: Սովետական որոշ տնտեսագետներ, ճիշտ սահմանելով, որ անձնական սեփականության աղբյուրը սոցիալիզմի ժամանակ հիմնականում ըստ աշխատանքի բաշխման հետևանքով ստացված եկամուտներն են, սխալ հետևություն են կատարում, ժխտելով անձնական սեփականության կատեգորիայի գոյությունը մինչկապիտալիստական հասարակարգերում (այդպես է վարվում, օրինակ, Դ. Յ. Երեմեևը Անձնական սեփականության իրավունքը ՍՍՌՄ-ում գրքում, 1958 թ.): Դրա հետ համաձայն չենք: Անձնական սեփականությունը գոյություն ունի նաև մինչսոցիալիստական հասարակարգերում: Նրա ընդհանուր հատկանիշը հանրօգուտ աշխատանքի միջոցով ձեռք բերված անձնական սպառման ու հարմարության առարկաների յուրացումն է անհատի վերարտադրության համար: Ինքը՝ յուրացման ձևը, փոխվում է արտադրաեղանակի փոփոխման համապատասխան, այլ կերպ ասած՝ փոխվում է անձնական սեփականության գոյացման աղբյուրը: Այն կարող է լինել համայնական աշխատանքի ու հավասարար բաշխման արդյունք, ինչպես նախնադարյան համայնական հասարակարգում, արտատնտեսական հարկադրանքի պայմաններում կատարվող աշխատանքի արդյունք, ինչպես ստրկատիրական ու ֆեոդալական հասարակարգերում, աշխատուժ ապրանքի վաճառքի արդյունք, ինչպես կապիտալիզմի ժամանակ, ուրիշի աշխատանքը չշահագործող մենատնտես գյուղացու և մասնավոր սեփականատեր տնայնագործի անձնական աշխատանքի արդյունք:

Փոխվում են անձնական սեփականության սոցիալ-տնտեսական բովանդակությունը, անձնական սեփականության կատեգորիայով արտահայտվող արտադրական հարաբերությունները: Պատմականորեն փոխվում է արտադրության ոլորտից բաշխման ու փոխանակության համապատասխան ձևերի միջոցով սպառման առարկաների շարժումը մինչև սպառումը արտադրամիջոցների սեփականության իշխող ձևի բնույթին համապատասխան: Այս ամենը, սակայն, չի նշանակում անձնական սեփականության, անձնական պահանջմունքների բավարարման, անձնական սպառման տնտեսական ձևի բացակայություն:

Անձնական սեփականությունը յուրաքանչյուր հասարակարգի արտադրական հարաբերությունների վերարտադրության անհրաժեշտ ու անխուսափելի մոմենտն է: Արտադրողական ուժերի զարգացմանը համընթաց փոխվում է նաև անձնական սեփականությունը կազմող առարկաների կազմը, որում իր արտացոլումն է գտնում պահանջմունքների բարձրացման օրենքը: Անձնական սեփականության գոյության ընդունումը մինչսոցիալիստական հասարակարգերում չի նսեմացնում անձնական սեփականության սոցիալիստական էությունը սոցիալիզմի ժամանակ, նրա նույնատիպությունը սոցիալիստական սեփականության հետ, այլ դրսևորում է սոցիալիզմի ժամանակ անձնական սեփականության առավելությունն ու պրոգրեսիվ բնույթը մինչսոցիալիստական հասարակարգերի ու մասնավորապես կապիտալիզմի համեմատությամբ, որը պայմանավորված է սոցիալիստական տնտեսաձևի առավելությամբ:

## 2

Հարց է ծագում, գոյություն կունենա՞ արդյոք անձնական սեփականությունը կոմունիզմի ժամանակ:

Սովետական որոշ տնտեսագետներ բացասական պատասխան են տալիս այս հարցին, ժխտում են անձնական սեփականության գոյությունը կոմունիզմի ժամանակ: Նրանք պատճառաբանում են այդ նրանով, որ կոմունիզմի ժամանակ փող և ապրանքափոխանակություն չեն լինելու, հետևաբար, հնարավոր չի լինելու վաճառել, փոխանակել, վերանալու է ժառանգելու անհրաժեշտությունը, անձնական սպառման առարկաները մարդիկ ստանալու են հասարակական ֆոնդերից՝ ըստ պահանջմունքների, ուստի և վերանալու է անձնական սեփականությունը, այն մահանալու է: Այս տեսակետին են, օրինակ, տնտեսագետներ Մ. Կոլգանովը, Ե. Մանևիչը: Մ. Կոլգանովը անհիմն է համարում այն տնտե-

սագետների կարծիքը, որոնք լիակատար կոմունիզմի ժամանակ էլ ընդունում են անձնական սեփականության անհրաժեշտությունը: Նա ակնարկում է մասնավորապես Գ. Գակի Կոմունիզմը և անձնական սեփականությունը հոդվածը, տպագրված *Коммунист* հանդեսի 1961 թվականի № 1-ում և Ս. Ստրումիլինի պատասխանները ընթերցողների հարցերին, տպագրված *Известия*-ի 1961 թվականի օգոստոսի 30-ի համարում (տե՛ս նրա *Собственность в период перехода к коммунизму, М.*, 1963, բրոշյուրը, էջ 72):

Մ. Կոլգանովը գրում է. «Հասարակական տունը, կահույքը, հեռուստացույցը, ավտոմեքենան նույնքան լավ կարող են բավարարել անձնական պահանջմունքները, ինչպես և այդ նույն առարկաները անձնական սեփականություն եղած դեպքում: Այսպիսով, սեփականությունը ոչ մի առնչություն չունի անձնական պահանջմունքների բավարարման հետ» (նույն տեղում, էջ 73): Մատնանշելով, որ հետզհետե մարդիկ ավելի ու ավելի են ստանալու իրենց պահանջմունքները բավարարելու համար անհրաժեշտ միջոցներն ու առարկաները հասարակական ֆոնդերից, առանց ապրանքային հարաբերությունների, Մ. Կոլգանովը եզրակացնում է. «Այդ պրոցեսի զարգացումը պետք է բերի նրան, որ հասարակական ֆոնդերը պետք է կլանեն աշխատավարձն ամբողջությամբ: Դրա հետևանքը լինելու է անձնական սեփականության անհետացումը...» (նույն տեղում, էջ 77):

Ճշմարիտ է, իհարկե, որ կոմունիզմի ժամանակ փող և ապրանքաշրջանառություն չի լինելու, մարդիկ հասարակությունից ստանալու են անձնական սպառման համար անհրաժեշտ միջոցներն ու առարկաները անվճար՝ ըստ պահանջմունքի, կոմունիստական բաշխման սկզբունքի համաձայն, որ պահանջմունքը բավարարելու բուն պրոցեսի տեսակետից նշանակություն չունի, թե առարկան փողով կամ անվճար է ձեռք բերված: Դրանք վերաբերում են անձնական սեփականության գոյացման աղբյուրին և բաշխման կոմունիստական ձևով պայմանավորված անձնական սեփականության համար այժմ բնորոշ հատկանիշների (վաճառք, փոխանակում, նվիրում, ժառանգում) վերացմանը և բավական չեն ժխտելու համար անձնական սեփականության գոյության անհրաժեշտությունը կոմունիզմի ժամանակ:

Ինչ վերաբերում է նվիրատվությանն ու ժառանգմանը, ապա, թերևս, դժվար չէ հասկանալ, որ այդ հատկանիշները որոշակի ձևով կմնան նաև կոմունիզմի ժամանակ, իբրև մարդկային ընկերական ու մտերմական հարաբերությունների և հիշատակի հետ կապված վկայություններ: Ինչո՞ւ, օրինակ, պետք է կարծել, որ գրողը, գիտնականը, արվեստագետը, երաժիշտը զուրկ պետք է լինեն իրենց աշխատությունը, ստեղծագործությունը ընկերոջը, մտերիմին նվիրելու, ընծայելու գեղեցիկ զգացումից ու պահանջից, հարաբերություններ, որոնք ծավալվելու բոլոր հնարավորություններն ունեն:

Կարելի՞ է մտածել այսպես, թե երբ ձեր ընկերը, բարեկամը, որի հետ ավելի մոտ ու մտերմական հարաբերությունների մեջ եք գտնըվում, քան հասարակության բոլոր մյուս անդամների հետ, չի բաժանի իր ուրախությունը՝ ընծայելով իր աշխատությունը ձեզ, մանավանդ, երբ դուք նույն կամ հարակից բնագավառի հարցերով եք զբաղվում, այլ պետք է մտածի այսպես. «Երբ նրան այդ հարկավոր է, ապա նա կարող է հասարակական ֆոնդից վերցնել ըստ պահանջմունքի»: Կամ ինչո՞ւ կարծել, թե ձեր մտերիմ բարեկամ նկարիչը չի կարող ձեր ծննդյան օրը կամ որևէ այլ նշանակալից դեպքի առթիվ նվիրաբերել իր վրձնի արգասիքը և պետք է մտածի այսպես. «Թող հասարակությունը պատճենահանի ու բազմացնի, իսկ ում ցանկալի է, թող ստանա հասարակական ֆոնդից՝ ըստ պահանջմունքի»:

Կամ ինչո՞ւ կարծել, թե եղբայրը կամ քույրը, տղան ու աղջիկը, թոռը և այլն զուրկ պետք է լինեն ժառանգելու որևէ իր, որպես հիշատակ ու հուշանվեր: Ինչո՞ւ կարծել, որ կոմունիզմը պետք է իսպառ ջնջի նվիրելու ու ժառանգելու ամեն մի ձև ու հնարավորություն, իսկ մարդկային հարաբերությունները պետք է զրկվեն մտերմության, անմիջական զգացումների դրսևորման միջոցներից: Բավական է մարդկայնորեն խորհել այսօրինակ երևույթների մասին և հասկանալի կդառնա կոմունիզմի ժամանակ նվիրելու ու ժառանգելու բոլոր ձևերի մահացման կամ ոչնչացման թեզի սխալ լինելը:

Կոմունիզմի ժամանակ անձնական սեփականության գոյության հարցը պարզելու համար պետք է նախ նկատի ունենալ, որ իրենց բնույթով տարբեր են մարդկային պահանջմունքները և տարբեր են նրանց բավարարման ձևերը: Կան պահանջմունքներ, որոնք կարող են բավարարվել համատեղ, կոլեկտիվ կերպով (ուսումնական հաստատություններ, կլինիկաներ, հասարակական սնունդ) և պահանջմունքներ, որոնք կարող են բավարարվել անհատապես (հագուստ, ոտնաման, անձնական հարմարությունների ու հիգիենայի առարկաներ, անձնական օգտագործման գրքեր, անձնական զբաղմունքի իրեր ու առարկաներ, օրինակ՝ ջութակ ու դաշնամուր երաժշտի համար և այլն): Բավարարման այս երկու ձևերի համապատասխան էլ մարդիկ կոմունիզմի ժամանակ օգտվելու են այնպիսի իրերից ու առարկաներից, որոնք հասարակական սպառման ֆոնդերից են վերցվելու օգտագործման համար և մնալու են որպես հասարակական սեփականություն, և իրեր ու առարկաներ, որոնք ստացվելու են կրկին հասարակական ֆոնդերից և դառնալու են անձնական սեփականություն: ՍՄԿԿ ծրագրում ասված է. «Անձնական սպառման առարկաները կգտնվեն հասարակության յուրաքանչյուր անդամի լիակատար տնօրինության ու տրամադրության տակ» (էջ 76):

Կոմունիստական շինարարության համընթաց աճելու են մարդկանց պահանջմունքների հասարակական բավարարման հնարավորությունները ու նրանց տեսակարար կշիռը, և միաժամանակ, արդյունաբերությունն ստեղծելու է բազմաթիվ ու նորանոր իրեր ու առարկաներ, որոնք հասարակության կողմից տրվելու են մարդկանց մշտապես ու անվերադարձ՝ որպես անձնական սեփականություն: Դրանք միայն ծառայելու են կոմունիստական հասարակության համակողմանի զարգացած անհատի ձևավորմանը: Այժմ հնարավոր չէ, և գործնականապես հարկավոր էլ չէ, սահմանել այն նյութական ու հոգևոր բարիքների ցանկը, որոնք անձնական սեփականություն են կազմելու կոմունիզմի ժամանակ հասարակության յուրաքանչյուր անդամի աճող պահանջմունքների, անհատական կարիքի ու ճաշակի համեմատ: Այդ առանց դժվարության կկատարեն իրենք՝ կոմունիստական հասարակության մարդիկ, տեղի ու ժամանակի համապատասխան:

Անձնական սեփականությունը կոմունիզմի ժամանակ էլ կապված է լինելու անձնական յուրացման հետ, որի նկատմամբ մարդիկ ունենալու են տիրապետելու, օգտագործելու և տնօրինելու իրավունք: Սրանք անձնական սեփականության բնորոշ հատկանիշներն են, որոնք մնալու են՝ անկախ անձնական սեփականության գոյացման աղբյուրի և առարկայական կազմի փոփոխություններից: Սոցիալական անհավասարությունից ազատագրված կոմունիստական հասարակության մարդիկ ունենալու են, անշուշտ, իրերի տարբեր քանակներով ու կազմով արտահայտվող անձնական սեփականություն, որն արտահայտելու է կոմունիստական հասարակության տնտեսական հարաբերությունները, պայմանավորված է լինելու պահանջմունքների ու ճաշակի բնական տարբերություններով:

Կոմունիզմի ժամանակ անձնական սեփականության գոյությունը ժխտելու կողմնակիցները երբեմն վկայակոչում են Լենինի այն ասույթը, թե «տիրապետումը դեռևս սեփականություն չէ» (Երկեր, հատոր 24, էջ 628): Իհարկե, երբ տիրապետումը ժամանակավոր բնույթ ունենա և փոխվի ամեն տարի, ապա դա իրոք սեփականություն չի լինի: Կալվածատիրոջից գյուղացու վարձակալած հողի ժամանակավոր բնույթը հենց նկատի ուներ Լենինը, երբ ասում էր, թե տիրապետումը դեռևս սեփականություն չէ: Մինչդեռ մարդիկ կոմունիզմի ժամանակ անվճար աշխատանք կատարելով ընդհանուրի օգտին ըստ իրենց ունակության, ստանալու են հասարակությունից ըստ պահանջմունքի անձնական սպառման իրեր ոչ թե ժամանակավորապես, այլ մշտապես ու անվերադարձ:

Մերժելով բուրժուական զրպարտությունը կոմունիզմի նկատմամբ, Մարքսն ու Էնգելսը դեռևս Կոմունիստական պարտիայի մանիֆեստում ազդարարել են. «Մենք ամենևին մտադիր չենք ոչնչացնել աշխատանքի՝ կյանքի անմիջական վերարտադրությանը ծառայող արդյունքների... անձնական յուրացումը... Մենք ուզում ենք ոչնչացնել միայն այդպիսի յուրացման խղճուկ բնույթը»:

Ս. ՄԻՔԱՅԵԼՅԱՆ

Տնտեսական գիտությունների թեկնածու

---

# ԳՐԱԽՈՍՈՒԹՅՈՒՆ ԵՎ ՔՆՆԱԴԱՏՈՒԹՅՈՒՆ



## ՆՇԱՆԱԿԱԼԻՑ ՆԵՐԴՐՈՒՄ ՊԱՏՄԱԳՐՈՒԹՅԱՆ ՄԵՋ

Սովետական պատմագիտությունն ապրում է ստեղծագործական վերելք։ Մեր պատմաբանների ուշադրության կենտրոնում են այն հարցերը, որոնք անհատի պաշտամունքի տարիներին անհարկի մոռացված էին, և որոնց ուսումնասիրությունը չգրված օրենքով դատապարտվում էր։ Այդ, ամենից առաջ, վերաբերում է մեր ժողովրդի ռևոլյուցիոն անցյալի պատմությանը, որի լուսաբանումը միտումնավոր կերպով խեղաթյուրվում էր ի հաճույս Ստալինի։

Հայտնի է, որ անհատի պաշտամունքի տարիներին ռևոլյուցիոն շարժումների պատմությունը, այդ շարժումներին մասնակցած լենինյան ակտիվ գործիչներից շատերի կյանքն ու գործունեությունը մնացել էին ստվերում։ Բայց այդ լոկ առանձին գործիչների գործունեության անտեսում չէր։ Ըստ էության խեղաթյուրվում էր ռևոլյուցիոն շարժումների ընդհանուր պատմությունը և հրապարակի վրա, դուրս մղելով մյուսներին, փայլում էր մի «հերոս» իր գերբնական ծառայություններով...

ՍՄԿԿ XX և XXII համագումարները վճռական պայքար հայտարարեցին անհատի պաշտամունքի դեմ, պայմաններ ստեղծեցին գիտական մտքի ազատ զարգացման համար։ Գիտության մշակները ձեռնամուխ եղան մեր ժողովրդի հերոսական պատմության վերհանմանը, դրանով իսկ իրենց համեստ ներդրումը կատարելով մասսաների կոմունիստական դաստիարակության գործում։

Այս տեսակետից ուշագրավ է երիտասարդ պատմաբան Հ. Կարապետյանի վերջերս հրատարակված Մեծ պայքարի մարդիկ գիրքը, որը մեծ գոհունակությամբ ընդունվեց ընթերցող հասարակայնության կողմից։ Հեղինակի մտահղացումը համընկել է ժողովրդի ցանկությանը։ Սարգիս Կասյանը, Սահակ Տեր-Գաբրիելյանը, Գևորգ Աթարբեկյանը, որոնց կյանքի և ռևոլյուցիոն պայքարի պատմությանն է նվիրված գրախոսվող աշխատությունը, երբեք չեն մոռացվել իրենց ժամանակակիցների կողմից, թեև անհատի պաշտամունքի ծանր տարիներին ո՛չ միայն դրվատական խոսք չէր ասվում նրանց մասին, այլև, մասնավորապես, Ս. Կասյանը, Ս. Տեր-Գաբրիելյանը և ռևոլյուցիոն ականավոր շատ այլ գործիչներ դասվում էին «ժողովրդի թշնամիների» շարքը։

Գրախոսվող աշխատությունը գրված է պատմական վավերագրերի, ժամանակակիցների հուշերի, իրենց իսկ գործիչների թողած գրական հարուստ ժառանգության գիտական բազմակողմանի ուսումնասիրության հիման վրա։ Այդ գործիչների կյանքն ու ռևոլյուցիոն գործունեությունը լուսաբանելիս հեղինակն օգտագործել է արխիվային բազմաթիվ նոր փաստաթղթեր, որոնք ո՛չ միայն արժեքավորում են Ս. Կասյանի, Ս. Տեր-Գաբրիելյանի և Գ. Աթարբեկյանի ռևոլյուցիոն ծառայությունները, այլև նպաստում մեր ժողովրդի ռևոլյուցիոն պայքարի պատմության ավելի խոր մեկնաբանմանը։

Գրախոսվող աշխատությունը դուրս է եկել սովորական կենսագրական ակնարկի շրջանակներից։ Հեղինակը, մի կողմից, հանգամանորեն լուսաբանել է ռևոլյուցիոն գործիչների կյանքն ու գործունեությունը, մյուս կողմից՝ անդրադարձել սոցիալիստական ռևոլյուցիայի և սոցիալիզմի կառուցման մի շարք պրոբլեմների, որոնք մեր պատմագրության մեջ տակավին գիտական խոր լուսաբանման կարոտ են։ Հ. Կարապետյանը հաջող փորձ է կատարել այդ պրոբլեմներից մի քանիսի գիտական վերլուծության ուղղությամբ։

Ահա, օրինակ, «Սարգիս Կասյան» բաժինը։ Հեղինակը գիտական խորությամբ շարադրելով նրա կյանքի պատմությունը, միաժամանակ մի շարք հետաքրքրական հարցեր է բարձրացնում, չխուսափելով վիճելի հարցերի մասին իր կարծիքը հայտնելուց։ Հայտնի է, որ Ս. Կասյանի Ուր է ելքը աշխատությունը մեր պատմագրության մեջ պատշաճ գնահատականի չէր արժանացել։ Ավելին, այդ գրքին այս կամ այն առիթով անդրադարձած հեղինակներից շատերն աշխատել են գտնել նրանում թույլ տրված «սխալները», չփորձելով նույնիսկ գիտականորեն հիմնավորել իրենց տեսակետները հենց այդ սխալների նկատմամբ։ Անկասկած, Ս. Կասյանի հիշատակված գրքում կան առանձին սխալ ձևակերպումներ ու մտքեր, մանավանդ, երբ այն այսօրվա աչքերով ես կարդում։

Հ. Կարապետյանը այլ, մեր կարծիքով, միանգամայն ճիշտ տեսանկյունով է քննարկում տվյալ գիրքը. նա շեշտը դնում է այն խոշոր դերի վրա, որ գիրքը ժամանակին խաղացել է ռևոլյուցիոն շարժումների մեջ։

Բայց ո՛չ միայն այս։ Հեղինակը մեծ գործ է կատարել մամուլի բազմաթիվ օրգաններում տպագրված և երբեմն արխիվներից հայտնաբերված՝ Ս. Կասյանի անտիպ աշխատությունների հավաքման և գիտական ուսումնասիրության ուղղությամբ։ Դա որոշակիորեն հարստացնում է մեր գիտելիքները Հայաստանի աշխատավորության ռևոլյուցիոն շարժումների մասին։ Ս. Կասյանի աշխատությունների մեծ մասը դուրս է գալիս ժուռնալիստիկայի սահմաններից և ընդգրկում քաղաքական, տնտեսագիտական և փիլիսոփայական լուրջ պրոբլեմներ, որոնց տեսական մեկնաբանման անհրաժեշտությունը պրակտիկայում զգացել են հայ բոլշևիկները։ Հ. Կարապետյանին, մեր կարծիքով, հաջողվել է հենց այս տեսանկյունով գնահատել Ս. Կասյանի խոշոր ծառայությունները Հայաստանի ռևոլյուցիոն շարժումներին։

Անդրկովկասում, ինչպես և Հայաստանում, ռևոլյուցիոն շարժումների ամենաոխերիմ թշնամին եղել է նացիոնալիզմը։ Կասյանի բազմաթիվ հոդվածներ ու աշխատություններ ուղղված են եղել բուրժուական նացիոնալիզմի դրսևորումների դեմ։

Ս. Կասյանը մի ամբողջ հոդվածաշար ունի սպեցիֆիկների և նրանց լիդերների դեմ։ Այդ հոդվածները, ինչպես ճիշտ կերպով նկատում է գրքի հեղինակը, հայ իրականության մեջ մարքսիզմի տարածման լավագույն փաստաթղթերից են։

Հետագայում՝ 1928 թվականին, Ս. Կասյանը հանդես եկավ իր «Սպեցիֆիկները և սպեցիֆիզմը» աշխատությամբ, որում ո՛չ միայն ընդհանրացրեց սպեցիֆիզմի դեմ գրած իր հոդվածները, այլև քննարկեց մի շարք քաղաքական կարևոր հարցեր, որոնք գրքի լույսընծայման շրջանում հուզում էին Հայաստանի պարտիական կազմակերպությանը։ Հ. Կարապետյանը գնահատելով այդ աշխատությունը, չի շրջանցում դրա շուրջը եղած տարաձայնությունները և համարձակ հայտնում է իր կարծիքը դրանց մասին։ Կարևորն այն է, որ սպեցիֆիկների գաղափարական էության ու նրանց գործունեության վերլուծության ժամանակ Ս. Կասյանը հանդես է եկել որպես սկզբունքային ու անզիջող քննադատ, ամեն կերպ խարազանելով Ռուսաստանի պրոլետարիատից հայ բանվորներին անջատելու սպեցիֆիկյան քարոզները։

Իր բոլոր թերություններով հանդերձ Ս. Կասյանի նշված աշխատությունը Հայաստանի կոմպարտիայի պատմությունն ուսումնասիրողների ամենալուրջ ուշադրությանն արժանի գործ է։

Մեծ հետաքրքրությամբ է ընթերցվում Ս. Կասյանի 1918 թվականի սկզբներին Անդրկովկասի վրա գերմանա-թուրքական զավթիչների արշավանքի կապակցությամբ գրված հոդվածների վերլուծությունը։ Հեղինակը ցույց է տալիս, որ բոլշևիկները, երկրամասի ժողովուրդների գլխին կախված այդ ահեղ վտանգի պահին կոչ էին անում՝ զենքը ձեռքին կանգնել հայրենի հողի պաշտպանության դիրքերում։ Կասյանը, ինչպես և մյուս բոլշևիկները, հորդորում էին ժողովրդին՝ պայքարել ոչ թե առհասարակ թուրքերի դեմ, այլ նրանց, ովքեր ուրիշ ժողովուրդների նկատմամբ թուրք ժողովրդի մեջ թշնամանք ու ատելություն էին բորբոքում։ «Կռվելու,— գրում էր Ս. Կասյանը,— ոչ թե Տաճկաստանի դեմ, այլ ինչպես տաճկական, այնպես էլ բոլոր երկրների և անդրկովկասյան իմպերիալիզմի դեմ»։ Եվ հեղինակը ճիշտ եզրակացնում է. «Ազգային թշնամանքի շիկացած մթնոլորտում Կասյանը ընդհանուր թշնամուն տարբերում էր նրանից, ով թեկուզ և թշնամու ճամբարում, բայց որևէ շահ չուներ թշնամության և ավելի հեշտությամբ կարող էր եղբայրության ձեռք մեկնել, քան թշնամության սուր ճոճել» (էջ 106)։ Սա հենց պրոլետարական ինտերնացիոնալիզմի գաղափարախոսություն է։

Աշխատության մեջ ցույց են տրված Ս. Կասյանի անգնահատելի դերը բոլշևիկյան հայ մամուլի ստեղծման գործում, նրա կապերը Վ. Ի. Լենինի, Ստ. Շահումյանի, Ս. Սպանդարյանի, ինչպես նաև երկրամասի մյուս ռևոլյուցիոն գործիչների հետ։

Հեղինակն առանձին բաժնում քննարկում է Կասյանի գործունեությունը որպես Հայաստանի ռևկոմի առաջին նախագահի։ Այստեղ Հ. Կարապետյանը բազմաթիվ ճշգրտումներ է մտցնում առանձին դեպքերի և երևույթների գնահատման հարցում։ Հատկապես հետաքրքրական են նրա դատողությունները (Գ. Աթարբեկյանին նվիրված բաժնում) Հայաստանում սովետական կարգերի հաստատման, փետրվարյան ավանտյուրայի ծագման պատճառների, այդ առթիվ Ռևկոմում և ՀԿ(բ)Պ Կենտկոմում ծագած տարաձայնու-

թյունների, ռազմական կոմունիզմի քաղաքականության և այլ հարցերի շուրջ։

Մեծ են Ս. Կասյանի ծառայությունները սովետական իշխանության հետագա տարիներին։ Աշխատության մեջ ցույց է տրված, որ բյուրեղյա մաքրության տեր այդ կոմունիստը ինչպես պարտիական ու սովետական, այնպես էլ գիտամանկավարժական ղեկավար պոստերում ուժերի գերագույն լարումով աշխատել է մեր երկրում սոցիալիզմի կառուցման համար։ Միշտ մասսաների հետ, միշտ մասսաների համար՝ այդ է եղել Ս. Կասյանի կյանքի նշանաբանը։

Եվ պատահական չէ, որ Սարգիս Կասյանը, ինչպես և Սահակ Տեր-Գաբրիելյանը (որի կյանքի ու գործունեության լուսաբանմանն է նվիրված աշխատության երկրորդ բաժինը), չէին կարողանում հաշտվել այն բարքերի հետ, որոնք սերմանվում էին պարտիայի և երկրի կյանքում՝ անհատի պաշտամունքի առաջացման հետևանքով։

Պարտիական կյանքի լենինյան նորմերից հեռանալու ամեն մի քայլ լռությամբ չէին ընդունում լենինյան կոփվածքի պարտիական գործիչները։

Հ. Կարապետյանը ճիշտ է վարվել պատմական վավերագրերի հիման վրա ցույց տալով Կասյանի պայքարը կոլեկտիվ ղեկավարության խախտման ամեն մի դրսևորման դեմ։ Նա միանգամայն ճիշտ մեկնաբանություն է տվել, օրինակ, 1930 թվականի նոյեմբերի 21-ին ՀԿՊ Կենտկոմի, ԿՎՀ-ի և Երևանի պարտիական ակտիվի միացյալ նիստում Ս. Կասյանի ունեցած ելույթին։ Դա կոմունիստի ազնիվ ու անկեղծ խոսք է, թերությունների անաչառ քննադատություն։ Ս. Կասյանը, կարդում ենք գրքում, «միացյալ նիստի ուշադրությունը հրավիրեց այն բանի վրա, որ «կոլեկտիվ ղեկավարությանը փոխարինում է միանձնյա ղեկավարությունը»։ Միաժամանակ նա դժգոհեց, որ թույլ է կամ հաճախ իսպառ բացակայում է քննադատությունը, հին և լավագույն բոլշևիկներին շատ դեպքերում պատշաճ տեղ չի տրվում պարտիական աշխատանքում։ Այդ ամենին Կասյանը խիստ բացասական որակում տվեց. նա ասաց. «...պարտիայի մեջ գոյություն ունի անտանելի ռեժիմ, բացակայում է ինքնաքննադատությունը...» (էջ 180)։

Ս. Կասյանի այս ելույթը այն ժամանակ դիտվեց որպես «խմբակայնություն» և դատապարտվեց։ Պատմությունը ցույց տվեց, թե որքան սխալ էր ու վնասակար այդ գնահատականը։

Աշխատության մեջ պատշաճ տեղ է տրված լենինյան գվարդիայի ականավոր գործիչների աշխատանքի ոճի և նրանց բնավորության բացահայտմանը։ Նկատենք, որ հեղինակին հաջողվել է այդ հատկապես ցույց տալ Սահակ Տեր-Գաբրիելյանին նվիրված բաժնում։ Աշխատավոր ժողովրդին անսահման նվիրված, բյուրեղյա հոգու տեր, սկզբունքային ու անաչառ՝ այդպիսին է պատկերված սովետական Հայաստանի ժողկոմխորհի նախագահ Սահակ Տեր-Գաբրիելյանը։

Պատմական անցյալը ճշմարտացիորեն լուսաբանելու և դրանից օգտակար դասեր քաղելու համար լենինյան տիպի գործչի բնավորությունն ու աշխատանքի ոճը բացահայտելը պակաս գիտական արժեք չի ներկայացնում։ Այն խոշոր դաստիարակչական նշանակություն ունի, հատկապես, երիտասարդ սերնդի համար։

Գրքում հնարավորին չափ օգտագործված և վերլուծված են Տեր-Գաբրիելյանի՝ Վ. Ի. Լենինի ստորագրությունը կրող մանդատները, որոնք նա ստացել է 1918—1920 թթ.։ Դրանց զգալի մասը վերաբերում է Բաքվի կոմունայի պատմությանը և Ռուսաստանում նավթի ու վառելիքի մյուս տեսակների հայթայթմանը։

Պակաս հետաքրքրություն չեն ներկայացնում Տեր-Գաբրիելյանի՝ որպես Անդրֆեդերացիայի լիազոր ներկայացուցչի, ՀՍՍՌ ժողկոմխորհի նախագահի և ԱՍՖՍՌ ժողկոմխորհի նախագահի տեղակալի գործունեությանը վերաբերող էջերը։

Մեծ ոգևորությամբ է գրված նաև Գևորգ Աթարբեկյանին նվիրված բաժինը։ Սկզբնաղբյուրների օգնությամբ հեղինակը ճշտում և լրացնում է Աբխազիայում 1918 թվականին սովետական իշխանության համար մղված պայքարի պատմության մի քանի էջեր, որոնք կապված են Գ. Աթարբեկյանի գործունեության հետ։ Ճիշտ է նկատում հեղինակը, որ Անդրկովկասում սովետական իշխանության համար մղված պայքարի պատմությանը նվիրված աշխատություններում պատշաճ տեղ չի տրված Աբխազիայի բոլշևիկների և աշխատավորների 1918 թ. առաջին կեսի հերոսական պայքարին։ Հեղինակը մասամբ աշխատել է լրացնել այդ բացը։ Մեր կարծիքով, հեղինակը ճիշտ է նկատում, որ այդ պայքարը իր նշանակությամբ դուրս էր գալիս Սուխումի օկրուգի շրջանակներից և համակովկասյան նշանակություն է ձեռք բերում։ Այդ պատճառով էլ Աբխազիայի աշխատավորության՝ սովետական իշխանության համար մղած պայքարի պատմությունն իր պատշաճ տեղը պետք է գրավի ամբողջ երկրամասում սովետական իշխանության հաստատման գիտական պատմության մեջ։

Գ. Աթարբեկյանին նվիրված բաժնում առանձնապես հետաքրքրությամբ է ընթերցվում 1921 թ. քաղաքացիական կռիվների նախօրյակին ՀԿՊ Կենտկոմում և Ռևկոմում ծագած տարաձայնությունների վերլուծությունը։ Հայտնի է, որ այդ մասին քիչ չի գրվել, բայց հեղինակը չի կրկնում ասվածը, այլ նոր փաստաթղթերի հիման վրա մի շարք ճշգրտումներ է մտցնում և հստակ շարադրում այդ տարաձայնությունների էությունը։ Հեղինակը ճիշտ է նկատում, որ տարաձայնող կողմերը միշտ էլ հանդես են եկել հօգուտ սովետական իշխանության ամրապնդման։ Չխուսափելով կնճռոտ հարցերի վերլուծությունից՝ հեղինակը համարձակ կերպով բացահայտում է հարցի բոլոր մանրամասնությունները և ցույց տալիս, որ տարաձայնությունները եղել են տակտիկական հարցերի շուրջ։

**Մեծ պայքարի մարդիկ** գրքում հստակ երևում է բոլշևիկ գործիչների և բոլշևիկյան կազմակերպությունների խոր ինտերնացիոնալիզմը, տարբեր ազգերի աշխատավորների համատեղ ու համերաշխ ռևոլյուցիոն պայքարը։ Նկատելի է, որ հեղինակը հավասարապես լավատեղյակ է ո՛չ միայն Հայաստանում, այլև ամբողջ երկրամասում, Հյուսիսային Կովկասում և Սովետական Ռուսաստանում ծավալված իրադարձություններին։ Աշխատությունը գրված է պատմական իրադարձությունների լայն ֆոնի վրա։ Այս և այն հանգամանքը, որ Ս. Կասյանի, Ս. Տեր-Գաբրիելյանի, Գ. Աթարբեկյանի գործունեությունը լուսաբանող շատ էջեր վերաբերում են Անդրկովկասի և Սովետական Ռուսաստանի տարբեր վայրերի ռևոլյուցիոն շարժումների ու բոլշևիկյան կազմակերպությունների պատմությանը, ցանկալի են դարձնում գրքի ռուսերեն հրատարակությունը։

Աշխատությունն ընթերցվում է մեծ հետաքրքրությամբ։ Հեղինակի լեզուն հստակ է, սահուն։ Գիրքը խմբագրված է մեծ խնամքով։

Այս հաջողված աշխատությունը զերծ չէ նաև մասնակի թերություններից։ Նշենք դրանցից մի քանիսը։ Հեղինակն ընդհանրապես քննադատական մոտեցում է ցուցաբերում դեպքերի ու երևույթների նկատմամբ։ Սակայն ոչ միշտ։ Օրինակ, նա մանրամասն շարադրել է ՀԿՊ Կենտկոմում և Ռևկոմում 1921 թ. փետրվարին դաշնակների կողմից նախապատրաստվող ավանտյուրայի առնչությամբ ծագած տարաձայնությունները, բայց չի փորձել քննարկել պարտիայի Կովկասյան բյուրոյի դիրքը այդ հարցում։

Գրքում երբեմն հանդիպում ենք իրարամերժ կարծիքների։ Այսպես, 173-րդ էջում հեղինակը պնդում է, թե Կասյանը «հիանալի գիտեր, թե ինչ ասել է սոցիալիզմ և, նայելով հաջողություններին, ապրելով դրանցով, շեշտը դնում էր նախ այն բանի վրա, որ անհրաժեշտ է երկիրն ինդուստրացնել»։ Դրա հետ միասին նա գրում է, թե Կասյանը «ձգտելով ճշմարտության, իր հերթին տուրք տվեց ոչ պակաս լուրջ միակողմանիության։ Նա գերագնահատեց հետամնաց գյուղացիության դերը և չանդրադարձավ գյուղատնտեսական Հայաստանում մեծ արդյունաբերության զարգացման կենսական անհրաժեշտությանն ու ռեալ հեռանկարներին»։

Հեղինակը, ինչպես նշեցինք, բազմաթիվ նոր փաստաթղթեր է դնում գիտական շրջանառության մեջ, սակայն, երբ օգտագործում է արդեն հրապարակված փաստաթղթերը, ոչ բոլոր դեպքերում է նշում հրատարակված աղբյուրները և կրկին վկայակոչում է արխիվները։

Այս և նման կարգի մասնակի թերությունները բոլորովին էլ չեն ստվերում գրախոսվող աշխատությունը։ Կարևորն այն է, որ հեղինակը գիտական խորությամբ կարողացել է իր հերոսներին ներկայացնել որպես իսկական ինտերնացիոնալիստներ, որոնք հայ ժողովրդի ազատագրման համար ռևոլյուցիոն մարտի էին նետվում այնտեղ, ուր պահանջում էին ռևոլյուցիայի ընդհանուր շահերը։

Դասակարգային բարձր գիտակցությունը նրանց դարձրեց ռուսական ռևոլյուցիայի աչքի ընկնող գործիչներ։

Հ. Կարապետյանի աշխատությունը նշանակալից ներդրում է սովետահայ պատմագրության մեջ։

Գ. ԳԱԼՈՅԱՆ



Տպագրված չափածո գործերի մի զգալի մասը տառապում է գեղարվեստական ցածրորակությամբ։ Եթե երբեմն-երբեմն Հ. Սահյանի և մասամբ էլ Արշ. Դարբնու ստեղծագործություններն ուրախացնում են ընթերցողին իրենց սրամիտ հումորով ու խորիմաստությամբ, ապա տպագրվող չափածո շատ գործեր իրենց մակարդակով բարձր չեն հենց ամսագրի ծաղրած՝ Արամ Հակոբյանի Աշխատասեր Մուկուչը (№ 7) ոտանավորից, որն իբրև խոտանի օրինակ արտատպված է Հոկտեմբերյանի Կոմունիզմի ուղիով թերթից։ Դրանցից են՝ Բ. Կարապետյանի Հեռախոսի ուժը կամ երկդեմ Յանուս (№ 6), Ա. Ավետիսյանի Երկու ընկեր (№ 20), Սուրեն Առաքելյանի Արոռասերը (№ 15) ոտանավորները, որոնք քիչ առնչություն ունեն արվեստի հետ։

Տպագրված չափածո և արձակ գրվածքների մի զգալի մասը փոխաբերական իմաստ ունի։ Հասարակական և կենցաղային թերությունները կովերի, հորթերի, մկների, ոչխարների և այլ կենդանիների միջոցով ներկայացնելը՝ առակաթխությունը, նսեմացնում են հանդեսի արժանիքը։

Ֆելիետոններում երբեմն նկատվում են էժանագին ծիծաղ առաջացնելու ջանքեր, գռեհկություններ։ Անապացույց խոսք ասած չլինելու համար բերենք մի օրինակ. Վարազ Սողոն հիվանդության կեղծ փաստաթուղթ ձեռք բերելու համար դիմում է բժշկին։

«— Մի ճար արա, բժիշկ ջան։

— Ինչի՞ց ես գանգատվում...

— Դու ինձնից լավ գիտես, բժիշկ ջան,— խորամանկ ժպիտով ասաց Սողոն, ապա ավելացրեց,— գլուխս, վիզս, թոքերս, ստամոքսս, պլո...

Հենց այդ «պլո»-ի վրա էլ բժիշկը փակեց ականջները՝ հազիվ լսելով «...ճիկներս» շարունակությունը։

— Բավական է,— ընդհատեց նա...» (№ 20, Համապատասխան օրգանը)։

Ընթերցողն էլ այստեղ բժշկի հետ կարող է փակել ոչ միայն ականջները, այլև ամսագիրը։

Ինչպես ամեն մի երգիծական հանդես, Ոզնին էլ իր յուրաքանչյուր համարում տպագրում է մանրապատումներ։ Բայց այդ մանրապատումները միշտ չէ, որ ճաշակով են, խելացի, սրամիտ, իմաստավորված. բերենք մի օրինակ այդ «գոհարներից»։

«Աչափնյա կոչվող թաղամասում բացվել է կրծկալների արհեստանոց։

Սինթետիկ նյութերի կիրառմամբ կարված հրապուրիչ կրծկալները ջերմ ընդունելության են արժանանում գեղեցիկ սեռի կողմից։

Կրծկալ պատրաստողներին շնորհակալություն հայտնած գնորդների մեջ կան նաև ոչ-գեղեցիկ սեռի առանձին ներկայացուցիչներ» (№ 20)։

Հաճախ կյանքի եղակի բացասական փաստերը արհեստականորեն ընդհանրացվում են ու դրանց տրվում է հասարակական բնույթ կամ ստեղծվում են հավաքական այնպիսի կերպարներ (գործարանի դիրեկտորի, կոլտնտեսության նախագահի և այլն), որոնք տիպական չեն։

### Ծաղրանկարները

Զգալիորեն մեծացել է Ոզնու նկարչական կոլեկտիվը. նկարիչներ Ս. Արուտչյանի, Հ. Տեր-Ղազարյանի և Վ. Պոդպոմոգովի կողքին հայտնվել են ուրիշներ։ Տպագրված ծաղրանկարներն ընդհանրապես աչքի են ընկնում իրենց սրամիտ ու վարպետ կատարմամբ։ Սակայն հանդեսի նկարչական ձևավորման մեջ նկատվում են լուրջ թերություններ։ Միշտ չէ կամ բոլոր նկարները չեն, որ հաջող են ընտրված և կամ շատ թե քիչ կարևոր ու դիպուկ թեմաներ են շոշափում։

Գորշ կամ պարզապես նպատակավրեպ են այնպիսի նկարներ, ինչպիսիք են՝ Գ. Յարալյանի Պատը չափ խռենք (№ 21), Նույնիսկ արջն է արբեցել (№ 3), Պոդպոմոգովի Կովի վիշտը (№ 20), Ս. Արուտչյանի Նկարչի երազանքը (№ 18), Ս. Ստեփանյանի Տարբեր հետաքրքրություններ (№ 15), Ֆ. Դարբինյանի Ստացական (№ 19)։

Հանդեսի առաջին էջի ծաղրանկարը, ինչպես հայտնի է, պետք է արտահայտի տվյալ համարի իմաստը, սակայն դրանց մի զգալի մասը նվիրված է մանր, չիմաստավորված թեմաների, որոնք արհեստականորեն քաշված են առաջին պլանի վրա։ Օրինակ՝ Մ. Կարապետյանի Ոսկե ձեռքերում (№ 20), Լվացքի մեքենա (վա՜յ ձեռք բերողին) (№ 14) ծաղրանկարները։ Վերջինս նաև հակաէսթետիկական է։ Իսկ Ա. Բեքարյանի Դրախտից դուրս անելիս... (№ 17) ծաղրանկարը անմիտ է ու գռեհիկ։

Կատարման տեսակետից նկարները մեծ մասամբ շաբլոն են, հնաոճ։ Գրեթե բացակայում է գծանկարչությունը։

### Լեզուն և ոճը

Ընդհանուր առմամբ հանդեսի լեզվական կուլտուրան բարձր է։ Կարելի է ասել, որ ամսագիրը զերծ է ոճական միօրինակությունից, որը պայմանավորված է նրա բազմաժանրությամբ։ Երբեմն կերպարներն ամբողջական դարձնելու կամ կոլորիտ ստեղծելու նպատակով օգտագործվում են բարբառային առանձին բառեր կամ խոսակցական լեզվին հատուկ աշխույժ ոճ։ Սակայն ամսագիրը զերծ չէ լեզվական անհարթություններից ու անճշտություններից։ Երբեմն նկատելի են նաև ոչ հատակ, չփոթ դատողություններ, օրինակ.

«Շտապելով փրկել մեր քիչ թե շատ իմացած հայերենը, մի կերպ դուրս եմ փախչում... և առանց պահ իսկ կանգ առնելու, վազում գրադարան։

— Հարազատներս,— կանգնելով միջշրջանային թերթերի կոմպլեկտների առջև, ոգևորված կանչում եմ,— դուք, որ դարեր կովել եք սելջուկ, մոնղոլ, պարսիկ ու թուրք նվաճողների դեմ, ապրեցրել ձեր մայրենի լեզուն, ահա եկել եմ, որ էլի մեկ անգամ փարվեմ ձեզ ու լսեմ ձեր զրնգուն հայերենը... օ՜ն, անդր, առա՜ջ»։

Մի կողմ թողնելով այս ճոռոմ հայերենը, պետք է խոստովանել, որ մինչև այժմ մեզ անծանոթ է պատմական այն իրողությունը, թե ինչպես մեր միջշրջանային թերթերի կոմպլեկտները (ուզում է ասել թերթերը) «Դարեր կռվել են սելջուկ, մոնղոլ, պարսիկ ու թուրք նվաճողների դեմ և ապրեցրել մե՛ր մայրենի լեզուն»։

Մի քանի օրինակ էլ ամսագրի «զրնգուն հայերենից», օրինակներ, որոնք չեն գործածված խոսքի կոմիզմի համար և ոչ էլ ֆելիետոնային «հերոսների» շուրթերից հնչելով, խարազանում են իրենց՝ «հերոսներին»։

«Գործարանն իրավունք չունի ոչ մեր սխտեմում չգտնվող կազմակերպությունից պատվեր ընդունել» (№ 18)։ «Ճաշարանը վերանորոգման պետք է կանգնի» (№ 18)։ «Մեկը ձեռքի լապտեր էր վերցնում, մյուսը մուրճ և այլ հաչարներ» (№ 13), «Սինթետիկ նյութերի կիրառմամբ կարված...» (№ 13)։

Ահա թե ուր կարող է հասցնել լեզվի հանդեպ ցուցաբերված անփութությունը։

Մենք, իհարկե, այն կարծիքին չենք, թե Ոզնին այս կերպ է իր ընթերցողներին ժպիտ ու ծիծաղ պատճառում։ Բայց ցավալի է, որ այնքան լավի կողքին տեղ են գտել այսպիսի թերություններ։

Ամսագրի էջերում նկատելի են նաև գրագողության առանձին փաստեր։ Բերենք դրանցից մի քանիսը։

№ 7-ում տպագրվել է Ա. Խառատյանի Մանրուքը։ «Կյանքը ճանաչելու համար առակագիրը խնդրեց ստեղծագործական գործուղման ուղարկեն իրեն։

Ուղարկեցին գազանանոց»։

Այս ձևով տարիներ առաջ սրամտել է Հուսիկ Խանդամուրյանը։ Սակայն ընկ. Խանդամուրյանի մոտ առակագրի փոխարեն արկածային գրող Աշոտ Շայբոնն էր գործուղում խնդրել և նրան գազանանոց ուղարկելու փոխարեն ուղարկել էին Մարս։

№ 18-ում տպագրվել է Ա. Վահունու Առանց խոսքի ծաղրանկարը՝ «Նախնադարյան մարդը արևի ժամացույցը ստուգելու նպատակով տանում է ժամագործի մոտ»։

Այս նկարի իսկական հեղինակներն են Վ. Վաքսմանը և Վ. Սերեբրյանսկին (տե՛ս Սմենա, 1963 թ. № 18)։

№ 14-ում Մանրուք վերնագրի տակ տպագրված է նաև մի այսպիսի դիալոգ.

«— Անցյալ տարվա առաջին եռամսյակին ձեր հիմնարկի ցուցանիշները շատ բարձր էին։ Այս տարի ինչո՞ւ եք ետ մնում։

— Անցյալ տարի հիմնարկի պետը տարեսկզբին էր գնացել արձակուրդ»։

Այս սրախոսությունը նույնությամբ վերցված է Կրոկոդիլից, միայն այն տարբերությամբ, որ այնտեղ տեքստն ուներ նաև մի ծաղրանկար։

### Առաջարկություններ

Հանդեսը գաղափարապես ավելի հագեցված ու նպատակասլաց դարձնելու համար անհրաժեշտ է, որ խմբագրությունն ավելի մոտիկից ու սերտորեն կապվի մեր ռեսպուբլիկայի հասարակական ու քաղաքական կյանքին, ժամանակին արձագանքի միջազգային արդիական հարցերին, քննադատի բուրժուական վերացական արվեստը՝ ցույց տալով նրա գաղափարական սնանկությունը։

Խմբագրությունն ավելի մեծ պահանջկոտություն պետք է հանդես բերի հանդեսում լույս տեսնող արձակ ու չափածո ֆելիետոնների, երգիծական պատմվածքների, բանաստեղծությունների և ծաղրանկարների գաղափարական ու գեղարվեստական մակարդակի նկատմամբ։

Հանդեսի էջերից շաբլոնն ու միօրինակությունը վերացնելու համար խմբագրությունը պետք է ամսագրի աշխատանքներում ավելի լայնորեն ներգրավի գրողներին, բանաստեղծներին, նկարիչներին ու մամուլի աշխատողներին։ Լավ արդյունքներ կարող են տալ ընթերցողների կոնֆերանսները գործարաններում, կոլտնտեսություններում և ուսումնական հաստատություններում։

Հանդեսը շատ բան կշահի նաև, եթե պարբերաբար կազմակերպվի հումորիստական լավագույն պատմվածքների, ֆելիետոնների ու ծաղրանկարների մրցանակաբաշխություն։

Հանդեսի խմբագրությունն ու խմբագրական կոլեգիան ի վիճակի են վերացնելու նշված թերությունները և Ոզնին դարձնելու սովետական երգիծանքի ու հումորի մարտական օրգաններից մեկը։

Մ. ՄԿՐՏՉՅԱՆ

---

# Նոր մարդու ԵՐԿՈՒՆՔԸ

## ԻՄ ՀՈՒՅԶԵՐԻՑ

Խոստովանում եմ առանց քաշվելու. Լենինյան ուղիով այս տարվա առաջին համարը ինձ հաճելի անակնկալի բերեց: Բացելով այն, նախ և առաջ իմ աչքին զարնեց, այո՛ զարնեց, Ուսուցչի ու աշակերտի փոխհարաբերության հարցի քննարկման ազդը: Չափից ավելի հրատապ, չափից ավելի կենսական, ես նույնիսկ կասեի դաստիարակության, ուսուցման մեր առօրյա հարցերի հարցն է այն: Ժողովրդական հին առածն ասում է՝ տնից դուրս չգաս, մինչև չիմանաս, թե ուր պիտի գնաս: Խմբագրությունը, նրա կոլեգիան էլ, անշուշտ, խոսք բացելուց առաջ ծանր ու թեթև են արել, գծել ու ջնջել, ասել ու լսել և լավ գիտեն, թե ուր է տանում խոսքը: Ու դրա համար էլ թող ներվի, որ ես էլ, թեև երբեք ուսուցիչ չեմ եղել, ասեմ իմ խոսքը. ուսուցիչ չեմ եղել, բայց աշակերտ եղել եմ ու աշակերտ երեխաներ ունեմ: Ուրեմն, միայն աշակերտի իրավունքով:

Չգիտեմ իրավացի եմ թե ոչ, բայց ինձ թվում է, թե «ուսուցիչ» հասկացությունը նեղ է, իսկ «մանկավարժը»՝ լայն: Իր նեղ հասկացությամբ առաջինը միայն ուսուցող է, գիտելիք հաղորդող, իսկ երկրորդը՝ բացի այդ նաև դաստիարակ: Ուսուցիչ կարող են լինել շատերը, բայց մանկավարժ լինել շատերին չի վիճակված:

Այս տողերը գրելիս ցանկություն զգացի ստուգել ինձ: Ձեռքիս տակ 3—4 բացատրական բառարան կա՝ Ուշակով, ռուսաց լեզվի ակադեմիական բառարան, Օժեգով, Մալխասյան: Բացում եմ «ուսուցիչ» և «մանկավարժ» բառերը: Բոլորի մոտ բացատրությունը գրեթե նույնն է. Մալխասյանը գրում է. «ՈՒՍՈՒՑԻՉ, 1. Ուսուցանող. նա, որ ստորին կամ միջնակարգ դպրոցում դաս է տալիս, որևէ առարկա է ավանդում աշակերտին...» (Հ. 3, էջ 609): «ՄԱՆԿԱՎԱՐԺ, 1. Երեխաներին վարժեցնող, դաստիարակող, մարզող...» (Հ. 3, էջ 253): Երկու բնորոշ «մանրուք». ուսուցիչ բառի առաջին իմաստի բացատրությունը տալուց հետո Մալխասյանը միջակետ է դնում և ապա ավելացնում՝ «վարժապետ». այսինքն թե «ուսուցիչը» նա է, որին կոչում էին «վարժապետ»: Իսկ երբ նա բացատրում է մանկավարժ բառը, ապա բերում է նաև շատ դիպուկ ու շատ տեղին մի օրինակ. «Նա մանկավարժ ուսուցիչ էր»:

Շատ շեղվեցինք, ու բաց դռներ թակեցինք կարծես թե: Բայց ցավն այն է, որ մեր մանկավարժներին ուսուցիչ անունը տալով նրանց լոկ ուսուցող ենք համարում ու այդպիսի պահանջ ներկայացնում, մոռանալով ավելի կարևորը, թերևս ամենից գլխավորը՝ դաստիարակությունը, մանկավարժությունը:

Բարեբախտաբար խմբագրությունը, որքանով կարելի է հասկանալ շարադրված պլանից, չի սահմանափակվում դասավանդման հարցերով, այլ առաջադրում է նաև դաստիարակության խնդիրները՝ իրենց լայն առումով: Պետք է հուսալ, որ հակառակ այն բանի, որ մանկավարժ և մանկավարժություն բառերը տեղ չեն գտել ազդում և պլանում, քննարկումը կընթանա լայն առումով՝ մանկավարժական տեսանկյունով: Մի ցանկություն ևս. թվում է՝ քննարկման ու մտքերի փոխանակության ընթացքում ասպարեզ կգա նաև աշակերտին և ուսուցչին միացնող օղակը՝ ծնողը:

Այժմ դառնամ բուն նյութին:

Տղաս՝ Էդիկը, սովորում էր առաջին դասարանում, ուր, բնականաբար, գնահատական են նշանակում հատկապես ձեռագրի, տառերը ճիշտ ու մաքուր վերարտադրելու համար: Լավ չէր գրում և շարունակ երեքներ էր ստանում: Հարկ եղավ ավելի շատ զբաղվել: Մեկ, երկու, և նա սկսեց լավ գրել, խնամքով ընդօրինակել տառանմուշները: Ու մի օր էլ այնքան լավ էր գրել, որ անհնար էր չգովել:

— Ի՞նչ կստանամ,— հարցրեց հուզված:

— Լա՛վ, լավ կստանաս:

Հաջորդ օրը տղաս նորից երեք բերեց:

— Ինչո՞ւ:

— Դասատուն ասաց դու չես գրել:

Մեծ համբերություն էր պետք, և համբերեցի:

Երեկոյան ես ու տղաս նորից նստեցինք կողք-կողքի: Նա տառերն է արտագծում, իսկ ես՝ հետևում եմ: Նորից լավ չի ստացվում:

— Էդիկ ջան, լավ չես գրում, երեկ ավելի լավ էր ստացվում:

— Էլ չեմ ուզում էնպես գրել, թե չէ դասատուն նորից չի հավատա, որ ես եմ գրել:

Տղայիս պատասխանը սարսուռ պատճառեց: Ահավոր բան էր կատարվել՝ գնդակահարվել էր տղայիս ավելի լավ ու գեղեցիկ գրելու ձգտումը: Աշխատում եմ համոզել, բացատրում եմ: Լռում է, ձայն չի հանում: Կարծես համոզում եմ, բայց աչքերը ուրիշ բան են ասում:

Խորհում եմ ինքս ինձ ու երկու տարբեր զգացմունք միախառնվում են իրար. ուրախ եմ, որ տղաս իր արժանապատվությունը, թեկուզ մանկական, թեկուզ լրիվ չգիտակցված, ավելի բարձր է գնահատում. գերադասում է երեք ստանալ, քան անվստահություն սերմանել իր նկատմամբ: Խոր ցավը, սակայն, գերիշխող է. դասատուն մանկավարժական անտակտություն է թույլ տվել ու դրանով վնասել մատաղ մի տունկ, բայց արդյո՞ք միայն մեկը, թե՞...

Տվյալ դեպքում կարծես թե ահավոր ոչինչ չի կատարվել՝ անզգուշություն, մանկավարժական վրիպում: Ես հասկանում եմ դասատուին. Նա ուզում էր վստահ լինել, որ երեք ստացող իր աշակերտը, նույնիսկ մի օրում թռիչք է կատարել և հասել հինգի: Բայց, ահա, փոխանակ տակտ հանդես բերելու, փոխանակ մեկ-երկու օր համբերելու, այսպես ասած՝ աչքի տակով ստուգելու իր կասկածները, նա տեղն ու տեղը, խորապես հավատում եմ, որ՝ անգիտակցաբար, ապտակեց երեխայի ինքնասիրությանը, մեռցրեց նրա՝ անընդհատ դեպի լավն ու ավելի լավը գնալու նորանոր ծնվող ձգտումը:

Բայց մի րոպե ընդունենք, թե տղաս (կամ մեկ ուրիշը) ինքը չէր գրել իր դասը: Այս դեպքում մանկավարժի խորաթափանցությունն արդյո՞ք այն չպետք է լինի, որ հավատա աշակերտին, խրախուսի նրան և պարբերաբար հետևելով հարկադրի գրել իրոք այնպես, ինչպես նա գրավորը ներկայացրել էր այդ օրը: Չէ որ Մակարենկոյի հանրահայտ փորձը, երբ նա մեծ գումարը վստահեց գողին և դրանով իսկ նրան զրկեց գողանալու իրավունքից, այդ վարմունքի ճշտությունն է հաստատում:

Չեմ ուզում շատ խորանալ, որ ավելի հեռուները չգնամ, բայց չեմ կարող չասել, որ երբ դասատուի համար կարևորը դառնում է գնահատականը, ապա նա դադարում է մանկավարժ լինելուց: Իսկ այդ հավասարազոր է ձախողման:

Պատմեմ մի այլ դեպք, որ տեղի է ունեցել Երևանի նույն՝ Պուշկինի անվան դպրոցում, բայց որը կապված է աղջկաս հետ: Իրիկնապահին, մի օր զանգահարեցին դպրոցից.

— Խնդրում ենք անմիջապես դպրոց գալ, հենց հիմա:

— Ի՞նչ կա, ի՞նչ է պատահել,— վախեցած հարցնում եմ:

— Չեպե (այսինքն՝ արտակարգ դեպք է տեղի ունեցել):

— Իսկ էլի՞նորայի՞ն...

— Ո՛չ, ոչ, ո՛չ... ոչ... ո՛չ...

Ահաբեկված ինձ դպրոց եմ գցում, նետվում եմ ուսուցչանոց: Ոչ ոք ոչինչ չգիտե: Հարցնում եմ մեկին, մյուսին և, վերջապես, գաղտնիքը պարզվում է: Ութերորդ «Ա» դասարանի դասղեկն էր զանգահարողը: Տնից կանչել է բոլորին, ով հեռախոս ունի, հավաքել մի դասասենյակում և՛ մեզ՝ ծնողներիս, և՛ «հանցագործներին»՝ երեխաներին:

— Այսօր չեպե է տեղի ունեցել, ձեր սիրելի բալիկները,— դիմում է նա մեզ և ցույց տալիս պատի տակ շարված աշակերտներին,— խոսքները մեկ արած ուզում էին փախչել գծագրության դասից. հազիվ հաջողվեց բռնել փախստականներին,— այդպես էլ ասաց՝ փախստականներին:

Մեր զայրույթին չափ չկար: Իրար հետևից խոսեցինք, դատապարտեցինք երեխաներին: Դասղեկը գոհ էր, երեխաները՝ ամոթից կարմրած, իսկ դասատուն և՛ հուզված էր, և՛ բավարարված: Դա երևում էր նրա դեմքի արտահայտությունից, որ փոխվում էր ելույթների կըրքոտությանը համապատասխան: Ոչինչ չասաց նա, նույնիսկ չընդմիջեց ոչ ոքի, բայց երբ դասղեկը ամփոփում էր, նա ընդհատեց և բառ առ բառ շեշտելով հայտարարեց.

— Բոլոր անկարգապահների մեջ միայն մեկը կարգապահ դուրս եկավ: Դա Գուրգենն է: Ես նրանից գոհ եմ, մյուսներին փախչելու համար երկու կնշանակեմ:

Մեկ ու կես ժամ անց մենք ծանր սրտով ցրվեցինք, որպեսզի սկսած զրույցը շարունակենք տանը: Բոլոր հարցերի թվում ինձ հետաքրքրում էր նաև այս հարցը.

— Ինչո՞վ է աչքի ընկել Գուրգենը:

Ու ինձ համար ահավոր մի բան պարզվեց: Ինքներդ լսեք աղջկաս և, թվում է, կհամաձայնեք ինձ հետ.

— Դեռ դասերը սկսելուց առաջ իմացանք, որ վեցերորդ դասաժամին ազատ ենք լինելու: Որոշեցինք օգտվել առիթից և հինգերորդ ժամից կինո գնալ: Տղաները պայմանավորվեցին դպրոցից առաջինը դուրս գալ, իսկ մենք՝ աղջիկներով նրանցից հետո՝ մեկ-մեկ: Բոլորս աննկատ դուրս էինք գալիս դպրոցից, բայց վերջին երկուսը բռնվեցին բակում: Երբ դաստիարակը նրանց թևից բռնած ետ տարավ դասարան, Գուրգենը խելոք-խելոք նստած էր իր տեղում: Ամբողջ դասարանից մենակ նա էր մնացել, ծախել էր տղաներին...

Մեղքս ի՞նչ թաքցնեմ, հանկարծակիի եկա, փութկոտ առանձնացա ու մնացի ինքս իմ մտքերի հետ՝ ծանր ու տհաճ, «Գուրգենը ծախել է տղաներին...»—ականջիս մեջ տասնհինգամյա աղջկաս ձայնն էր, իսկ դիմացս՝ Գուրգենն է: Նայում է ինձ ու չի թեքում հայացքը: Նայում

եմ ուղիղ աչքերին ու հարցնում.

— Դու ընկերներիդ հետ պայմանավորվե՞լ ես փախչելու մասին:

Փորձում է կմկմալ, բայց ելք չի գտնում և մեղավոր հայացքը մի կողմ է դարձնում՝ վիզ է առնում:

— Դու տղաներին ասե՞լ ես, որ վատ բան եք անում, որ չի կարելի դասից փախչել:

Չի խոսում, գլուխն է կախում:

— Իսկ ինչո՞ւ դու միայնակ ես ետ կանգնել բոլորի հետ կայացված որոշումից: Ինչո՞ւ ընկերներիդ չես բացատրել, որ դու նրանց պես չես վարվելու, ինքդ չես փախչելու:

Գուրգենը ձայն չի հանում, փայլող կոշիկների քթին է գամել աչքերը: Դրա փոխարեն աղջկա ձայնն է հնչում ականջիս մեջ.

— Նա առանց այն էլ «երկուսներ» ունի...

Գուրգենի վարմունքը ծանրանում է սրտիս: Դպրոցական նստարանից նա երկչոտ է ու պատրաստ ուխտադրժության: Նա ամենքի հետ որոշում է կայացնում, չի փորձում ընկերներին ետ պահել սխալ ուղուց, բայց միայնակ ետ է կանգնում, որ մի նոր երկուս էլ չստանա, որ աչքի ընկնի:

Փաստը փոքրիկ է, թերևս անարժան ուշադրության: Իսկ եթե դա վերածվի բնավորությա՞ն, ամրանա՞...

Խաղաղվելուց հետո այրող մի հարց է դեմս ծառանում. իսկ ինչո՞ւ այս ամենի մասին չխոսվեց չեպեի քննարկման ժամանակ: Ինչո՞ւ դասղեկը՝ Նինա Մատվեևնան, իրավացիորեն նախատելով բոլորին, չխոսեց նաև Գուրգենի մասին, չշեշտեց նրա արարքում առողջ սաղմի կողքին աճող որոմը, որը պակաս դատապարտելի չէ, քան դասից փախչելը:

Հասկանալի է, որ եթե ուսուցիչը չմոռանար իր մանկավարժ լինելը, ապա մեկի մանկական ինքնասիրությունը չէր վիրավորվի, իսկ մյուսի վատ արարքը չէր խրախուսվի:

Իսկ հիմա դպրոցականի մեջ ինքնուրույն մտածողություն դաստիարակելու մասին: Ցավոտ մի հարց է այս՝ որքան կարևոր, նույնքան էլ մոռացված: Մի աշակերտ կարողանում է ճշգրիտ վերարտադրել դասագրքում գրվածը և ստանում է հինգ: Մյուսը շեղվում է տեքստից, ինչ-ինչ դատողություններ անում, դասագրքում չասված մտքեր արտահայտում և ստանում է ցածր գնահատական:

Մի անգամ առիթ եղավ այս հարցի մասին խոսելու երկու ընկերոջ հետ: Նրանց անունները չեմ տա, բայց պայմանականորեն մեկին կոչենք Ուսուցիչ, մյուսին՝ Մանկավարժ: Առաջինը կտրուկ կերպով առարկում էր.

— Երեխան նախ և առաջ պետք է սովորի իր կարդացածը վերարտադրել: Հետո, երբ մեծանա, թող իր համար ուղի բացի, ուզած ձևով մտածի:

Երկրորդը՝ Մանկավարժը, չէր համաձայնում.

— Հենց առաջին դասարանից, նույնիսկ առաջին օրվանից երեխան պետք է կարողանա ինքնուրույն, անկաշկանդ, ազատ մտածել:

Վեճը երկարեց, ստիպված միջամտեցի.

— Ի՞նչ եք կարծում, կարելի՞ է դուռը թողած լուսամուտով ել ու մուտ անել:

Հարցս մի պահ շփոթեց թե՛ մեկին և թե մյուսին: Բայց խնդրեցի պատասխանել:

— Դուռը դուռ է, լուսամուտը՝ լուսամուտ: Ամեն մեկը որոշակի նպատակի է ծառայում: Եթե երեխան դուռը թողած լուսամուտից է դուրս ցատկում, ապա նա, պարզապես, անկարգ է:

Ուսուցչի այս պատասխանը կարծես թե առարկություն չէր վերցնում, բայց Մանկավարժը մտածկոտ նկատեց:

— Նայած թե ինչն է ստիպում դուռը թողած լուսամուտից փողոց դուրս գալ: Նայած թե...

Ուսուցիչը նրա խոսքը կտրեց.

— Ոչ մի բան չի կարող անկարգությունն արդարացնել:

Վեճը կրկին բորբոքվեց: Այդ ժամանակ ես նորից միջամտեցի և պատմեցի մի դեպք Լենինի մանկության օրերից:

Ուլյանովների ընտանիքը մի ամառ հանգստանում էր Կոկուշկին գյուղում: Փոքրիկ Վոլոդյան փողոց տանող ճամփան կրճատելու համար սկսեց դուրս գալ ու ներս մտնել լուսամուտից: Ծնողները դրա համար չնախատեցին տղային: Նրանք մանկական չարաճճիության մեջ տեսան նաև իր առջև առաջացած հարցը ինքնուրույն լուծելու լավ ցանկությունը և խրախուսեցին Վոլոդյային: Նրանք՝ հիանալի մանկավարժները, դրանում վատ բան չտեսան: Հաջորդ օրը հայրը՝ Սիմբիրսկ նահանգի առաջին մանկավարժը, Վոլոդյայի համար ոտնատեղեր սարքեց, որ նա լուսամուտից հեշտ ել ու մուտ անի:

— Այդպիսի բան չի կարող պատահել:

Վրա բերեց ուսուցիչը:

Մանկավարժը խորհելով, ասաց.

— Չեմ նկատել, նորից պիտի նայել:

Դրանով ավարտվեց մեր վեճը...

Ինչո՞ւ հիշեցի, առավել ես գրեցի այդ մասին: Առիթը մի փոքրիկ դեպք է, որ մտքիցս չի հեռանում: Նախանցյալ տարի էր: Մյուս աղջիկս՝ Էմման, Պուշկինի անվան դպրոցի տասներորդ դասարանի աշակերտուհի էր: Ընկեր-ընկերուհիներով հավաքվել էին տանը և պատրաստում էին դասարանական պատի թերթը: Քննարկում էին նյութերը, վիճում զանազան հարցերի շուրջ: Ճաշժամին բոլոր նյութերը, պլակատն ու ծաղրանկարը պատրաստ էին: Մնում էր արտագրել թղթակցությունները, տեղադրել նկարները: Երեկոյան այդ էլ արվեց, և հաջորդ օրը՝ երկուշաբթի, աղջիկս պայուսակի հետ թևի տակ առավ նաև պատի թերթը և ուրախ ու զվարթ գնաց դպրոց: Երեկոյան, երբ տուն եկա, կլոր փաթեթը՝ պատի թերթը, նորից գրասեղանին էր դրված:



— Ինչո՞ւ թերթը չեք կախել:

— Մեր դասղեկը զբաղված էր, չհասցրեց ծանոթանալ թերթին,— պատասխանեց աղջիկս:

— Իսկ դուք կախեիք, նա հետո կծանոթանար:

— Ինչպե՞ս թե, ո՞վ թույլ կտա: Բա որ մեջը սխա՞լ լինի:

— Սխալ կլինի, կասեն, հաջորդ անգամ չեք սխալվի:

— Ինչպե՞ս թե, ո՞վ թույլ կտա,— կրկին զարմացավ աղջիկս:

Այ, հարցը հենց այս «ով թույլ կտայի» մեջ է: Տասը տարի դպրոց է հաճախել, կոմերիտական դասարանային բյուրո է ղեկավարել, համադպրոցական կոմիտեի անդամ է եղել, խմբկոլի նախագահ է դարձել, վաղն արդեն կյանք պետք է մտնի, բայց դեռ ինքնուրույն կերպով պատի թերթ լույս ընծայելու, կախելու իրավունք չունի, որովհետև այդպես են պահանջել. նախ, կբերեք, կստուգենք, հետո պատի թերթը կկախենք: Այսպես է. դպրոցականներից խլվում է սխալվելու և հենց իրենց սխալներով սովորելու իրավունքը: Եվ, ահա, դպրոցում նրանք կաղապարվում են, իսկ երբ կյանք են մտնում, դըպրոցական կաղապարն արդեն պետք չի գալիս և շատ հաճախ շվարած կանգ են առնում այս կամ այն հարցի ինքնուրույն լուծման ճանապարհին:

Ուզում եմ մի հարցի մասին ևս խոսել, շատ «անհարմար» մի հարցի մասին, որ անարդարացիորեն արտաքսվում է մեր մամուլից ու գրականությունից, մեր հրապարակային հավաքույթներից ու հասարակական ասպարեզից: Դպրոցականների սեռական դաստիարակության հարցն է այդ: Երեխան դպրոցին հրաժեշտ է տալիս 17—18 տարեկան հասակում: Այդ տարիքի աղջիկը մայր լինելու իրավունք ունի, իսկ տղան արդեն գտնվում է հայրության շեմին: Հարկ կա՞ արդյոք ասելու, թե որքան պատասխանատու մի շրջան է այդ ամեն մեկի համար: Թվում է՝ ոչ: Բայց ահա մեր առջև ծառանում է անողոք մի հարց. որքանո՞վ ենք մենք՝ ծնողներս ու ուսուցիչ-մանկավարժներս, աղջիկներին ու տղաներին նախապատրաստել այդ օրվան:

Պատասխանը դառն է. ոչ մի չափով: Հասունացած երիտասարդներն ամուսնական առագաստ են մտնում կույր ու տգետ:

Եվ ի՞նչ է տեղի ունենում: Դպրոցական նստարանից աղջիկն ու տղան մտածում են իրար դուր գալու մասին, նրանց մեջ արթնանում են նոր զգացումներ, նրանց հետ կատարվում են անխուսափելի ֆիզիկական փոփոխություններ, իսկ մենք բոլորս, նաև տպագիր խոսքը, տեսնում ենք այդ, բայց հեռու ենք փախչում: Հասունացող կամ հասունացած դպրոցականներին բացատրում ենք, թե ինչպես պետք է հագնել, ինչպես սանրվել կամ խնամել մաշկը, բայց չենք ասում, թե ի՞նչ բան է սերը, ինչպե՞ս պետք է սիրել, ե՞րբ և ի՞նչ հանգամանքներում ինչպես վարվել, կամ ինչպես պահել իրեն: Իսկ դրանք նույնքան օրինական և նույնքան քաղաքացիություն ստացած հարցեր են, որքան ի՞նչ ուտել և ինչպե՞ս հագնվել հարցերը:

Մի րոպե հաշտվենք այն մտքի հետ, թե մայրն իր աղջկա, հայրը՝ որդու, մանկավարժը համապատասխան սեռի իր սաների հետ անհարմար են զգում բարձրաձայն և բացեիբաց խոսել այդ հարցերի շուրջ: Բայց գոնե հրապարակի վրա մի գիրք, մի ձեռնարկ լիներ, որ օգներ հասունացող երիտասարդներին, սովորեցներ: Իսկ թե մի բան էլ կա, կամ հնացած է, կամ փակի տակ է պահվում:

Այդ ամենի հետևանքը լինում է այն, որ հասունացած երիտասարդ աղջիկը նույնիսկ իր կամքից անկախ, սնվում է կասկածելի ոլորտներից, իրեն հուզող հարցերի պատասխանն ստանում հազար ու մի մութ ու տգետ, հաճախ նաև փողոցային աղբյուրներից: Մենք դա տեսնում ենք, հասկանում, բայց չտեսնելու ենք դնում, աչք ենք փակում:

«Աչք ենք փակում»: Գրեցի ու մի պահ կանգ առա. իրո՞ք աչք ենք փակում: Ո՛չ, հազար անգամ ո՛չ: Ընդհակառակը, աչքներս չորս արած հետևում ենք մեր երեխաներին, բայց գաղտագողի, այնպես, որ նրանք այդ չիմանան, չնկատեն: Դժվար է մեզ դրա համար կշտամբել. ծնող ենք, ծնողական սիրտ ունենք ու պարտք, պետք է հետևենք, որ կարողանանք ժամանակին նկատել ու շտկել: Բայց ինչո՞ւ ենք գաղտագողի, թաքուն անում, չէ՞ որ երեխաներն իսկույն նկատում, հասկանում են, և որովհետև մենք թաքցնում ենք, նրանք էլ են թաքցնում, և հոնքը շտկելու տեղ աչքն ենք հանում:

Դա չարիքի կեսն է. պարզվում է, որ ուսուցիչներն էլ են այդպես վարվում: Ծնողական ժողովներից մեկի ժամանակ դաստիարակը՝ Նինել Ավետիսովնան, հուզված ու ամենայն խորհրդավորությամբ պատմեց այն մասին, թե մի ամիս առաջ ինչ է նկատել տուն գնալիս: Մայթով անցնելիս նա հանդիպել է իր դասարանի երկու-երեք աշակերտների, որ տրոլեյբուսի կանգառում զրուցում էին: Մոտեցել է ու սկսել հարց ու փորձ անել, թե ինչու տուն չեն գնացել, ինչու են կանգնել, ինչու են սպասում: Ճիշտ է վարվել, պետք է հետաքրքրվել: Բայց ահա մոտեցող

խողը՝ 17500 ռուբլի, Ապարանի շրջանի Շենավան գյուղի կոլտնտեսությունը՝ 13926 ռուբլի, Իջևանի շրջանի Իջևանի կաթնաանասնապահական սովխոզը՝ 2237 ռուբլի և այլն։ Հաշվապահների անպատասխանատվության հետևանքով շատ դեպքերում պատշաճ բարձրության վրա չի լինում դրամարկղային կարգապահությունը։ Ավագ և գլխավոր հաշվապահները յուրաքանչյուր օրվա փոխարեն գանձապահներից հաշվետվություններն ընդունում են ամիսը մեկ անգամ։

Տնտեսությունների մի շարք ղեկավարներ ու հաշվապահներ հաճախ կատարում են մասնավոր գործարքներ, նյութական արժեքներ են վաճառում կողմնակի անձնավորություններին և այլն։ Այսպես, Իջևանի շրջանի Կույբիշևի անվան սովխոզը մասնավոր մարդկանց վաճառել է շինանյութեր, շիֆեր, օլիֆ, կոմբիկորմ և այլն։ Իսկ Խաշթառակ գյուղի կոլտնտեսությունը 1964 թվականին մասնավոր կարգով գնել է խոտ, որի համար կանխիկ վճարել է 1298 ռուբլի, մինչդեռ, կերի այդ սուղ պայմաններում, նույն կոլտնտեսությունը մի շարք մասնավոր անձանց վաճառել է մոտ 1500 կիլոգրամ կոմբիկորմ։ Այստեղ տարօրինակ վերաբերմունք կա դեպի շինանյութերը։ Նրանց մեծ մասը կոլտնտեսության վարչության նախագահի և հաշվապահի գիտությամբ վաճառվել է մասնավոր մարդկանց, իսկ այն մասը, որն օգտագործվել է կոլտնտեսության շինարարության կարիքների համար, դուրս է գրվել առանց կատարողական ակտի։ Խոշոր գումարների հասնող մասնավոր գործարքներ են թույլ տրվել նաև Ապարանի շրջանի Շենավան, Քասախ, Սիսիանի շրջանի Շաքի, Լծեն, Լոր, Թազագյուղ, Դարբաս և այլ շրջանների մի շարք տնտեսություններում։

Խոշոր թերություններ կան նաև կերի պահպանման, օգտագործման և հաշվառման գործում։ Շատ տնտեսություններում կերը բաց են թողնում առանց կշռելու, չեն կազմվում կերի ծախսման տեղեկագրեր, չի տարվում հաշվառում։ Դրա հետևանքով է, որ Կամոյի շրջանի Կարմիր գյուղի կոլտնտեսությունում 1963 թվականին պակասել է 3908 ցենտներ խոտ կամ կուտակված ամբողջ խոտի 35 տոկոսը, 458 ցենտներ ծղոտ կամ եղածի 55 տոկոսը, 1177 ցենտներ սիլոս կամ 55 տոկոսը, իսկ 1964 թվականին պակասել է 5232 ցենտներ խոտ, 1083 ցենտներ ծղոտ և 4453 ցենտներ սիլոս։ Նույնն է վիճակը նաև Սիսիանի շրջանի Անգեղակոթ, Շաքի, Դարբաս և այլ գյուղերի կոլտնտեսություններում ու Սոֆուլուի ոչխարաբուծական սովխոզում։ Ապարանի շրջանի Շենավան գյուղի կոլտնտեսության հաշվապահ Սահակյանը ինքնագլուխ կերպով, որպես բնական պակասորդ, դուրս է գրել 4367 ցենտներ խոտ։

Շատ տնտեսությունների ղեկավարներ և, հատկապես, հաշվային աշխատողներ, լուրջ պայքար չեն տանում դեբիտորական պարտքերը լիկվիդացնելու ուղղությամբ։ Դրա հետևանքով հսկայական չափերի հասնող գումարներ գտնվում են առանձին մարդկանց մոտ կամ հիմնարկ-ձեռնարկություններում. այդ գումարները չեն օգտագործվում տնտեսության կարիքների համար և դրանով իսկ մեծ չափով վնասվում է նրանց էկոնոմիկան։ Այդ պարտքերը՝ ռեսպուբլիկայի տնտեսություններում 1964 թվականի հուլիսի մեկի դրությամբ, հասել էին 4 միլիոն 700 հազար ռուբլու, որից մոտ 200 հազարը պակասորդներ և յուրացումներ են։

Հաշվառման մեջ մեկ լուրջ թերություն էլ կա։ Դա հավելագրումների վնասակար պրակտիկան է, որը նկատվում է առանձին կոլտնտեսություններում ու սովխոզներում։ Այսպես, օրինակ, Սիսիանի շրջանի Անգեղակոթ գյուղի կոլտնտեսությունում ըստ հաշվապահական հաշվառման մատյանի, 1964 թվականի հունվարի 1-ի դրությամբ խոտի մնացորդը կազմել է 10491, ծղոտինը՝ 6194, սիլոսինը՝ 418 ցենտներ, սակայն № 24 հաշվետվության ձևում ցույց է տրվել խոտ՝ 780, ծղոտ՝ 700, սիլոս՝ 460 ցենտներ։ Նշված կոլտնտեսությունը 1964 թվականի օգոստոսի 20-ի դրությամբ հաղորդել է, որ կուտակված է 12240 ցենտներ բնական և ցանովի խոտ և 3000 ցենտներ սիլոս։ Սակայն հաշվապահական գրքերով ձևակերպվել է 7830 ցենտներ խոտ և 420 ցենտներ սիլոս։ Այս շրջանների մի շարք կոլտնտեսություններ կենտրոնական վիճակագրական վարչությանը սխալ հաշվետվություններ են ներկայացրել նաև տնտեսությունում հարկադիր մորթի ենթարկված և սատկած անասուններից ստացված ու պետությանը վաճառված կաշեհումքի վերաբերյալ (Բռնակոթի և Սառնակունքի կոլտնտեսություններ, Որոտանի սովխոզ)։

Կոլտնտեսականների ամենամսյա ավանսավորումը մեծ չափով բարձրացնում է կոլտնտեսականների նյութական շահագրգռվածությունը։ Սակայն շատ տնտեսություններում չի իրականացվում այդ կարևորագույն միջոցառումը. ավանսավորումը հիմնականում կատարվում է եռամսյակը մեկ անգամ՝ այն էլ առանց հաշվի առնելու կոլտնտեսականների վաստակած աշխօրերի քանակը։ Հետևանքը լինում է այն, որ տարվա վերջին կոլտնտեսականների մի մասը պարտք է մնում կոլտնտեսությանը։ Շատ դեպքերում վատ աշխատող կոլտնտեսականին ավանսավորում են ավելի շատ, իսկ լավ աշխատողները նույնիսկ չեն կարողանում իրենց հասանելիքն ստանալ։ Ավանսավորման կարգի կոպիտ խախտման փաստեր են արձանագրվել Իջևանի շրջանի Խաշթառակ գյուղի կոլտնտեսությունում։



Այստեղ ավագ հաշվապահ Կ. Էվինյանի մեղքով 1964 թվականի հունվարից մինչև հունիսի մեկն ընկած ժամանակամիջոցում 2041 ռուբլի 55 կոպեկի գերավանսավորում է թույլ տրվել։

Շատ տնտեսություններում խիստ անմխիթար վիճակում է գյուղատնտեսական տեխնիկայի օգտագործումը, անբավարար հիմքերի վրա է դրված նրա պահպանման ու կատարած աշխատանքի հաշվառման գործը։ Իբրև կանոն կոլտնտեսություններում ու սովխոզներում չկա տրակտորների կատարած աշխատանքի հաշվառման թերթիկ, չեն հաշվարկվում վառելանյութերի ու քսանյութերի ծախսերը, փաստացի կատարած աշխատանքի համեմատությամբ կատարված աշխատանքը չի վերածվում փափուկ վարի։ Անհրաժեշտ ուշադրություն չի նվիրվում ավտոտրանսպորտային աշխատանքին. ուղեգրերում չի նշվում կատարած աշխատանքի չափը, սիստեմատիկաբար չի հաշվարկվում բենզինի և մյուս նյութերի ծախսը, ուղեգրերում հաճախ չեք տեսնի ավտովարորդի, մեխանիկի և մյուս պատասխանատու անձանց ստորագրությունները։ Ապարանի շրջանի Արագած գյուղի կոլտնտեսության հիմնական միջոցառումների հաշվառման մատյաններում կոմբայնները, տրակտորները, ավտոմեքենաները և գյուղատնտեսական մյուս մեքենաներն ու կցվող գործիքները ամրացված ու գրանցված չեն պատասխանատու անձանց վրա, գյուղատնտեսական տեխնիկայի պահպանման և օգտագործման գործում գոյություն ունի դիմազրկություն, որի հետևանքով նշված կոլտնտեսության ԳԱԶ—51 բեռնատար ավտոմեքենայի և կալսիչ մեքենայի մասերն անհայտացել են, իսկ դուրս գրված ԶԻՍ—5 ավտոմեքենայի և Ս—4 կոմբայնի պիտանի մասերը հաշվի չեն առնվել և չեն պահեստավորվել։

Այս բոլորը հետևանք են նաև վերստուգիչ հանձնաժողովների անբավարար աշխատանքի։ Նրանք, ինչպես հարկն է, չեն հայտնաբերում ու կանխում գյուղատնտեսական արտելի կանոնադրության խախտման փաստերը, տնտեսությունում թույլ տրված անօրինականությունները, լուրջ հսկողություն չեն սահմանում վարչության ֆինանսական-տնտեսական գործունեության նկատմամբ, լրջորեն խորամուխ չեն լինում գործի էության մեջ։

Հաշվապահական աշխատանքների նման վիճակը պետք է բացատրել նրանով, որ շատ կոլտնտեսություններում ու սովխոզերում միանգամայն ցածր է հաշվային կադրերի որակը և նրանցից շատերը դեռևս չեն կարողանում պատշաճ ձևով կատարել հաշվապահական-հաշվառման ու հաշվետվության աշխատանքները։ Միայն կոլտնտեսություններում եղած 554 ավագ հաշվապահներից բարձրագույն մասնագիտական կրթություն ունեն ընդամենը 28 հոգի, միջնակարգ՝ 403, իսկ մնացած 123-ը միայն տարրական կրթություն ունեն։

Հայկական ՍՍՌ Մինիստրների սովետի 1963 թվականի հոկտեմբերի 7-ի որոշմամբ հանձնարարված է եղել Հայկական ՍՍՌ գյուղատնտեսական մթերքների արտադրության ու մթերումների մինիստրությանը և ռեսպուբլիկայի Կենտրոնական վիճակագրական վարչությանը, ուսումնական կոմբինատի միջոցով կազմակերպել դասընթացներ՝ կոլտնտեսությունների հաշվային աշխատողների որակավորումը բարձրացնելու նպատակով։ Սակայն ինչպես մինիստրությունը, այնպես էլ վիճակագրական վարչությունը այդ գործում ցուցաբերել են անպատասխանատվություն։ Հաշվիչ մեքենաների վրա աշխատողների դասընթացներում 147 հոգու փոխարեն սովորել են 95 հոգի։ Կենտրոնական վիճակագրական վարչությունը չի կատարել Հայկական ՍՍՌ Մինիստրների սովետի 1962 թվականի սեպտեմբերի 21-ի № 465 որոշումը՝ Իջևանում և մի քանի այլ վայրերում հաշվապահների և հաշվային մյուս աշխատողների որակավորումը բարձրացնելու ուսումնական կետեր կազմակերպելու մասին։ Իսկ եթե դրան ավելացնենք այն, որ անգործության են մատնվել Իջևանի, Ապարանի, Էջմիածնի, Սիսիանի և մի շարք այլ շրջաններում ստեղծված ատեստացիոն հանձնաժողովները (իսկ Մարտունիում այդպիսին նույնիսկ չէր կազմակերպված), ապա պարզ կդառնա, թե ինչու է այդքան ցածր հաշվային աշխատողների որակը։

Հայկական ՍՍՌ գյուղատնտեսական մթերքների արտադրության ու մթերումների մինիստրությունը և, մասնավորապես, շրջանային օղակները վերջին 2 տարիներին խիստ թուլացրել են ստուգումների միջոցով հաշվային աշխատողներին ցույց տրվող օգնությունը, իսկ առանձին տեղերում այդ ստուգումները կրել են ձևական բնույթ։

Բավական է ասել, որ Կամոյի շրջանի Կարմիր, Նորադուզ, Գեղարքունիք, Մարտունու շրջանի Գետաշեն և Աղամխան գյուղերի կոլտնտեսությունների մեկ և կես տարվա փաստաթղթերի ստուգումները յուրաքանչյուր անգամ տևել են 3 օր։ Այս և մի շարք այլ շրջանների տնտեսությունները ղեկավարող հիմնարկների հաշվապահ-հրահանգիչները կոլտնտեսությունների ու սովխոզների ֆինանսական գործունեությունն ստուգելու ժամանակ պատշաճ ուշադրություն չեն հատկացնում էկոնոմիկային, մանրամասն չեն վերլուծում և բացահայտում աննպատակ ծախսումներն ու եղած ռեզերվները։ Շատ հաճախ ստուգման ակտերը լրացնում են վիճակագրական տվյալներով, որի ժամանակ ուղղակի խեղդվում են լուրջ փաստերը։ Հաճախ էլ ստուգման ար-

դյունքները ժամանակին չեն քննարկվում, միջոցներ չեն ձեռնարկվում հայտաբերված խախտումները վերացնելու համար և, բնականաբար, նրանք կորցնում են իրենց դաստիարակչական ու վերահսկողական նշանակությունը:

Հայկական ՍՍՌ գյուղատնտեսական մթերքների արտադրության և մթերումների մինիստրությունը 1963 թվականի ընթացքում ստուգել է ընդամենը 13 տնտեսության (12 կոլտնտեսություն և մեկ սովխոզ) ֆինանսական գործունեությունը, իսկ 1964 թվականի ինն ամիսներին՝ միայն 7 կոլտնտեսության: Ապարանի շրջանային վարչությունը, որն ունի մեկ գլխավոր և 2 ավագ հաշվապահ-հրահանգիչներ, 1963 թվականին 32 կոլտնտեսություններից ու սովխոզներից ստուգել է ընդամենը 4 կոլտնտեսության և 3 սովխոզների փաստաթղթերը, իսկ 1964 թվականին միայն 3 կոլտնտեսության: Անցած երկու տարիների ընթացքում ստուգումներ բոլորովին չեն անցկացվել Երինջատափ, Բուժական, Զովունի, Հովիտ, Բարձրաշեն, Ծաղկաշեն և մի շարք այլ գյուղերի կոլտնտեսություններում:

Կոլտնտեսությունների և սովխոզների սկզբնական պարտիական կազմակերպությունները և մի շարք շրջանային պարտիական կոմիտեներ նույնպես անբավարար են զբաղվում հաշվապահական-հաշվառման և հաշվետվության վիճակի բարելավման հարցերով, թուլացրել են վերահսկողությունը տնտեսությունների ֆինանսա-տնտեսական գործունեության նկատմամբ, չեն հետևում այն բանին, որ տնտեսություններում պարբերաբար անցկացվեն փաստաթղթային և ընթացիկ ստուգումներ, հաճախ ստուգման արդյունքները չեն քննարկվում պարտիական ժողովներում և պարտշրջկոմի բյուրոյի նիստերում կամ պլենումներում, պատասխանատվության չեն ենթարկվում տնտեսությունների այն ղեկավարներն ու հաշվային աշխատողները, որոնց մեղքով տնտեսությունները կրել են նյութական վնասներ:

Գյուղական պարտիական կազմակերպությունները և շրջկոմները պետք է կոլտնտեսությունների և սովխոզների պարտիական-պետական վերահսկողության կոմիտեներին աջակցող խմբերի և պոստերի հետ մեկտեղ օգնեն տնտեսություններին՝ արմատապես բարելավելու հաշվապահական-հաշվառման ու հաշվետվության վիճակը, ուժեղացնել պայքարն ամեն տեսակ չարաշահումների, հավելագրումների և յուրացումների դեմ:

Կ. ԱԲՐԱՀԱՄՅԱՆ
Հ. ԱՎԵՏԻՍՅԱՆ

ՀԿՊ Կենտկոմի և ՀՍՍՌ Մինիստրների սովետի պարտիական-պետական վերահսկողության կոմիտեի տեսուչներ:

## ՄԵՐ ՆՅՈՒԹԵՐԻ ՀԵՏՔԵՐՈՎ

*Մեր ամսագրի 1964 թ. № 12-ում «Աշխատուժի ռացիոնալ օգտագործումը թեթև արդյունաբերության մեջ» խորագրով հոդվածի առթիվ Հայկական ՍՍՌ Ժողտնտխորհի թեթև արդյունաբերության վարչությունից հայտնում են, որ ռեսպուբլիկայի քաղաքների և գյուղերի աշխատունակ կանանց ու երիտասարդության մաքսիմալ չափով արտադրության մեջ ընդգրկելու նպատակով Սպիտակում, Թալինում, Դիլիջանում արդեն կազմակերպվել են մի շարք ձեռնարկությունների ֆիլիալներ: Այդպիսի ֆիլիալներ կստեղծվեն նաև Հրազդանում, Արթիկում և Լուսավանում:*

ԽՄԲԱԳՐԱԿԱՆ ԿՈԼԵԳԻԱ

ԱԴՈՅԱՆ Ա. Գ. (գլխավոր խմբագիր), ԱՎԵՏԻՍՅԱՆ Վ. Ա., ԱՂԱՅԱՆ Ծ. Պ., ԱՆԱՆԻԿՅԱՆ Բ. Հ., ԳԵՎՈՐԳՅԱՆ Վ. Հ. (պատասխանատու քարտուղար), ԹՈՒՄԱՆՅԱՆ Հ. Ե., ԹԵԼՈՒՆՑ Ա. Մ., ՀԱԿՈԲՅԱՆ Հ. Մ., ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Ս. Ս., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ա. Հ., ՎԱՐԴԱՆՅԱՆ Ս. Հ.:

Թողարկիչ՝ Ա. ՅԱՎՐՅԱՆ
Սրբագրիչ՝ Լ. ԽՈՒԴՈՅԱՆ

Խմբագրության հասցեն՝ Երևան, ՀԿՊ Կենտկոմի շենք, հեռ. 2—02—24

*Адрес редакции: Ереван, здание ЦК КП Армении, тел. 2-02-24*

ՎՖ 06032 | Պատվեր 430 | Տիրաժ 9600 | Գինը 25 կոպ.

Տպ. 7 մամուլ, մամուլում՝ 68840 նիշ: | Ստորագրված է տպագրության 22/II 1965 թ.:

*Հայկական ՍՍՌ Մինիստրների սովետի մամուլի պետական կոմիտեի Պոլիգրաֆարդյունաբերության գլխավոր վարչության № 6 տպարան, Երևան, Թումանյան փ. № 51:*

# ՁԵԶ ՀԱՄԱՐ ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐ

## ԼՈՒՅՍ ԵՆ ՏԵՍԵԼ ԵՎ ՎԱՃԱՌՎՈՒՄ ԵՆ

Գիրք հերոսների մասին: *Ե., ԳԱ հրատ., 1964, 456 էջ:*

*Հայկական ՍՍՌ ԳԱ պատմության ինստիտուտի մի խումբ գիտաշխատողներ, փաստաթղթերի և բազմաթիվ նյութերի օգտագործմամբ, համառոտակի շարադրում են 1941—1945 թթ. Հայրենական մեծ պատերազմում անվեհեր սխրագործություններ կատարած և իրենց անունները փառքով պսակած հայ ժողովրդի 100-ից ավելի Սովետական Միության հերոսների կյանքի և մարտական գործունեության մասին:*

ԱՌԱՔԵԼՅԱՆ Ա. Գ.— Հայ ժողովրդի մտավոր մշակույթի զարգացման պատմություն: *ԺԱ—ԺԲ դդ. առաջին կեսը: Հատոր երկրորդ: Ե., Հայպետհրատ, 1964, 646 էջ:*

*Բազմաթիվ աղբյուրների օգտագործմամբ, Հայաստանի սոցիալ-տնտեսական և քաղաքական իրադարձությունների ու ազգային ազատագրական շարժումների ընդհանուր ֆոնի վրա, հեղինակը շարադրում է հայ ժողովրդի մտավոր մշակույթի՝ հայկական տպագրության, հասարակական-քաղաքական գրականության, բժշկության, պատմագրության, գրականության, ժողովրդական բանահյուսության և այլ բնագավառների պատմությունը:*

ԱԲՐԱՀԱՄՅԱՆ Ա. Գ.— Համառոտ ուրվագիծ հայ գաղթավայրերի պատմության: *Ե., Հայպետհրատ, 1964, 486 էջ:*

*Գրականության և շրջագայությունների տվյալների հիման վրա շարադրված է հայ գաղթավայրերի պատմությունը, սկսած հնագույն շրջանից մինչև նոր ու նորագույն ժամանակաշրջանը: Գաղթավայր երկրների սոցիալ-տնտեսական և քաղաքական ընդհանուր վերլուծությամբ հեղինակը շարադրում է գաղթավայրերի խաղացած կուլտուրական և քաղաքական դերը հայ ժողովրդի կյանքում:*

ԽՈՒՐՇՈՒԴՅԱՆ Լ. Ա.— Սփյուռքահայ կուսակցությունները ժամանակակից էտապում: *Ե., ԳԱ հրատ., 1964, 470 էջ:*

*Այս մենագրության մեջ վերլուծված է դաշնակցության, հնչակյան և ռամկավար ազատական կուսակցությունների հետպատերազմյան ժամանակաշրջանում վարած քաղաքականությունը, նրանց վերաբերմունքը սովետական հայրենիքի նկատմամբ. գրքում վերլուծված են նրանց հայացքները, որոնց շուրջ սովետահայ պատմագրության մեջ 30-ական թվականներից հետո աշխատություններ չեն հրապարակվել:*

ԿԵՇԵԼԱՎԱ Վ. Վ.— Երկու Մարքսի առասպելը: *Ե., «Հայաստան» հրատ., 1964, 147 էջ:*

*Աշխատության մեջ մերկացվում է բուրժուական, աջ սոցիալ-դեմոկրատական և ռևիզիոնիստ քննադատների այն «տեսությունը», որի համաձայն արմատական հակասություն գոյություն ունի հասուն, զարգացած մարքսիզմի և Մարքսի հայացքների ձևավորման ժամանակաշրջանի նրա ուսմունքի միջև: Հեղինակը ցույց է տալիս այդ կեղծարարության որոշակի նպատակը՝ ամլացնել մարքսիզմի էությունը և զըրկել նրան ռևոլյուցիոն բովանդակությունից:*

ՄՈՒՍԱԽԱՆՅԱՆ Վ. Ա.— Իրավունքը, իրավագիտակցությունը և բարոյականությունը սոցիալիստական հասարակարգում: *Ե., «Միտք» հրատ. 1964:*

*Գրքում լուսաբանվում են սոցիալիստական իրավունքի, իրավագիտակցության և բարոյականության ծագումն ու զարգացումը, նրանց դերն ու նշանակությունը, զարգացման փուլերը, հիմնական սկզբունքներն ու բնորոշ գծերը և նրանց միջև եղած կապն ու փոխադարձ ներգործությունը: Զուգընթաց տրվում է նաև բուրժուական տեսությունների քննադատությունը:*

ԳԻՆԸ 25 Կ. 

# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ԱՌՈՂՋՈՒԹՅԱՆ «ԲԱՐՈՄԵՏՐ»

*Կիևի ռենտգենոռադիոլոգիայի գիտահետազոտական ինստիտուտում ստեղծվել է հիվանդությունների զգայուն բարոմետր՝ «ունիտոմ» ունիվերսալ ռենտգենյան ապարատը: Այն կարող է միաժամանակ կատարել ռենտգենոգրամմա՝ մի քանի հարթություններով՝ լայնակի, երկայնակի, պանորամային և ո՛չ միայն կրծքի կամ որովայնի, այլև գանգի և ուղեղի մասերում: Այդպիսի ապարատը աշխարհում առաջինն է: Նրա համար անհաղթահարելի չեն հետազոտվող մասի ո՛չ խորությունը, ոչ էլ մակերեսը. ռենտգենյան ճառագայթները կարելի է կարգավորել այնպես, որ դրանք «մթագնեն» հյուսվածքների խանգարիչ շերտերի արտացոլումները, հստակ ցուցաբերելով միայն օրգանի հետազոտվող մասը:*

## ԿԱՊՈՒՅՏ ՅՈԴ

*Սովետական անասնաբուծությունը հարստացավ կենդանիների ու թռչունների վտանգավոր շատ հիվանդությունների դեմ պայքարելու մի նոր հզոր միջոցով: Լենինգրադի անասնաբուժական ինստիտուտը և Պսկովի մարզային լաբորատորիան ավարտել են յոդինոլ նոր պրեպարատի փորձարկումները: Այդ պրեպարատը յոդի և պոլիվինիլային սպիրտի կոմպլեքսային միացությունն է, որը չի զիջում հայտնի շատ անտիբիոտիկների և էժան է:*

## ՄԵՏԱՂՅԱ ՍԱՏԻՆ

*Ամերիկյան «Գուդիր աէրոսպեյս» ֆիրման իր ձեռնարկությունում տեղադրել է 150 տոննանոց վիթխարի մանածագործական հաստոց, որը գործվածք է արտադրում մետաղանյութից: Այդ հազվագյուտ հաստոցը պետք է գործվածք պատրաստի տիեզերական հրթիռի պոչային հենակներ պատրաստելու համար: Հաստոցն աշխատում է ավտոմատ և թողարկում է տարբեր տիպի մետաղյա գործվածքներ:*

## ՀԱՎԱՄՐԳԻ ՀՅՈՒԹԸ ԵՎ ՏԵՍՈՂՈՒԹՅՈՒՆԸ

*Մշակվել է մի նոր դեղամիջոց, որն զգալի չափով սրում է մեր տեսողությունը աղջամուղջին և գիշերը: Այդ դեղամիջոցն ստացվում է հավամրգի հյութից: Նրա բաղկացուցիչ մասերից մեկը բարձրացնում է տեսողական թաղանթի ռեգեներացիան: Հավամրգի հյութից պատրաստված կապույտ հաբերն օգտակար են նաև նրանց համար, ում աչքերը հոգնում են արհեստական լույսի տակ երկարատև աշխատելուց (Ֆրանսիա):*

## ՆԱՎԹԱՊԱՀԵՍՏ «ՋՐԵ ՀԱՏԱԿՈՎ»

*Շվեդիայում ցուցադրվել է ջրի մեջ պատրաստված նավթապահեստի նոր նախագիծ: Նավթապահեստները պատրաստվում են պլաստմասսայից և դրանց համար հատակ է ծառայում ջուրը: Քանի որ նավթը թեթև է ջրից, վերջինս նավթը հրում է պահեստի վերին մասը, և ներսի բռնկվող գազերը դուրս են գալիս: Եթե նավթն աղտոտված է, ապա նրա մեջ եղած բոլոր այլածին մասնիկները «ջրե հատակի» միջոցով անցնում են ավազանի մեջ: Նավթապահեստները լցվում են շատ արագ, որովհետև հակաճնշում գոյություն չունի: Մասնագետների կարծիքով այդպիսի պահեստները 30 տոկոսով ավելի էժան են վերգետնյա պահեստներից, ավելի անվտանգ են, հարմար և հեշտ են քողարկվում, պարզ է դրանց սպասարկումն ու նորոգումը:*

## ՆԵՐԿ ՊԼԱՍՏՄԱՍՍԱՅԻՑ

*Գերմանական Դեմոկրատական Ռեսպուբլիկայի «Բելդցիգ» քիմիական ձեռնարկությունը թողարկել է հատուկ ներկ, որը նախատեսված է ավտոմեքենաների շասսիները ներկելու համար: Այդ սինթետիկ պլաստմասսայե ներկը աչքի է ընկնում բարձր էլաստիկությամբ, չի քերծվում քարերին քսվելիս և չի ցեխոտվում:*